ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

№ 8
ՕԳՈՍՏՈՍ
1959 Թ.

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ








# ԱՌԱՋԱՎՈՐ ՏԵԽՆԻԿԱՆ, ԼԱՎԱԳՈՒՅՆ ԿԱԴՐԵՐՆ ԵՆ ՎՃՌՈՒՄ ԳՈՐԾԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆԸ

Աշխատանքային եռուն օրեր է ապրում կոլտնտեսական գյուղացիությունը, որը մեր երկրի բանվոր դասակարգի և ինտելիգենցիայի հետ ձեռնամուխ է եղել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու, Սովետական Միությունում կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրն իրականացնելու մեծ գործին։

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները սոցիալիստական պարտավորություն են վերցրել յոթնամյա պլանը կատարել հինգ տարում, իսկ որոշ ճյուղերի գծով՝ ավելի շուտ։ Առանձին շրջաններ ու բազմաթիվ կոլտնտեսություններ իրենց խոսքը գործ դարձնելով, պատվով են կատարում վերցրած պարտավորությունները։

Հասկավոր կուլտուրաների, բանջարեղենի (բացի կարտոֆիլից) բերքահավաքի, ծխախոտի տերևաքաղի նախնական արդյունքները ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի գյուղի աշխատավորները լավ բերք են աճեցրել, քան անցյալ տարի։ Հոգատար խնամքի շնորհիվ հանրային այգիների խաղողի վազերն օր-օրի ծանրաբեռնվում են հյութեղ ողկույզներով, փարթամ աճել են բամբակենու և շաքարի ճակնդեղի պլանտացիաները։ Այս տարվա վեց ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզներն արտադրել են միս՝ 16,3 տոկոսով ավելի, կաթ՝ մոտ 5 տոկոսով ավելի, բուրդ՝ 2 տոկոսով ավելի, ձու՝ 27,4 տոկոսով ավելի։ Օգոստոսի 10-ի տվյալներով, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ 359 հազար ցենտներով ավելի խոտ է կուտակվել և պատրաստված է 360 հազար ցենտներով ավելի սիլոս։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները կենսագործելով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ցուցումները գյուղատնտեսության բնագավառի կադրեր աճեցնելու և դաստիարակելու վերաբերյալ, վերջին տարիներս ստեղծել են գյուղատնտեսության արտադրության կազմակերպիչների մի հիանալի սերունդ։ Բավական է նշել, որ այժմ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատում են 1100-ից ավելի գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ և անասնաբույժներ։ Զգալի գործ է կատարվել ռեսպուբլիկայի ետ մնացող կոլտնտեսություններն ու սովխոզները ձեռնհաս, մասնագիտական գիտելիքներ և կազմակերպական ձիր ունեցող կադրերով ապահովելու ուղղությամբ։ Դրա շնորհիվ անցյալներում ետ մնացող կոլտնտեսությունների որոշակի մասը զգալիորեն ամրապնդվել է կազմակերպորեն, առաջադիմել է տնտեսապես։

Պարտիական կազմակերպությունները, կադրերն ուշադիր ընտրելու և տեղաբաշխելու հետ միասին, մեծ հոգատարություն են հանդես բերում նրանց աճ-

տեմատիկ դաստիարակման ու մասնագիտական գիտելիքների լուրջ կատարելագործման վերաբերյալ։ Վերջին տարիներում այդ նպատակով խոշոր աշխատանք է տարվել մեր ռեսպուբլիկայում։

Կոլտնտեսությունների նախագահների, սովխոզների դիրեկտորների, պարտիական կազմակերպությունների քարտուղարների, ֆերմաների վարիչների ու դաշտավարական բրիգադավարների գիտելիքները կատարելագործելու նպատակով մի շարք շրջկոմներ սիստեմատիկորեն հրավիրում են սեմինար պարապմունքներ ու տեսական կոնֆերանսներ։ Այդ պարապմունքներում զեկուցումներով ու դասախոսություններով հանդես են գալիս պարտիական ղեկավար աշխատողներ, հմուտ մասնագետներ և արտադրության առաջավորներ։ Կարևորն այն է, որ արծարծվող հարցերը տեսականորեն յուրացնելուց բացի, ունկնդիրներն այցելում են առաջավոր սովխոզ, կոլտնտեսություն ու պրակտիկորեն ծանոթանում արտադրության եղանակին և առաջավոր փորձին։ Կյանքը ցույց է տվել, որ կադրերին այդ ձևով ուսուցելն ու դաստիարակելը լավագույն արդյունք է տալիս։

Հայտնի է, որ երբ կոլտնտեսությունը, սովխոզը, անասնաբուծական ֆերման կամ բրիգադան ղեկավարում են ձեռնհաս, բանիմաց կադրեր, տնտեսությունն արագ է զարգանում։ Կոլտնտեսային արտադրության այդպիսի հիանալի կազմակերպիչներ են Ստեփանավանի շրջանի Կիրովի գյուղի կոլտնտեսության նախագահ Ս. Դրագան, Սպիտակի շրջանի Հարթագյուղի կոլտնտեսության նախագահ Գ. Աֆրիկյանը, Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության նախագահ Ա. Գրիգորյանը և շատ շատերը։

Կար ժամանակ, որ Քաղցրաշենի կոլտնտեսությունն իր հարևաններից ետ էր մնում։ Պարտիայի շրջանային կոմիտեն այնտեղ ուղարկեց գյուղատնտեսական կրթություն և կազմակերպչական ջիղ ունեցող ընկ. Ա. Գրիգորյանին, որպես կոլտնտեսության նախագահ։ Նրա ջանասիրության շնորհիվ այժմ Քաղցրաշենի կոլտնտեսությունը շրջանի առաջավոր գյուղատնտեսական արտելներից մեկն է։ Անցյալ տարի կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 45 ցենտներ բամբակ, մոտ 150 ցենտներ խաղող, յուրաքանչյուր ֆուրաժային կովից՝ շուրջ 2000 կիլոգրամ կաթ։

Մեր ռեսպուբլիկան մեծ հնարավորություններ և ռեզերվներ ունի գյուղատնտեսությունն ավելի արագ թափով առաջ մղելու համար։ Մինչդեռ այդ հնարավորություններն ու ռեզերվները լրիվ չեն օգտագործվում։ Մի՞թե այդ չէ պատճառներից մեկը, որ ռեսպուբլիկան կաթի, մսի, բրդի արտադրությունն ավելացնելու վերաբերյալ իր վերցրած պարտավորությունն անբավարար է կատարում։ Իսկ առանձին շրջաններ այդ բնագավառում միջին ընդհանուր մակարդակից ետ են մնում։ Օրինակ, Աղինի շրջանն իր վերցրած պարտավորությունները կաթի ու մսի գծով, կիսամյակում կատարել է 60 տոկոսով։ Դրությունը մխիթարական չէ նաև Ախուրյանի և ուրիշ շրջաններում։ Ինչո՞վ կարող են արդարանալ Կալինինոյի և Կիրովականի շրջանների ղեկավարները, երբ այս տարվա խոտի առատ բերքի առկայության պայմաններում, դանդաղ է ընթանում խոտի կուտակումը։ Մինչև օգոստոսի տասը կուտակման առաջադրանքը կատարված է Կալինինոյում՝ 4,6 տոկոսով, Կիրովականում՝ 11,4 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում Աղինի շրջանը սիլոսացման պլանը կատարել է 17 տոկոսով։ Ղափանի, Ալավերդու, Նոյեմբերյանի, Թալինի շրջաններում դեռևս կան բազմաթիվ կոլտնտեսություններ, որոնց տնտե-



սական վիճակը երկար տարիներ նույն մակարդակի վրա է։ Հաճախ միևնույն շրջանի հարևան կոլտնտեսությունները, նրանց ֆերմաներն ու բրիգադաները տարբեր ցուցանիշներով են եզրափակում գյուղատնտեսական տարին։ Մի՞թե կարելի է հանդուրժել այն, երբ Արտաշատի շրջանի Նովրզլու գյուղի կոլտնտեսությունը բոլոր ցուցանիշներով շատ ետ է մնում իր հարևան Նորաշեն, Այգեզարդ, Քաղցրաշեն գյուղերի կոլտնտեսություններից։ Այսպես, օրինակ, Նովրզլու գյուղի կոլտնտեսությունը անցյալ տարի ստացել է խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից 19,5 ցենտներ բերք, բամբակի պլանտացիաների հեկտարից՝ 16 ցենտներ հումք, եգիպտացորենի հեկտարից միայն 16,8 ցենտներ հատիկ։ «Բանն, իհարկե,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— ոչ կլիմայական, ոչ էլ հողի առանձնահատկությունները չեն, այլ գլխավորապես ղեկավարման մակարդակն է։ Ամբողջ հարցը կադրերն են, կարելի է առանց սխալվելու ասել, որ եթե կոլտնտեսությունը թույլ է՝ վարչությունն է վատ աշխատում, նախագահը ոչ մի բանի պետք չէ»։

Կյանքը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ կադրերը, կոմունիստները ինչպես հարկն է կազմակերպական աշխատանք են կատարում եղած ռեզերվներն ու հնարավորություններն օգտագործելու ուղղությամբ, որտեղ նրանք ակտիվորեն միջամտում են գործերին, ձեռք առնում անհրաժեշտ միջոցներ, այնտեղ նույնիսկ ամենից ետ մնացող կոլտնտեսությունները կարճ ժամկետում դառնում են առաջավոր։

Անասնաբուծական մթերքների արտադրության ետ մնալու պատճառներից մեկն էլ այն է, որ մի շարք շրջանների ու բազմաթիվ գյուղերի պարտիական կազմակերպությունների, սովետական օրգանների ու կոլտնտեսությունների ղեկավարները քիչ ուշադրություն են դարձնում հանրային հոտի աճին ու անասունների մթերատվության բարձրացմանը։ Անհանդուրժելի է, երբ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների հանրային հոտի տեսակարար կշիռը միանգամայն անբավարար է ընդհանուր հոտի մեջ։

Բազմաթիվ կոլտնտեսությունների վարչությունների, պարտիական կազմակերպությունների ղեկավարների թողտվությամբ խախտվում է գյուղատնտեսական արտելի կանոնադրությունը և առանձին կոլտնտեսականներ պահում են մի քանի անգամ ավելի շատ անձնական անասուններ, քան նրանց թույլ է տրվում օրինական ճանապարհով։ Մի՞թե կարելի է հաշտվել այն փաստի հետ, երբ Բասարգեչարի շրջանում առանձին տնտեսություններ ունեն ավելի քան 100 գլուխ մանր եղջերավոր և 4—6 գլուխ խոշոր եղջերավոր անասուններ։ Իհարկե, այդքան անասուն ունեցող «կոլտնտեսականը» նախ իր հոտը պահում է կոլտնտեսության կամ սովխոզի կերի հաշվին և երկրորդ՝ չի զբաղվում հանրային աշխատանքով։ Ժամանակն է, վաղուց ժամանակն է ճշտորեն կիրառելու գյուղատնտեսական արտելի կանոնադրությունը և հասնելու այն բանին, որպեսզի բարձր տեմպով աճեն հանրային հոտն ու անասնաբուծական մթերքների արտադրությունը, որպեսզի մարդիկ իրենց անձնական օգտագործման համար պահեն այնքան անասուն, որքան նախատեսված է օրենքով։

Առանձին շրջաններում, կոլտնտեսություններում և սովխոզներում գյուղատնտեսական մթերքների արտադրության թույլ տեմպը հետևանք է և աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր մակարդակի ու աշխատանքի ցածր արտադրողականության։ Բավական է նշել, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և անասնաբուծական սովխոզներում առկա կովերի կիթը

*մեքենայացված է՝ կոլտնտեսություններում՝ 4,2 տոկոսով, իսկ սովխոզներում՝ 3,3 տոկոսով։ Ավտոմատ սարքավորումներով ջրվում է կոլտնտեսությունների կովերի 9,7 տոկոսը, սովխոզների կովերի՝ 71 տոկոսը։ Կոլտնտեսությունների կովերի գոմերի միայն 8,4 տոկոսն է, որ ունի ներֆերմային տրանսպորտ, իսկ սովխոզներում՝ 30 տոկոսը։ Շատ անասնաբուծական ֆերմաներում աշխատանքի այնպիսի ծանր պրոցեսներ, որպիսիք են կերի նախապատրաստումը և աղբի փոխադրությունը, դեռևս կատարվում են ձեռքով։*

*Վեդիի շրջանի Թայթան գյուղի կոլտնտեսության կոմբայնավար Հակոբ Ամիրխանյանը «Ս—6» կոմբայնով 15 օրում հնձել է ընդամենը 58 հեկտար հասկավոր կուլտուրա, այնինչ այդ ժամանակաշրջանում կարելի էր հնձել մինիմում 150 հեկտար, Ախուրյանի շրջանի Մայիսյան գյուղի կոլտնտեսության կոմբայնավար Համբարձում Ամիրխանյանը «Ս—6» կոմբայնով 8 օրում ընդամենը հնձել է 60 հեկտար հասկավոր կուլտուրա։*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը՝ բամբակագործության աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումն ապահովելու միջոցառումների մասին իրենց ընդունած որոշման մեջ, մեծ կարևորություն են տալիս բամբակագործության մեքենայացման ու ոռոգիչ սիստեմների բարելավմանը, որը խոշոր չափով կնպաստի բերքատվության ու աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։ Սակայն չնայած դրան, ռեսպուբլիկայում բամբակի, ինչպես նաև տեխնիկական մյուս կուլտուրաների մշակության բնագավառում մեքենաների օգտագործումը անբավարար է։ Մինչև այսօր էլ բամբակագործության և ճակնդեղագործության մեջ, ինչպես նաև եգիպտացորենի ցանքատարածությունների միջշարային մշակության և բերքահավաքի ասպարեզում լայնորեն չեն օգտագործվում մեքենաները։ Դրա հետևանքով էլ դաշտում աշխատողները, հատկապես կոլտնտեսուհիները հունձ են կատարում և մեջքները թեքած, ցանքերն են մշակում։ Կոլտնտեսությունների առանձին ղեկավարներ այդ հանգամանքը պատճառաբանում են կոլտնտեսականներին աշխօրերով ապահովելու ցանկությամբ։*

*«Բայց չէ որ մենք,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— հանձնարարում ենք ցանքի մշակումը մեքենայացնել ոչ թե նրա համար, որ ձեռքով աշխատելիս բերքը նվազում է։ Ոչ, բանն այդ չէ։ Բարձր բերք կարելի է ստանալ և ձեռքի աշխատանքով, բայց ի՞նչ գնով։ Որքա՞ն պետք է կոլտնտեսուհին... կիզիչ արևի տակ մեջքը ճկի, որպեսզի ձեռքով մի հեկտար եգիպտացորեն քաղհանի։ Մարդուն արևը հաճելի է, երբ այն տաքացնում է, բայց երբ այն կիզում, երբ այրող ճառագայթների տակ մարդը մեջքը ճկած ցանքերն է քաղհանում, ապա նա շատ քիչ է զգում արևի պոեզիան։* Պարտիան ձգտում է գյուղատնտեսական աշխատանքների պրոցեսների մեքենայացմանը նրա համար, որպեսզի հեշտացնի մարդու աշխատանքը, բարձրացնի նրա արտադրողականությունը: Աշխարհում ամենաթանկարժեքը մարդն է ու նրա աշխատանքը»:

*Եվ իրոք, այն կոլտնտեսություններում, ուր կիրառվում է մեքենայացումը, հիանալի արդյունքներ են ստացվում։ Էջմիածնի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության Մ. Եղիազարյանի ղեկավարած բրիգադայում անցյալ տարի 10 հեկտար խոզանավարի եգիպտացորենի ցանքը կատարել են քառակուսի բնային եղանակով։ Այդ ցանքատարածությունը մեքենայով երեք անգամ մշակելու համար ընդամենը ծախսվել է 12 աշխօր, մինչդեռ այն ձեռքով մշակելու դեպքում՝ կծախսվեր 160 աշխօր։ Այդ եղանակով մշակված եգիպտացորենի բերքն ավելի բարձր է եղել սովորական եղանակով մշակվածից։*

*Ահա թե որն է աշխատանքի մեքենայացման առավելությունը, որը պայմաններ է ստեղծում մարդկանց՝ ավելի թեթև և քիչ աշխատելու, ավելի շատ բերք ու բարձր եկամուտ ստանալու և իր հանգիստը կուլտուրական ձևով անցկացնելու համար։*

*Մեր դարը գիտության ու տեխնիկայի դար է։ Երիտասարդությունը բուռն ձգտում ունի տիրապետելու ժամանակակից տեխնիկային ու գիտությանը։ Այդ ձգտումներով ապրում է նաև սովետական գյուղի երիտասարդությունը, որի համար տհաճ են արտադրության հին ձևերը։ Հանրային արտադրության մեջ այդ հիանալի երիտասարդությունը լրիվ ընդգրկելու համար անհրաժեշտ է կոլտնտեսային արտադրությունում ավելի լայն ասպարեզ տալ մեքենաներին ու սարքավորումներին, արտադրությունը վարել նոր, առաջավոր եղանակով։ Դրա հետ միասին պետք է պայմաններ ստեղծել կոլտնտեսային երիտասարդության համար՝ տիրապետելու գյուղատնտեսական ժամանակակից տեխնիկային։*

*Այժմ մեր սոցիալիստական արդյունաբերությունը գյուղին տալիս է անհրաժեշտ քանակությամբ ու բարձր որակով մեքենաներ։ Հարկավոր է այդ տեխնիկան միշտ պահել կարգին վիճակում և օգտագործել լրիվ ու ռացիոնալ՝ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն է՛լ ավելի բարձրացնելու համար։*

*Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հուլիսյան պլենումը, որը քննության առավ կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավման հարցը, մեծ ուշադրություն հատկացրեց նաև գյուղատնտեսության բնագավառի կադրերի ընտրության, տեղադրման, դաստիարակության և ընդհանրապես գյուղատնտեսության զարգացման հարցերին։ Կենտրոնական Կոմիտեն դատապարտեց այն պրակտիկան, երբ մի կոլտնտեսության գործը տապալող նախագահին տեղափոխում են մի այլ կոլտնտեսություն, որն իր անճարակությամբ այնտեղ էլ է գործը ձախողում։ Բացասական հետևանքի է հասցնում այն, երբ նման մարդիկ գյուղում հերթականությամբ վարում են բոլոր պաշտոնները։ Դժբախտաբար դեռևս կան այնպիսի ընկերներ, որոնք կարծում են, թե իրենք կոչված են միայն ղեկավար աշխատանքի համար և հրաժարվում են ստորին աշխատանքի գնալու վերաբերյալ վերադաս օրգանների որոշումները կատարելուց։*

*Ժամանակն է վերջ տալ աշխատանքի այս ոճին։ Իհարկե, աշխատանքում թերություն, սխալներ ունեցող ընկերներին պետք է օգնել, ուղղություն տալ և դնել ճիշտ ճանապարհի վրա։ Իսկ երբ այդ բոլորը չեն օգնում, պետք է ուղղակի ասել՝ ընկեր, այս քո գործը չէ, հարկավոր է տեղը զիջել գործունյա, նորի զգացում և սեփական նախաձեռնություն ունեցող կադրերին։ Տնտեսությունը պետք է վարի նա՛, ով տիրապետում է տնտեսավարման արվեստին, նա՛, ով ունի անհրաժեշտ գիտելիքներ, կազմակերպական ունակություն և քաղաքականապես հասուն է։ Կադրերն ընտրելիս և տեղադրելիս միշտ պետք է ղեկավարվել պարտիական սկզբունքով, հաշվի առնել մարդկանց քաղաքական և գործնական հատկանիշները։*

*Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX համագումարն իր ընդու-*

նած որոշման մեջ ընդգծեց, որ պետք է անհրաժեշտ միջոցառումներ ձեռք առնել ետ մնացող կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր շրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հասցնելու համար: Գյուղի պարտիական կազմակերպությունների սրբազան պարտքն է՝ պայքարի հանել բոլոր կոլտնտեսություններին՝ համագումարի այդ առաջադրանքը ճշտությամբ կատարելու համար: Մեր օրվա լոզունգներից մեկն է՝ շրջանում ոչ մի կոլտնտեսություն և սովխոզ չպետք է ետ մնա, բոլորը պետք է համընթաց քայլեն առաջավորների հետ:

Յոթնամյակի խնդիրները հաջողությամբ լուծելու գործում վճռական դեր են խաղում կադրերը: ՀԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումը պարտիայի քաղկոմ-շրջկոմներից պահանջեց՝ կադրերն ընտրելիս հաշվի առնել միայն նրանց քաղաքական և գործնական հատկանիշները: Սիստեմատիկորեն բարձրացնել կադրերի տեսական մակարդակն ու մասնագիտական գիտելիքները, նրանց դաստիարակել ժողովուրդների բարեկամության, ինտերնացիոնալիզմի, պարտիական ու պետական առաջադրանքներն անթերի կատարելու ոգով:

Սովետական Միության բոլոր աշխատավորների հետ միասին կոլտնտեսային գյուղացիությունը ևս բուռն խանդավառությամբ ընդունեց ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի Դիմումը, ուղղված մեր երկրի բանվորներին ու բանվորուհիներին, կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, ինտելիգենցիային ու բոլոր աշխատավորներին, ինչպես նաև այս տարվա նոյեմբերին պարտիայի Կենտկոմի պլենում հրավիրելու մասին հաղորդագրությունը: Ամենուրեք լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը, աշխատավորները միահամուռ պատրաստակամություն են հայտնում, որ պատվով կկատարեն ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներն ու յոթնամյակի առաջին տարին կավարտեն արտադրական բարձր ցուցանիշներով:

Այժմ գյուղատնտեսական աշխատանքների ամենաեռուն շրջանն է: Կոլտնտեսության ու սովխոզի դաշտում, անասնաբուծական ֆերմայում վճռվում է բարձր բերք ստանալու, անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու, կերի կայուն բազա ստեղծելու հարցը: Լարենք մեր բոլոր ուժերը, գործի դնենք բոլոր լծակները՝ գյուղի աշխատավորական լայն մասսաներին պայքարի հանենք մեր վերցրած պարտավորությունները պատվով կատարելու, յոթնամյակի համար մղվող պայքարում առաջին բնագիծը նվաճելու համար: Դրանով մենք ամուր հիմք կստեղծենք ժամկետից շուտ կատարելու ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների վիթխարի պլանը: Այս պայքարում ևս կոմունիստները պետք է ապահովեն իրենց ավանգարդային դերը:

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԵՎ ՎՃՌԱԿԱՆ ԲՆԱԳԱՎԱՌԸ

Բ. ՍԱՐԳԻՍՈՎ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

Կոմունիստական պարտիան սովետական հասարակության ղեկավար ուժն է: Նա ուղղություն է տալիս պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունների գործունեությանը, աշխատավորների լայն մասսաներին դաստիարակում և մոբիլիզացնում է երկրի էկոնոմիկայի ու կուլտուրայի անընդհատ զարգացման, Սովետական պետության հզորության ուժեղացման համար մղվող պայքարում: Մեր երկրում չկա գործունեության որևէ բնագավառ, որտեղ չզգացվի պարտիայի ուղղություն տվող և կազմակերպող ազդեցությունը:

Սովետական ժողովրդի համաշխարհային-պատմական հաղթանակները պարտիայի՝ մեր առաջխաղացումը լուսավորող մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն տեսության վրա հիմնված ճիշտ քաղաքականության արդյունքն են, պարտիայի տարած վիթխարի կազմակերպական աշխատանքի արդյունքը:

Պարտիական-կազմակերպական աշխատանքը առաջին հերթին նկատի ունի պարտիայի քաղաքական գծի պահանջներին համապատասխանաբար կադրերի ճիշտ տեղադրումն ու դաստիարակումը, որոնք ընդունակ լինեն գործնականում հետևողականորեն և հաջողությամբ կենսագործելու պարտիայի քաղաքականությունը: Կադրերը պարտիական և պետական ղեկավարման վճռական ուժն են: Այդ պատճառով էլ, երբ ծառանում են նոր, դժվարին խնդիրներ, պարտիան նախ և առաջ հոգ է տանում պարտիական կազմակերպությունների հետագա ամրապնդման, նրանց պատասխանատվության բարձրացման և նրանց կազմակերպական աշխատանքի, հատկապես՝ կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավման մասին:

Վերջին տարիներին հատկապես վառ կերպով դրսևորվեց Կոմունիստական պարտիայի ղեկավար և ուղղություն տվող դերը, նրա հսկայական կազմակերպական աշխատանքի ստեղծագործական բնույթը, որը պսակվեց հիանալի հաջողություններով տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում:

Որոշելով նյութական արտադրության բազմակողմանի զարգացման՝ արդյունաբերության նոր, հզոր վերելքի, գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի, տեխնիկական պրոգրեսի ապահովման հետագա անհետաձգելի խնդիրները, Կոմունիստական պարտիան և նրա Կենտկոմը հատուկ ուշադրություն դարձրին կադրերի տեղադրման ու դաստիարակման վրա, նկատի ունենալով, որ անցյալում տնտեսության զարգացման գործում եղած

խոշոր թերությունների գլխավոր պատճառներից մեկը այն էր, որ տարիներ շարունակ պարտիական կադրերին անհրաժեշտ չափով պատասխանատվություն չէր ներարկվում տնտեսության դրության, տնտեսական շինարարության հարցերի պրակտիկ լուծման համար։ Ուստի ամենայն սրությամբ դրվեց ղեկավար աշխատողների քաղաքական և գործնական հատկանիշների հետագա կատարելագործման անհրաժեշտության հարցը, այն հարցը, որպեսզի նրանք ստեղծագործաբար ուսումնասիրեն և յուրացնեն մարքսիզմ-լենինիզմը, հմտորեն կիրառեն տեսական դրույթները կոմունիստական շինարարության կենսական խնդիրները լուծելիս։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ամբողջ գործունեությունը, որն արտահայտվել է և արտահայտվում է մեկը մյուսի ետևից կենսագործված և կենսագործվող խոշոր համապետական միջոցառումներով, պարտիայի բոլոր կադրերի համար հանդիսացել է և հանդիսանում է մեծ դպրոց։ Պարտիական, պետական և տնտեսական շինարարության կարևորագույն հարցերի դրվածքով և հետևողական լուծումով, հարցեր, որոնք մշակվել են սովետական հասարակության մեջ կատարվող ռեալ պրոցեսների տեսական ընդհանրացման հիման վրա, մեր երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման հասունացած պահանջների բացահայտման հիման վրա, ՍՄԿՊ Կենտկոմը կադրերին ուսուցանում է տնտեսության և կուլտուրայի ղեկավարման արվեստը, սովորեցնում է, թե ինչպես պետք է պարտիական աշխատանքը կապել տնտեսական աշխատանքի հետ, կադրերին օգնում է տիրապետելու մասսաների մեջ տարվող կազմակերպական ու քաղաքական աշխատանքի արվեստին։ Պարտիան իր բոլոր տեղական կազմակերպությունների և նրանց կադրերի ուշադրությունը շեշտակիորեն դարձրել է դեպի տնտեսական շինարարության կոնկրետ ղեկավարությունը, դեպի արտադրության զարգացումը։ Այդ ամենը խոր կնիք է դրել պարտիական ու սովետական օրգանների գործունեության վրա, էլ ավելի ուժեղ կերպով է զարգացրել կադրերի կազմակերպական ունակությունները։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, որպես սովետական ժողովրդի հզոր և մարտական ավանգարդ, թևակոխել է պատմական զարգացման մի նոր շրջան, իսկ նրա կադրերը՝ զինված են տնտեսական շինարարության ղեկավարման, մասսաների կազմակերպական և քաղաքական ղեկավարման կուտակված նոր փորձով։ Այսպիսով, կոմունիզմի ծավալուն կառուցման ներկա էտապում, կադրերի դերն իբրև մասսաների կազմակերպիչների, ավելի քան բարձրանում է։

ՍՄԿՊ XXI համագումարը մշակելով կոմունիզմի շինարարության մեծ ծրագիր, կրկին ուշադրություն դարձրեց կադրերի հետ կատարվող աշխատանքի հետագա բարելավման, ընտրության լենինյան սկզբունքների անշեղ պահպանման, կադրերի դասավորման և դաստիարակման անհրաժեշտության վրա։ Ժամանակակից պայմաններում այդ գործը պետք է անընդհատ կատարելագործվի։ Դրա անհրաժեշտությունը հրամայաբար թելադրում են կյանքը, կոմունիստական շինարարության նոր պատասխանատու պլանները, մասսաների ակտիվությունը, նրանց պահանջների աճը։

Բոլորին հայտնի է, որ ռեսպուբլիկայում, ինչպես և երկրում ամենուրեք յոթնամյա պլանի համեմատ անսովոր չափով ընդարձակվել են տնտեսական ու



կուլտուրական շինարարության մասշտաբները, հայտնի է, թե այս յոթնամյակում մեր կադրերը ինչպիսի բարդ և պատասխանատու խնդիրներ պետք է լուծեն։

Հայաստանի ԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումը, որը ՍՄԿՊ XXI համագումարի լույսի տակ քննարկեց կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավման միջոցառումների հարցը, ամփոփեց ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների դրական աշխատանքը կադրերի ընտրության, դասավորման և դաստիարակման ուղղությամբ, բացահայտեց այդ գործում եղած թերությունները, միջոցառումներ նշեց կադրերի հետ տարվող աշխատանքի հետագա բարելավման ուղղությամբ։

Ղեկավարվելով ՍՄԿՊ Կենտկոմի, պարտիայի XX և XXI համագումարների ցուցումներով, ելնելով այն մեծ խնդիրներից, որ պարտիան դրել է ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի բոլոր ճյուղերի հզոր վերելքի գծով, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները քիչ աշխատանք չեն կատարել կադրերի տեղադրման և դաստիարակման ուղղությամբ։ Վերջին տարիներս ռեսպուբլիկայում զգալիորեն բարելավվել է պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար կադրերի կազմը։ Նրանց մեջ ավելի մեծ թիվ են կազմում երիտասարդ, նախաձեռնող աշխատողները, արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագետները, կանայք։

Միաժամանակ լուրջ ուշադրություն դարձվեց քաղաքների և շրջանների, հատկապես ետ մնացող քաղաքների ու շրջանների ղեկավարության հետագա ամրապնդման վրա։ Շրջաններում և քաղաքներում պարտիական ու սովետական ղեկավար աշխատանքի ուղարկվեցին Հայաստանի ԿՊ Կենտկոմի ապարատի, սովետական և տնտեսական օրգանների պատասխանատու աշխատողներ։ Պետք է ասել, որ նրանց մեծ մասն աշխատում է եռանդով և ոգևորությամբ, կարողանում է կատարել գործը, իրեն դրսևորում է որպես լավ կազմակերպիչ։ Դրանց թվում կարելի է նշել, օրինակ, Կիրովական քաղաքի ղեկավարներին, Վեդիի, Սպիտակի, Կրասնոսելսկի, Եղեգնաձորի, Մեղրիի, Կիրովականի և մի շարք այլ շրջանների ղեկավարներին։

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունում, տրանսպորտում, շինարարությունում աշխատում են որակյալ մասնագետներ՝ արտադրության լավագույն կազմակերպիչներ և հրամանատարներ։ Մեր ինտելիգենցիայի բազմամարդ և հզոր ջոկատը աշխատում է գիտական և գաղափարական հիմնարկներում։ Ակներև որակական փոփոխություններ տեղի ունեցան կոլտնտեսությունների նախագահների կազմում։ Ամրապնդվեց ետ մնացող կոլտնտեսությունների զգալի մասը։

Փոխարինելով այն ղեկավար և պատասխանատու աշխատողներին, որոնք երկար ժամանակ աղնվաբար և նվիրված աշխատում են պարտիական, սովետական կամ այլ աշխատանքում, բայց հիմա հասակի կամ ուրիշ այլ պատճառով արդեն չեն կարողանում անհրաժեշտ եռանդով և ակտիվությամբ տանել հանձնարարված գործը, պարտիական և սովետական օրգանները նրանց նկատմամբ դրսևորում են անհրաժեշտ հոգատարություն՝ նրանց տրամադրելով իրենց ֆիզիկական հնարավորությունների և ընդունակությունների համապատասխան աշխատանք կամ նշանակվում է կենսաթոշակ։

Կադրերի ընտրության ու տեղադրման հետ միասին սկզբնական պարտիական կազմակերպությունները լուրջ ուշադրություն դարձրին կադրերը պար-

տիայի և կառավարության որոշումների կատարման, պարտիական ու պետական կարգապահության խստիվ պահպանման ոգով, ժողովուրդների եղբայրական բարեկամության, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներով դաստիարակելու վրա։

Կադրերի հետ տարվող պարտիական կազմակերպությունների աշխատանքը դրական հետևանքներ է տվել աշխատավորների ուժերը այն խնդիրների լուծման համար մոբիլիզացնելու գործում, որոնք կանգնած են մեր ռեսպուբլիկայի առջև։

Սովետական Հայաստանի արդյունաբերությունը տարեցտարի կատարում և գերակատարում է արտադրական պլանները։ 1953 թվականի համեմատությամբ արտադրության համախառն արտադրանքը 1958 թվականին ավելացավ 71 տոկոսով, աշխատանքի արտադրողականության աճը կազմեց 31 տոկոս։ Արդյունաբերության աշխատողները արժանավայել դիմավորեցին ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի բացումը, ժամկետից ավելի շուտ՝ հունիսի 23-ին կատարելով արտադրության համախառն արտադրանքի կիսամյա պլանը։ Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ արտադրության ծավալը աճեց 12 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 5 տոկոսով։

Նշանակալիորեն աճեց գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ 1953 թվականից մինչև 1958 թվականը ընկնող ժամանակաշրջանում կաթի համախառն արտադրությունը ավելացավ 67,7 տոկոսով, միսինը՝ 37 տոկոսով, բրդինը՝ 37,1 տոկոսով. հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը անցյալ տարի կոլտնտեսություններում հասավ 9,7 ցենտների մեկ հեկտարից, ծխախոտինը՝ 12,7 ցենտների, բամբակինը՝ 25,2 ցենտների, 1953 թվականին համապատասխանաբար 7,0 ցենտների, 9,0 ցենտների, 20,7 ցենտների յուրաքանչյուր հեկտարից։

Գյուղատնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերած խոշոր հաջողությունների համար Սովետական Հայաստանը պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Էլ ավելի զարգացան գիտությունն ու կուլտուրան։

Այդ ամենի համար մեծ ծառայություն ունեն մեր կադրերը՝ ռեսպուբլիկայի պարտիական և պետական ղեկավարության վճռական ուժը, որոնք իրենց ուսերի վրա կրում են բազմատեսակ ամենօրյա աշխատանքի հիմնական ծանրությունը՝ պարտիայի առաջադրած խնդիրների պրակտիկ իրագործման բնագավառում։

Ներկայումս Կոմունիստական պարտիան, սովետական ամբողջ ժողովուրդը, այդ թվում մեր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները և աշխատավորները ապրում են քաղաքական և արտադրական բուռն կյանքով։ Պարտիական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական աշխատող կադրերը գլխավորելով մասսաների ստեղծագործական ակտիվությունը, ջանում են, որ ռեսպուբլիկայի յոթնամյա պլանը ոչ միայն կատարվի, այլև զգալիորեն գերազանցվի, որ ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումները լիովին կենսագործվեն։

ՍՄԿՊ XXI համագումարի առաջադրած նոր խնդիրները հաջողությամբ կատարելու համար, պետք է բոլոր կադրերը գտնվեն բարձր մոբիլիզացվածության վիճակում, պետք է խորապես բացահայտեն աշխատանքի տարբեր



տեղամասերում եղած թերությունները և հետևողականորեն վերացնեն դրանք։ Իսկ թերությունները,— ինչպես ասել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը Կենտկոմի Հունիսյան պլենումում,— վերացական հասկացողություններ չեն, դրանք արտահայտվում են որոշակի անձանց մեջ, ունեն իրենց կրողները, այս կամ այն աշխատողի ոչ բավարար աշխատանքի հետևանք են։

Ուրեմն խոսքը վերաբերում է մեր կադրերի աշխատանքին, նրանց քաղաքական ու գործնական հատկանիշներին, պարտիայի առաջադրած նոր խնդիրներին, այս կամ այն աշխատողի այդ հատկանիշների համապատասխան կամ անհամապատասխան լինելուն։ Մի խոսքով, բանը վերաբերում է կադրերի ընտրությանը, նրանց տեղադրմանն ու դաստիարակմանը, այն թերություններին ու վրիպումներին, որպիսիք տեղ են գտնում պարտիական աշխատանքի ընթացքում։

Նախ և առաջ պետք է ասել, որ աշխատանքի բոլոր վճռական տեղամասերը չեն, որ պարտիայի ժամանակակից պահանջներին համապատասխան ամրացված են կադրերով։

Հայտնի է, որ ռեսպուբլիկայում արտադրության պլանների ընդհանուր կատարումով հանդերձ, կան առանձին ետ մնացող տեղամասեր, ինչպես նաև կազմակերպություններ, հիմնարկներ և գերատեսչություններ, որոնց աշխատանքը լիովին չէ, որ ընթանում է ժամանակակից պահանջների համեմատ։

Դժբախտաբար մեզ դեռևս չի հաջողվել հաստատուն կերպով ամրապնդել պարտիայի որոշ շրջկոմների ղեկավարությունը։ Դա է այդ շրջաններում տնտեսության ղեկավարման և պարտիական-քաղաքական աշխատանքի դրվածքի գործում եղած խոշոր թերությունների վճռական պատճառներից մեկը։ Այդպիսի շրջանների թվում կարելի է նշել, օրինակ, Ղափանի, Ալավերդու, Իջևանի և մի քանի այլ շրջաններ։

Մի որոշ ժամանակ մեզ չէր հաջողվում պահանջվող չափով ամրապնդել պարտիայի Նոյեմբերյանի շրջանի ղեկավարությունը։ Անցյալ տարվա վերջերին շրջանի ղեկավարմանն անցան նոր ընկերներ։ Այժմ ամբողջությամբ առած դրությունը շրջանում բարելավվում է։ Պետք է հուսալ, որ շրջանի պարտիական կազմակերպությունը կկարողանա գլխավորել աշխատավորների եռանդը, որպեսզի շրջանը դուրս բերի առաջավորների շարքը։

Հայաստանի ԿՊ Կենտկոմը ուշադրությամբ հետևելով քաղաքների ու շրջանների պարտիական կոմիտեների ղեկավարների գործունեությանը, նրանց օգնում է իրենց աշխատանքում, խնդիր է դնում, որ պարտիական բոլոր օրգանները ամրապնդվեն մեր պարտիայի բոլոր և ամեն տեսակ առաջադրանքները լիովին կենսագործելու ընդունակ կադրերով։

Հայտնի է, որ ռեսպուբլիկական առանձին կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների աշխատանքում նկատվում են լուրջ թերություններ։ Դրա համար, օրինակ, ռեսպուբլիկայի Պետպլանը հաճախ ենթարկվում է քննադատության։ Բայց ինչումն են դրանց գլխավոր պատճառները։ Դրանցից մեկը կադրերի հետ տարվող թույլ աշխատանքն է։

Առաջ, մինչև երկրում արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումը, ռեսպուբլիկայի Պետպլանն արդյունաբերության բնագավառում գլխավորապես զբաղվում էր տեղական արդյունաբերության ու արհեստագործական կոոպերացիայի պլանավորմամբ։ Միութենական-ռեսպուբլիկական ենթակայության ձեռնարկությունների պլանավորման գծով

հիմնական աշխատանքը կատարում էր Միութենական Պետպլանը՝ միութենական ռեսպուբլիկական մինիստրությունների ներկայացմամբ։ Իսկ միութենական ձեռնարկություններով ռեսպուբլիկայի Պետպլանը գրեթե չէր զբաղվում։ Վերակառուցումից հետո արտադրության պլանավորման ու նյութա-տեխնիկական մատակարարման ամբողջ ծանրությունն ընկավ ռեսպուբլիկայի Պետպլանի վրա։

Բայց Պետպլանի ապարատի կադրերի հետ բավականաչափ աշխատանք կատարվո՞ւմ է արդյոք նրա առջև ծառացած բովանդակությամբ բարդ և ծավալով մեծ խնդիրներին համեմատ։ Պետք է ասել, որ քիչ բան է արված։ Անհրաժեշտ է, որ Պետպլանի աշխատողները լավ գիտենան քիմիական, էլեկտրատեխնիկական, մեքենաշինական, լեռնահանքային արդյունաբերությունը, գործիքաշինությունը, և կիսահաղորդիչային տեխնիկան, էլեկտրոնիկան և այլ ճյուղեր, որոնք կան մեր ռեսպուբլիկայում։ Էլ չենք խոսում պլանավորման այնպիսի հարցերի մասին, ինչպես գիտա-հետազոտական և նախագծային կոնստրուկտորական կազմակերպություններին ուղղություն տալն է։

Ժողտնտխորհի ղեկավարությունն ու նրա ձեռնարկությունների ղեկավար աշխատողները հաճախ քննադատության են ենթարկվում շատ թերությունների համար։ Այդ թերությունների ամենագլխավոր պատճառներից մեկը դարձյալ կադրերի մեջ է թաքնված։ Ինչպես միշտ, առավել ևս հիմա դժվար է ժամանակակից պահանջներին համեմատ տնտեսություն վարել՝ առանց բարձր մակարդակով որոշելու արտադրության բոլոր հասունացած հարցերը։ Այժմ ակնհայտորեն անբավարար են շատ տնտեսական աշխատողների (ոչ միայն նրանց), ընդհանուր կազմակերպական ունակությունները։ Աշխատողը պետք է տեխնիկապես և թեորիապես բազմակողմանիորեն պատրաստված լինի, կարողանա բոլոր տեխնիկական հարցերը լուծել առավելագույն չափով գրագետ և հստակ, այսինքն՝ լավ գիտենա, թե ինչը պետք է կազմակերպել։

Բայց Ժողտնտխորհի սիստեմի առանձին օղակներում բանն ամենևին էլ այդպես չէ։ Հիրավի, կարելի՞ է արդյոք լրջորեն խոսել, օրինակ, սննդամթերքների որակը բարելավելու, ասորտիմենտը ընդլայնելու և ինքնարժեքն իջեցնելու մասին, որի առթիվ արդարացիորեն հաճախ գանգատվում են բնակչությունն ու առևտրական կազմակերպությունները և երբ այդ վարչությունում ու նրա ձեռնարկությունների մեծ մասում աշխատում են այնպիսի մարդիկ, որոնք այդ գործի մասնագետներ չեն և նրանց համար դժվար է արտադրությունը վարել ժամանակակից տեխնիկական պահանջների մակարդակով։ Նման դրություն տեղի ունի նաև շինանյութերի արդյունաբերության, մսի և կաթի արդյունաբերության շատ ձեռնարկություններում և այլ ճյուղերում։

Բերված թերություններն ու օրինակները, իհարկե, չեն նշանակում, թե դրանք տեղի ունեն միայն հիշատակված գերատեսչություններում։ Կադրերի հետ տարվող աշխատանքում շատ բան կա անելու Առևտրի, Շինարարության մինիստրություններում, դատական և դատախազական օրգաններում, Հայկոոպի սիստեմում և այլն։

ՀԿՊ Կենտկոմի պլենումը մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների, նրանց պարտկազմակերպությունների առջև խնդիր դրեց բոլոր տեղամասերն ամրապնդել գործնական ու քաղաքական տեսակետից ստուգված կադրերով, վճռականապես հրաժարվել կադրերի հետ տարվող աշ-



խատանքը թերագնահատելուց, որ նկատվում է մի շարք ղեկավար աշխատողների մոտ, կարգավորել այդ աշխատանքի ճիշտ կազմակերպումը պարտիայի պահանջներին համապատասխան։ Մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարները պետք է մշտապես անձնական լիակատար պատասխանատվություն զգան կադրերի հետ տարվող աշխատանքի վիճակի համար։

Գյուղատնտեսության շեշտակի վերելքի գծով պարտիայի մշակած ծրագրի կատարման համար մղվող պայքարում մեր ռեսպուբլիկայում, ինչպես մեր երկրում ամենուրեք, կոփվել է գյուղատնտեսական արտադրության խոշոր կազմակերպիչների՝ կոլտնտեսությունների նախագահների, սովխոզների դիրեկտորների մի ամբողջ սերունդ։ Դրանց թվում կարելի է նշել Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության նախագահ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ընկեր Մեժլումյանին, Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության նախագահ ընկեր Գրիգորյանին, Ստեփանավանի շրջանի Կիրովի գյուղի կոլտնտեսության նախագահ ընկեր Դրագային, Շահումյանի շրջանի Ղուկասավան գյուղի կոլտնտեսության նախագահ ընկեր Վարդուհի Շահինյանին, Գորիսի շրջանի Խանածախ գյուղի կոլտնտեսության նախագահ ընկեր Բաղդասարյանին, Բասարգեչարի շրջանի Կարախման գյուղի կոլտնտեսության նախագահ ընկեր Իսմայիլովին, Լոռու պլեմսովխոզի դիրեկտոր ընկեր Մկրտչյանին, Վեդու շրջանի Սուրենավան սովխոզի դիրեկտոր ընկեր Բադալյանին և շատ ու շատ ուրիշների։

Այդպիսի կադրերի վրա կարելի է համարձակորեն հույս դնել, գիտենալով, որ նրանք այսուհետև էլ խելացիորեն կլուծեն իրենց առջև դրված նոր խնդիրները։

Բայց բանը նրանումն է, որ բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները փորձված ու բարձրորակ նախագահներով և դիրեկտորներով ամրապնդելու պրոբլեմը դեռևս լիովին լուծված չէ մեզ մոտ։ Ռեսպուբլիկայում տնտեսապես թույլ կոլտնտեսությունների և սովխոզների թիվը վերջին տարիներին խիստ կրճատվել է։ Բայց պետք է ասել, որ պարտիայի կենսագործած միջոցառումներով գյուղատնտեսությունը (ամբողջությամբ վերցրած), հասել է այնպիսի մակարդակի, ստեղծվել են այնպիսի բարենպաստ պայմաններ, որ մենք ներկայումս չենք կարող և չպետք է հանդուրժենք, որ որևէ շրջանում տնտեսապես թույլ կոլտնտեսություններ լինեն։

Դրա հիմնական և ամենագլխավոր պատճառն այն է, որ այդպիսի կոլտնտեսություններին ղեկավարում են, որպես կանոն, այնպիսի նախագահներ, որոնք ետ են մնացել կյանքից, ետ են մնացել արտադրական, ընդհանուր-կրթական և կուլտուրական տեսակետից, չեն կարողանում կատարել իրենց պատասխանատու պարտականությունները։ Նշանակում է, ինչպես նշել է ընկ. Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումում, բանը կազմակերպական աշխատանքի մեջ է, բանը նրանումն է, թե ում ենք նշանակում այդ ետ մնացող կոլտնտեսությունների ղեկավարներ։ Եվ իրոք, ամեն մի շրջանին ընդամենը մի քանի ետ մնացող կոլտնտեսություն է ընկնում, նրանք կարող են և պետք է, ինչպես ասվում է, շրջանի ղեկավարների առանձին ուշադրության կենտրոնում լինեն։ Բայց պետք է ասել, որ պարտիայի առանձին շրջկոմների քարտուղարներ և առանձին շրջսովետների գործկոմների նախագահներ գյուղատնտեսության վիճակն ընդհանրապես բարելավելու հետ միասին բավականաչափ ուշադրություն չեն դարձնում կոլտնտեսությունների

նախագահների ընտրության վրա և նույնիսկ հաշտվում են այն բանի հետ, թե շրջանում կարելի է ունենալ ետ մնացող կոլտնտեսություններ։

Չնայած նրան, որ ետ մնացող կոլտնտեսությունների թիվը մեզ մոտ խիստ կրճատվել է, կոլտնտեսությունների ետ մնալը վերացնելու հարցը ներկայումս շատ ավելի սուր է դրվում, քան առաջ, որի համար այժմ անհամեմատ նպաստավոր պայմաններ կան։ Այդ պատճառով էլ ՀԿՊ Կենտկոմի պլենումը ռեսպուբլիկական ու շրջանային պարտիական և սովետական կազմակերպությունների առաջ անհետաձգելի խնդիր դրեց՝ մոտակա ամենակարճ ժամանակամիջոցում վերացնել դեռևս գոյություն ունեցող տնտեսապես թույլ կոլտնտեսությունների ետ մնալը, մինչև վերջ կատարել ՀԿՊ XX համագումարի ցուցումները՝ յուրաքանչյուր շրջանում բոլոր կոլտնտեսությունները տվյալ շրջանի առաջավոր կոլտնտեսությունների մակարդակին հասցնելու մասին, մի բան, որն իր արտացոլումն էր գտել իշխանցիների նախաձեռնության մեջ։

Ինչ վերաբերում է սովխոզների դիրեկտորների կազմին, ապա պետք է ասել, որ նրանց թվում դեռևս քիչ չեն թույլ աշխատողները։ Դա տեղի է ունեցել այն պատճառով, որ սովխոզների տրեստների ղեկավարությունը, պարտիայի շրջկոմներն ու շրջսովետները մի շարք դեպքերում լուրջ ուշադրություն չեն դարձրել սովխոզների դիրեկտորներ ընտրելիս։ Դրա պատճառներից մեկը կարելի է համարել այն, որ սովխոզներ ունեցող շրջաններում կոլտնտեսությունների թվի համեմատությամբ սովխոզների փոքրաթիվ լինելու պատճառով, տվյալ շրջանի ղեկավարությունը շրջանի ցուցանիշների տեսակետից վճռականը համարել է կոլտնտեսային արտադրությունը և հաճախ սովխոզի դիրեկտոր է նշանակել թույլ աշխատողի։

Պլենումը տվեց առաջադրանք՝ շրջանում ոչ մի ետ մնացող կոլտնտեսություն և սովխոզ չպետք է լինի։ Պարտիայի շրջկոմների և շրջսովետների գործունեության գլխավոր գնահատականը կլինի այն, թե ինչպես են նրանք կատարում այդ առաջադրանքը։ Պլենումը մատնանշեց, որ տնտեսապես թույլ կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է ուղարկել ռեսպուբլիկական և շրջանային պատասխանատու աշխատողների, որոնք լավ գիտեն գյուղատնտեսական արտադրությունը և լավ կազմակերպիչներ են։

Մենք ապրում և աշխատում ենք այնպիսի ժամանակում, երբ առանց պատշաճ կրթության և կուլտուրայի դժվար է առավելագույն օգտավետությամբ կատարել պարտիայի առաջադրանքները, լիովին օգտագործել ժամանակակից գիտության և տեխնիկայի նվաճումները, առաջավոր փորձը։ Կյանքը մեզ հասցրել է այն բանին, որ մենք այժմ կարող ենք և պետք է դնենք ոչ միայն այն հարցը, որ կոլտնտեսությունների նախագահները լինեն մասնագետներ, արտադրության կազմակերպիչներ, այլև այն հարցը, որ կոլտնտեսային արտադրության միջին օղակը՝ բրիգադիրների, ֆերմաների վարիչների կազմը ամրապնդվեն գիտական գիտելիքներ ունեցող, կազմակերպական ունակություններով օժտված մասնագետներով։ Ուստի կադրերի հետ տարվող աշխատանքի ընդհանուր սիստեմում ժամանակակից պայմաններում հատկապես կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսության մասնագետների պատրաստման և ճիշտ օգտագործման հարցը։

Սակայն այդ գործում մենք դեռևս շատ թերություններ ունենք։ Գյուղա-



տնտեսական ուսումնական հաստատությունների շրջանավարտների քանակի համադրությունը կոլտնտեսային արտադրության մեջ աշխատող մասնագետների քանակի հետ, ցույց է տալիս, որ գյուղատնտեսության մասնագետների որոշ մասը չի օգտագործվում ըստ իրենց մասնագիտության։

Իսկ ո՞րն է այդ դրության պատճառը։ Գլխավոր պատճառներից մեկը որոշ կոլտնտեսությունների նախագահների սխալ, հետամնաց վերաբերմունքն է դեպի մասնագետները։ Որոշ նախագահների «ձեռնտու» է ունենալ կիսագրագետ բրիգադիր կամ ֆերմայի վարիչ, քան կրթված մասնագետ։ Ընդ որում, պարտիայի առանձին շրջկոմների քարտուղարներ և շրջսովետների գործկոմների նախագահներ թողտվություն են ցուցաբերում այդ երևույթի նկատմամբ։

Մյուս ոչ պակաս կարևոր պատճառը կոնտինգենտի սխալ ընտրության փաստն է։ Գյուղատնտեսական բուհերում համեմատաբար քիչ են ընդունում գյուղատնտեսական շրջաններից եկած երիտասարդությանը։

Հայաստանի ԿՊ Կենտկոմի պլենումում սուր կերպով դրվեց այն հարցը, որ մի շարք պարտիական, սովետական, տնտեսական օրգաններ կադրերի ընտրության և առաջքաշման ժամանակ ներփակվում են նեղ, վաղուց կազմավորված աշխատողների շրջանակում, հաճախ կյանքից ետ մնալով, իրենց վրա դրված պարտականությունները չկատարող աշխատողներին տեղափոխում են մի պաշտոնից մյուսը, այդպես են վարվում նույնիսկ այն պաշտոնատար անձանց հետ, որոնք խախտել են պարտիական և պետական կարգապահությունը։ Որոշ ղեկավարներ կադրերի նկատմամբ կորցնում են պարտիական մոտեցումը։ Նրանց հաճախ գնահատում են ոչ թե ըստ նրանց պրակտիկ գործունեության արդյունքների, այլ ղեկավարվում են նրանով, որպեսզի որևէ կերպ գործի դնեն աշխատողին, որպեսզի չվիրավորեն նրան։ Ընդ որում, այդ քիչ է շաղկապվում գործի շահերին, ուստի պատահական չէ, որ մեզ մոտ որոշ չափով ստեղծվել է այնպիսի մարդկանց մի կատեգորիա, որը ոչ առանց պարտիական ու սովետական առանձին օրգանների օգնության, իրեն ընդմիշտ դրել է նոմենկլատուրային աշխատողների թվի մեջ և կարծում է, թե քանի որ արդեն ընկել է, եթե կարելի է այսպես արտահայտվել, նոմենկլատուրայի պահունակի մեջ, ապա այնտեղից այլևս չպետք է դուրս գա։ Բայց եթե մենք գործ ածեցինք պահունակ բառը, ապա պետք է ասել նաև այն, որ ինչպես հայտնի է, պահունակի մեջ բոլոր փամփուշտները պետք է լինեն մարտական, կրակող, որպեսզի ոչ մի փամփուշտ փուստ չանցնի։ Այդ այսպես կոչված «մշտական նոմենկլատուրայինները» այն մարդիկն են, որոնք մեկ անգամ չէ, որ ձախողել են հանձնարարված գործը, որպես կանոն, ետ են մնացել կյանքից, էլ արդեն չեն կրակում։ Ուստի պետք չէ նրանց մի տեղից մի ուրիշը տեղափոխել, դրանից նրանք մարտական չեն դառնա, այլ պետք է պարզապես փոխել, այն ժամանակ ամբողջ պահունակը մարտական կլինի։ Իսկ այդպիսի մարդկանց պետք է աշխատանք տալ նրանց ունակությունների համեմատ։

Պետք է ասել, որ այդպիսի աշխատողներին պատասխանատու, ղեկավար աշխատանքի նշանակելը որոշակի հակասություն է ստեղծում նրանց գործնական ու քաղաքական հատկանիշների ցածր մակարդակի և նրանց ենթակա կոլեկտիվի որակի, կուլտուրայի, պահանջմունքների աճած մակարդակի միջև։ Այդպիսի աշխատողները, իհարկե, չեն կարող արձագանքել ու պաշտպանել

ներքևից եկող նախաձեռնությունը, որը դեմ է առնում հետամնացության արգելքին։

Բայց երբ պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպությունների որոշ ղեկավարների հարցնում են, թե ինչո՞ւ չեն աղատվում թույլ, գործը ձախողող կադրերից, ապա հաճախ է լսվում այսպիսի պատասխան՝ թե, իբր, անհարմար է, թե պետք է զգայուն վերաբերմունք ցուցաբերել դեպի մարդը, այսինքն՝ ակնարկում են մարդասիրությունը։ Իբր թե խոսքը վերաբերում է այն բանին, թե ինչ որ մեկը ուզում է այդպիսի մարդկանց թողնել առանց աշխատանքի, այլ ոչ թե այն բանին, որ նրանց իրենց ուժերին և ունակություններին համապատասխան աշխատանք տրվի։ Այնպես է դուրս գալիս, թե ով պարտիայի ցուցումներին համապատասխան ուզում է թույլ աշխատողներին փոխարինել նորերով, որպեսզի նրանք, ի բարօրություն ժողովրդի, ավելի մեծ չափերով կազմակերպեն նյութական բարիքների արտադրությունը, այնքան էլ մարդասեր չէ։ Բայց իրականում այդ, եթե կարելի է այսպես ասել, սուբյեկտիվ մարդասիրությունը, կադրերի ընտրության սկզբունքի խախտման յուրահատուկ արդարացում է, անսկզբունքայնության և լիբերալիզմի տարրերի դրսևորում։

Չի կարելի հումանիզմը շփոթել լիբերալիզմի հետ, դրանք հակադիր հասկացություններ են։

Նման վերաբերմունքը խանգարում է աշխատանքի զանազան բնագավառների ղեկավարությունը իրականապես ամրապնդելուն, առաջ է բերում անպատասխանատվություն, փոխադարձաբար լռության են մատնվում և ներվում սխալները. աշխատողները դուրս են մնում պարտիական կազմակերպությունների վերահսկողությունից։ Դրա հետ միասին ստեղծվում է կադրերի լճացման տենդենց, խախտվում է պարտիայի այն ցուցման կատարումը, որ հին կադրերին ճիշտ օգտագործելու հետ միասին պետք է համարձակ կերպով ղեկավար պոստերի առաջ քաշել պրակտիկայում իրենց դրսևորած երիտասարդ աշխատողներին, որոնց մեջ պոտենցիալ ուժերի մեծ ռեզերվ է թաքնված և նրանց օգտագործումը խոշոր օգուտ կբերի պարտիայի գործին։

Երիտասարդ աշխատողներին ժամանակին առաջ քաշելու հարցը ներկայումս պրակտիկ մեծ նշանակություն ունի պարտիայի նախագծումներն ակտիվորեն կենսագործելու ասպարեզում, այդ հարցը նաև սկզբունքային նշանակություն ունի պարտիական և պետական ղեկավար կադրերի ռեզերվ պատրաստելու իմաստով։

Դեռևս 1919 թվականին Վ. Ի. Լենինը «Մոսկվայի պարտիական շաբաթի արդյունքները և մեր խնդիրները» հոդվածում խոսելով այդ շաբաթի ժամանակ պարտիայի մեջ մտնողների մասին, գրում էր՝ «...բոլոր պարտիական կազմակերպությունները պետք է առանձնապես մտածեն պարտիայի այս նոր անդամների օգտագործման մասին։ Հարկավոր է ավելի համարձակ կերպով ինչքան կարելի է ավելի բազմազան պետական աշխատանք տալ նրանց, հարկավոր է գործնականորեն նրանց ավելի արագ փորձել» (Երկեր, հատ. 30, էջ 73)։

Ավելի արագ փորձել։ Շա՜տ լավ է ասված։ Բայց այդ դրույթը՝ պրակտիկ աշխատանքում երիտասարդությանը ավելի արագ փորձելը միշտ չէ, որ լիովին է կատարվում մեր մի շարք վայրերում։ Փաստեր կան, երբ երիտասարդ կադրերին ետ են պահում, ժամանակին առաջ չեն քաշում, իսկ երբ անհրաժեշտության դեպքում նրանց մասին հիշում են, ապա տեսնում են, որ նրանք



այնքան էլ երիտասարդ չեն, երիտասարդական թարմությունն արդեն անցել է։

Այսպիսի օրինակների հաճախ կարելի է հանդիպել պարտիայի քաղաքային և շրջանային ապարատներում, աշխատավորների դեպուտատների գործկոմներում, կոմերիտմիության քաղաքային և շրջանային կոմիտեների կազմում։ Հարկ կա՞ ասելու, որ աշխատողների առաջխաղացման նման կասեցումը խանգարում է նրանց ուժեղ կողմերի զարգացմանը, որոնք կորցնելով նորի զգացումը, վարժվում են թերություններին։ Անհրաժեշտ է որոշ ժամանակ ապարատում գործելուց հետո, նրանց հանձնարարել ինքնուրույն աշխատանքի տեղամաս (կոլտնտեսության նախագահ, սովխոզի դիրեկտոր), որտեղ նրանք կարողանան ծավալել իրենց ունակությունները, վարժվել պրակտիկ աշխատանքի։ Այստեղից էլ պետք է ընտրել պարտիայի շրջկոմների քարտուղարներ, սովետական պատասխանատու ղեկավար աշխատողներ։

Կադրերի, հատկապես երիտասարդ կադրերի հետ տարվող անհրաժեշտ բրտնաջան աշխատանքի բացակայությամբ միայն պետք է բացատրել այն փաստը, որ պարտիայի որոշ շրջկոմներ, ինչպես, օրինակ, Ղափանի, Ալավերդու, Բասարգեչարի, Կոտայքի և այլն, վերջին տարիների ընթացքում չեն պատրաստել այնպիսի աշխատողներ, որոնց կարելի լիներ հաշվի առնել պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ռեզերվում՝ նրանց առաջ քաշելու համար։

Մենք պետք է լրջորեն աշխատենք կանանց հետագայում ղեկավար աշխատանքի առաջ քաշելու ասպարեզում։ Պետք է ասել, որ մինչև հիմա արվածը մեծ և կարևոր պետական աշխատանքի սկիզբն է, նկատի ունենալով, որ մենք այդ գործում շատ թերություններ ունենք։ Չի կարելի, օրինակ, նորմալ համարել, երբ ռեսպուբլիկայում բոլոր կոլտնտեսությունների նախագահներից միայն չորսն են կին։ Շրջանների և ռեսպուբլիկայի ենթակայության քաղաքային գործկոմների նախագահների թվում և ոչ մի կին չկա։ Նրանք քիչ են նաև ձեռնարկությունների դիրեկտորների, ռեսպուբլիկական հիմնարկների ղեկավարների, գյուղական և ավանային Սովետների նախագահների թվում։ Պարտիական, սովետական և հասարակական կազմակերպությունները պետք է վճռականապես վերացնեն այդ թերությունները։

Ժամանակակից պայմաններում, երբ սովետական օրգանների դերը հատկապես աճում է, անհրաժեշտ է ավելի մեծ ուշադրություն դարձնել ամենամասսայական կազմակերպությունների՝ գյուղական և ավանային Սովետների նախագահների կադրերի վրա։ Մինչդեռ բազմաթիվ փաստեր կան, երբ այդ պաշտոններում ընտրվում են այնպիսի աշխատողներ, որոնք անցյալ աշխատանքում իրենց դրսևորել են որպես թույլ կադրեր։

Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել նրան, որ պրոֆմիութենական աշխատանքի ուղարկեն այնպիսի մարդկանց, որոնք լավ գիտեն արտադրությունը, բանվորների և ծառայողների աշխատանքի պայմանները, որոնք կարող են մասսաների կազմակերպիչներ լինել։

Նոր կադրերի պատրաստման և առաջքաշման գործում լուրջ արգելք է հանդիսանում, ինչպես նաև գործին վնասում է վերջին ժամանակներս լայն տարածում ստացած համատեղությունների վնասակար պրակտիկան ծառայության գծով և աշխատողների ծանրաբեռնվածությունը հասարակական պարտականություններով։ Առաջ, երբ մենք բարձրորակ մասնագետների սուր պակասություն էինք զգում, նրանց աշխատանքային համատեղությունը հաճախ անհրաժեշտ էր և արդարացի։ Իսկ այժմ, երբ Կոմունիստական պարտիայի

լենինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ բոլոր ռեսպուբլիկաներում, այդ թվում և մեզ մոտ պատրաստված են բազմաթիվ կադրեր աշխատանքի բոլոր տեղամասերի համար, արդեն վերացել են լայն համատեղության օբյեկտիվ պատճառները։ Բայց այդ համատեղությունը շարունակում է մնալ։

Համատեղությունը առանձնապես մասսայական տարածում է ստացել գիտական հիմնարկություններում և բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Միայն Երևան քաղաքում 535 մարդ զբաղեցնում են 1059 հաստիքային միավորների պաշտոններ, այսինքն՝ նրանցից յուրաքանչյուրին ընկնում է 2-ական պաշտոն։ Իսկ մի քանիսները համատեղում են նույնիսկ 3—4 պաշտոններ։ Դրա համար պատասխանատու շատ ղեկավարներ, չգիտես թե ինչու, տարօրինակ դիրք են գրավում, ամեն կերպ առարկում են չարդարացված համատեղությունը վերացնելու դեմ, բերելով զանազան անհամոզեցուցիչ շարժառիթներ, որոնցից գլխավորը համատեղողների իբր թե «անփոխարինելի» լինելն է։

Համատեղությունը կարող է լինել բացառիկ, միայն ծայրահեղ անհրաժեշտության դեպքում։ Համատեղության պրակտիկան վնասում է գիտնականների արդյունավետ գործունեությանը, հասցնում է այն բանին, որ գիտության մի շարք ճյուղերում հիմնական ղեկավար և գիտական պաշտոնները կենտրոնացվում են միևնույն ձեռքում, որն առաջ է բերում առանձին անձանց մենաշնորհ գիտության մեջ, արգելակում է նոր ուժերի հոսքը, երիտասարդ գիտական կադրերի աճը։ Պետք է ստեղծել այնպիսի պայմաններ, որպեսզի մեր գիտնականների ետևից ընթանան նրանց արժանավոր երիտասարդ փոխարինողները։ Դա պետական մեծ կարևորություն ունեցող գործ է։ Եվ կասկած չկա, որ մեր գիտնականները, ինչպես միշտ, ակտիվ մասնակցություն կունենան այդ գործում։

Տարածվել է այն պրակտիկան, երբ արդյունաբերական մի շարք ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և այլ կազմակերպությունների ղեկավարներ ծանրաբեռնվում են հասարակական-քաղաքական աշխատանքներով, որի հետևանքով նրանք բավական ժամանակ զբաղված են զանազան տեսակի խորհրդակցություններում և նիստերում, երկար ժամանակ կտրվում են արտադրությունից, անմիջական գործերի կատարումից։ Դա առաջանում է այն բանի հետևանքով, որ պարտիական և սովետական օրգանները գերադասում են հասարակական պարտականություններով ծանրաբեռնել միևնույն անձանց, փոխանակ ակտիվ հասարակական-քաղաքական աշխատանքի ներգրավելու աշխատողների, հատկապես երիտասարդների լայն շրջանները։

Մեր ռեսպուբլիկան ներկայումս ունի բավականաչափ փորձված որակյալ կադրեր պարտիական ու պետական աշխատանքի բոլոր բնգավառներում, տնտեսական ու կուլտուրական շինարարությունում, գիտության ու արվեստի մեջ։ Մեր պարտիայի ուժն էլ հենց նրանում է, որ հին փորձված կադրերին օգտագործելու հետ միասին, նա իր շարքերը համալրում է նոր, երիտասարդ, առավել գործունակ կադրերով։

Բոլոր պարտիական, սովետական, տնտեսական և հասարակական կազմակերպությունների խնդիրն է դռները լայնորեն բացել պարտիական, պետական, տնտեսական և այլ ղեկավար աշխատանքներում նրանց առաջքաշման



համար, վճռականապես բարելավել կադրերի որակական կազմը կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում։

Կադրերի ճիշտ դաստիարակման գործի համար կարևոր պայմանը նրանց մշտապես բարձր պահանջկոտություն ներկայացնելն է, հանձնարարված գործի համար նրանց մեջ պարտիայի և ժողովրդի առաջ պատասխանատվություն պատվաստելը։

Պարտիական ու պետական աշխատողի պատասխանատվության բարձր զգացումը նրա ստեղծագործական ոգևորության հզոր խթանն է. այն մոբիլիզացնում է աշխատողի ամբողջ հոգեկան ու մտավոր ունակությունը, նրան ստիպում է մշտապես հարստացնել իր գիտելիքները, դրանք քաղելով գրականությունից, առաջավոր փորձից, ժողովրդի փորձից ու իմաստնությունից։

Այդ զգացումը կադրերին ներարկում է լենինյան տիպի աշխատողի բոլոր ազնիվ հատկությունները՝ անսահման նվիրվածություն գործի հանդեպ, պարտիական կիրք, սկզբունքայնություն և ձեռներեցություն աշխատանքում, դրա արդյունքների քննադատական վերլուծություն և անհաշտվողականություն թերությունների ու դրանց կրողների նկատմամբ։

Չի կարելի, սակայն, աչք փակել այն բանի առաջ, որ մեր ոչ բոլոր աշխատողների մոտ է միատեսակ զարգացած պատասխանատվության այդպիսի զգացում, իսկ ոմանք էլ այն կորցրել են կամ առհասարակ չեն էլ ունեցել, այդ պատճառով էլ պարտիական ու սովետական կազմակերպությունների բարձր աշտարակից սայթաքել և ընկել են քաղքենիության ճահիճը, սնանկ են գտնվել ապահովելու պարտիայի առաջադրանքների կատարումը, և վերջ ի վերջո դուրս են մնացել ղեկավար աշխատողների թվից։

Պետք է շեշտել և այն, որ պատասխանատվության բարձր զգացումի բացակայությունը առանձին ղեկավարների հասցնում է ինքնահանգստացման ու բարեհոգության, այն բանին, որ նրանք բավականանում են անցյալ գործունեության ընթացքում ձեռք բերված որոշ հաջողությունների հետ համեմատություններ կատարելով, այն ժամանակ, երբ նրանք պարտիայի ներկա պահանջները անբավարար են կատարում։ ՀԿՊ Կենտկոմի բյուրոն հենց այդ բանի վրա հրավիրեց պարտիայի Բասարգեչարի շրջկոմի և շրջսովետի գործկոմի ուշադրությունը, որոնք վճռական միջոցներ չէին ձեռնարկել հացահատիկային լայն բազա ունեցող անասնաբուծության զարգացման համար։

Կադրերի ճիշտ դաստիարակման մեջ կարևորը աշխատանքում ստեղծագործական մոմենտի պատվաստումն է։

Մենք ունենք շատ աշխատողներ, որոնք ձգտում են ինչ էլ որ լինի կատարել հանձնարարված գործը, աշխատում են հաշվենկատային համարձակությամբ, եռանդուն, կիրառելով աշխատանքի նոր էֆեկտիվ ձևեր ու մեթոդներ։ Նրանք հաջողություններ են ձեռք բերում, բայց և թույլ են տալիս առանձին սխալներ, որովհետև ամեն մի նոր գործ կատարելիս հնարավոր չէ թերություններից ու սխալներից լրիվին զերծ մնալու երաշխիք ունենալ։ Այդ կապակցությամբ տեղին է հիշել Լենինի հայտնի ցուցումն այն մասին, որ «Խելոք է ոչ թե նա, ով սխալներ չի անում։ Այդպիսի մարդիկ չկան և չեն էլ կարող լինել։ Խելոք է նա, ով շատ էական սխալներ չի անում և կարողանում է հեշտությամբ ու արագությամբ ուղղել դրանք» (Երկեր, հատ. 31, էջ 24)։ Այդպիսի աշխատողները որպես կանոն պահանջկոտ են, անհանգստացնում են նրանց, ում պետք է՝ թե կենտրոնում, թե տեղում, նրանք քննադատում են երբեմ

առ երես և նույնիսկ ոմանք նրանց անվանում են չափից դուրս «անհանգիստ» մարդիկ։ Այստեղ մենք դարձյալ անդրադառնանք Վլադիմիր Իլյիչի արտահայտությանը։ Նա ասել է. ես սիրում եմ, երբ մարդիկ համառ և կրքոտ վիճում են, նշանակում է գիտեն, թե ինչ են անում և գիծ ունեն։ Միանգամայն ակներև է, որ այդ ֆորմուլան վերաբերում է գործարար, սկզբունքային մարդկանց, որոնք մեծ հարցեր են դնում, պաշտպանում դրանք, այլ ոչ թե նրանք, ովքեր հաճախ մանր գզվռտոցները փորձում են բարձրացնել մինչև սկզբունքի աստիճանի։

Պարտիական կազմակերպությունները պետք է հատկապես հոգատար և ուշադիր լինեն դեպի այն ձեռներեց աշխատողները, որոնք Լենինի արտահայտությամբ, ունեն գիծ պարտիայի առաջադրանքները կատարելու գործում, պետք է ժամանակին նկատեն և օգնեն նրանց՝ վերացնելու ճեղքվածքներն ու վրիպումները, նրանց մոտ ստեղծելով վստահություն իրենց աշխատանքում։

Բայց մենք ունենք նաև այնպիսի աշխատողներ, որոնք առանձնապես չեն երևում, սուսուփուս աշխատում են, գտնվում են, ինչպես ասում են, մեռյալ տարածության մեջ, քննադատության հետագիծը միշտ չէ, որ նրանց գտնում է։ Նրանք առանձնապես ոչ ոքի չեն անհանգստացնում և ձեռք չեն տալիս, այդ թվում նրանց չեն դիպչում և կենտրոնից։ Ամուր պահպանելով իրենց զբաղեցրած աննշան և աննկատելի տեղերը, նրանք ցանկանում են հանգիստ կյանք, «ոսկե միջինը», նրանք աշխատանքում կառչում են սահմանված սխեմաներից և տրաֆարետներից, խորշում են նորից, կիրառում են աշխատանքի այնպիսի մեթոդներ, որոնք պիտանի են բոլոր ժամանակների համար։ Այդպիսի աշխատողները գերադասում են շրջել միջակության մեջ, միայն թե չսխալվեն։ Նրանք կարծես թե չեն էլ սխալվում, բայց միևնույն ժամանակ աշխատանքում անհրաժեշտ արդյունքներ չեն տալիս մեր նոր պահանջների համապատասխանաբար։ Նշանակում է նրանց ոճը ամբողջությամբ վերցրած սխալ է։ Այլ կերպ ասած, գործում են ըստ «դանդաղ գնաս, Երկար կերթաս» ասացվածքի։ Բայց ժամանակակից կյանքը իր սրընթաց տեմպերով հանդերձ արմատապես փոխել է այդ ասացվածքի բովանդակությունը։ Այժմ ասում են «դանդաղ գնաս, հեռու կմնաս այն տեղից, ուր գնում ես»։

Այդ կապակցությամբ պետք է ասել, որ Ախուրյանի շրջանը հատկապես վերջին ժամանակներս աչքի չի զարնում։ Նկատվում է, որ այն մյուսների հետ միասին սկսում է տեղ գրավել «ոսկե միջինում»։ Պետք է պարտիական քննադատության կրակով այդպիսի դրությունից հանել նրանց, չթողնել, որ նրանք սառչեն, մշտապես ներարկել պահանջկոտության և պատասխանատվության զգացում աշխատանքում։

Կադրերի ճիշտ դաստիարակությունը նշանակում է ժամանակին քննադատել նրանց սխալները, ժամանակին կանխել նրանց այս կամ այն զանցանքները, որպիսին չպետք է իրեն թույլ տա ղեկավար աշխատողը։

Պարտիական մասսաների մեջ կայուն հեղինակություն ստեղծելու կարևոր մոմենտներից մեկը աշխատողների պարտիական օբյեկտիվ պահանջկոտությունն է։ Պարտիական օրգանները պետք է այնպես դաստիարակեն կադրերը, որ նրանցից ոչ մեկը թույլ չտա լիբերալիզմի, ստորադաս աշխատողների, ակտիվի հետ սիրախաղելու դեպքեր։ Աշխատողների թերությունների նկատմամբ ցուցաբերած լիբերալ վերաբերմունքը, կադրերի հետ սիրախաղելը, նրանց նկատմամբ հարկ եղած չափով պահանջկոտ չլինելն անխուսափելիորեն կարող են բացասական հետևանքներ ունենալ, փչացնել կադրերին, քաջալերել շողո-



քորթներին և հաճոյակատարներին։ Այդ բոլորից բացի, դա ղեկավարներին շեղում է ակտիվի առջև աշխատանքի մեծ ու սկզբունքային հարցեր դնելուց։ Ակտիվին պետք է ղեկավարել և ոչ թե սիրախաղալ նրա հետ։

Սկզբունքային բացահայտ քննադատությունը, անաչառությունն ու անաղարտությունը, մարդկանց հետ ունեցած հասարակական հարաբերություններում ճշմարիտ ուղի է գործարար իրադրություն ստեղծելու, ակտիվը համախմբելու, աշխատողների թերություններն ու սխալները արագորեն վերացնելու, աշխատանքի բոլոր տեղամասերում հաջողությունների հասնելու համար։

Կադրերի նկատմամբ պահանջկոտությունը բարձրացնելու կարևոր միջոց է պարտիական որոշումների կատարման վերահսկողությունը։ Որոշ պարտիական օրգաններ և նրանց ղեկավարները միշտ չէ, որ հետևողականորեն դա կենսագործում են։

Բոլոր պարտիական կազմակերպությունները պետք է խիստ կարգ մտցնեն պարտիական որոշումները հետևողական կերպով կատարելու գործում։ Պարտիական օրգանների կարևորագույն խնդիրն է կադրերին դաստիարակել աշխատանքի բոլոր օղակներում պարտիական ու պետական կարգապահության ամենախիստ պահպանման ոգով։

Պետական ու պարտիական ապարատի բոլոր օղակներում կարգապահության է՛լ ավելի ամրապնդումն ու խստագույն պահպանումը կարևորագույն նշանակություն ունի ՍՄԿՊ XXI համագումարի առաջադրած կոմունիստական շինարարության խնդիրների հաջող իրականացման համար։

Սովետական պետության և Կոմունիստական պարտիայի ուժը կայանում է տնտեսության ղեկավարման գործում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքները անշեղորեն պահպանելու մեջ, միութենական ռեսպուբլիկաների շահերի հետ համապետական շահերը ճիշտ զուգակցելու հմտության մեջ։

Միութենական ռեսպուբլիկաների և տեղական օրգանների իրավունքների հետագա ընդարձակումը պետք է սերտորեն կապված լինի տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր հարցերը լուծելիս կադրերի քաղաքական կոփվածությունն ու պետականության զգացումը բարձրացնելու ուղղությամբ պարտիական կազմակերպությունների տարած աշխատանքի հետ։ Անհրաժեշտ է վճռականապես պայքարել պարտիական ու պետական կարգապահության խախտումների դեմ՝ ինչպիսի ձևով էլ որ դրանք հանդես գան։ Հարկավոր է կադրերին դաստիարակել, որպեսզի նրանք առանց բացառության խստորեն պահպանեն պարտիայի, պետության, ժողովրդի շահերը։

Այդ գործում կարևոր դեր կխաղա ընդունված որոշումների կատարման նկատմամբ հասարակական հսկողության ընդլայնումը։ ՍՄԿՊ Կենտկոմի որոշմամբ այդ վերահսկողությանը տրված է կազմակերպական ձև, արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում ստեղծելով պարտիական կազմակերպությունների կողմից ձեռնարկությունների վերահսկողության իրավունքը իրականացնելու հանձնաժողովներ։ Պարտիայի քաղկոմներն ու շրջկոմները պետք է մտածված կերպով կենսագործեն ՍՄԿՊ Կենտկոմի այդ որոշումը։

ՍՄԿՊ Կենտկոմը մշտական հոգատարություն է ցուցաբերում պարտիայի և պետության կադրերի գաղափարական-քաղաքական դաստիարակման նկատ-

մամբ։ Այդ կապակցությամբ կարևոր իրադարձություն է հանդիսանում «ՍՄԿՊ
պատմություն» դասագրքի լույս ընծայումը։

Համոզմունքների անսասան կայունությունը, օրգանական արգահատանք
քաղաքական երկդիմության և երկերեսանիության ամեն մի դրսևորման
նկատմամբ, մարքսիզմ-լենինիզմի մեծ սկզբունքներից ամեն տեսակ նահան-
ջի նկատմամբ անհաշտելիությունը՝ յուրաքանչյուր կոմունիստի, առավել ևս
ղեկավար աշխատողի անկապտելի հատկությունն է։

Հայաստանի ԿՊ Կենտկոմի բյուրոն կազմակերպելով կադրերի հետ տար-
վող աշխատանքը, մշտապես ուշադրություն է դարձնում այն թերություններն
ու սխալները ուղղելու վրա, որոնք կարող են այս կամ այն չափով ազդել
կադրերի գաղափարական դաստիարակման և քաղաքական կոփվածության
վրա։ Այդ տեսակետից լուրջ նշանակություն ունի Կենտկոմի բյուրոյի որոշումը
«Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծերի մա-
սին»։

Պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ մշտա-
պես բարելավել իդեոլոգիական բնագավառի կադրերի ընտրությունը, դա-
սավորումը և դաստիարակումը, միշտ հիշելով, թե ինչպիսի վնաս են հասցը-
նում աշխատավորների, կադրերի դաստիարակմանը թույլ տրված գաղափա-
րական սխալներն ու աղավաղումները։ Խիստ անհրաժեշտ է, որ գաղափա-
րական ճակատի բոլոր տեղամասերում, հատկապես մամուլում, ռադիոյում և
հեռուստատեսությունում աշխատանքի դրվեն այնպիսի ընկերներ, որոնք ու-
նեն բարձր քաղաքական և գործարար հատկանիշներ, խորապես և իր բոլոր
նրբություններով հասկանում են պարտիայի քաղաքականությունը, լավ են
ըմբռնում ազգային հարցը։ Հարկավոր է պարտիական կազմակերպություն-
ների հսկողությունն ուժեղացնել իդեոլոգիական հիմնարկների և կազմակեր-
պությունների գործունեության վրա, նկատի ունենալով, որ այդ տեղամասե-
րում դեռևս աշխատում են առանձին, քաղաքական և թեորիական տեսակետից
նվազ կոփված աշխատողներ, որոնք գտնում են, թե իրենց սուբյեկտիվ սխալ
կարծիքները, մասնավորապես ազգային սահմանափակվածության և սնա-
պարծության տրամադրությունները կարող են արտացոլել մամուլում կամ
մեկ այլ ձևով։ Մինչդեռ դա բացասաբար է ազդում ժողովրդի դաստիարակ-
ման վրա։

Հայաստանի Կոմունիստական պարտիան հետևողականորեն կենսագոր-
ծելով ՍՄԿՊ լենինյան ազգային քաղաքականությունը, մշտապես իր առաջ-
նահերթ պարտականություններից մեկն է համարել կադրերի, ինտելիգենցիա-
յի և բոլոր աշխատավորների դաստիարակումը ժողովուրդների եղբայրական
բարեկամության, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտեր-
նացիոնալիզմի գաղափարների ոգով։ Սովետական Հայաստանում հայերի
հետ միասին ապրում են ադրբեջանականներ, ռուսներ, քրդեր և այլն։ Հայաս-
տանի Կոմպարտիան, նրա Կենտկոմը ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորնե-
րին մշտապես դաստիարակել են և այսուհետև էլ պետք է դաստիարակեն եղ-
բայրական միասնության, համախմբվածության ոգով։ Մերկացնելով մեր
թշնամիների նացիոնալիստական չարամտությունները, պարտիական կազմա-
կերպությունները, մեր բոլոր կադրերը չպետք է հանդուրժեն որևէ նահանջ
լենինյան սկզբունքներից ազգային հարցում։

Պարտիան ուսուցանում է, որ կադրերի բոլշևիկյան գաղափարայնությու-



նը և քաղաքական կոփվածությունը նրանց անձնուրաց նվիրվածությունն է
պարտիայի գործին, նրանց ընդունակությունը՝ ավելի բարձր դասել ժողովր-
դի շահերը։ Բոլշևիկյան գաղափարայնությունը պետք է լինի յուրաքանչյուր
կոմունիստի, առավել ևս ղեկավար աշխատողի արյան մեջ, սրտի մեջ, այդ
գաղափարայնությամբ պետք է որոշվի նրա գործունեության ամեն մի քայլ։
Լինել գաղափարական՝ նշանակում է ակտիվորեն մաքառել պարտիայի գծի
համար, հետևողականորեն կենսագործել պարտիայի որոշումներն ու դիրեկ-
տիվները։

Կադրերին այդ ոգով դաստիարակելը պարտիական կազմակերպություն-
ների կենսական խնդիրն է։

Պատմական յոթնամյակի աշխատանքների մեծ ծրագիրը ռեսպուբլիկայի
պարտիական կազմակերպություններին ներկայացնում է բարձր պահանջներ
կադրերի ընտրության, դասավորման և դաստիարակման գործում։

Այդ պահանջները կայանում են նրանում, որ ղեկավար աշխատանքում
պետք է ունենալ պատրաստված, գործը լավ հասկացող, պարտիայի քաղաքա-
կանությունը խորապես ըմբռնող, գաղափարապես, քաղաքականապես կոփ-
ված, սկզբունքային և նախաձեռնող մարդիկ, այնպիսի մարդիկ, որոնք ունեն
նորի զգացում, հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության
զգացում պարտիայի և ժողովրդի առջև, մարդիկ, որոնք աշխատանքի մեջ
մտցնում են ռևոլյուցիոն եռանդի և բոլշևիկյան կրքոտության ոգի։ Անհրա-
ժեշտ է ավելի համարձակ կերպով առաջ քաշել խոր գիտելիքներ և բավակա-
նաչափ փորձ ունեցող երիտասարդ կադրերին։

Այդ պահանջների կատարման մեջ է ՍՄԿՊ XXI համագումարի կողմից
մեր առջև դրված խնդիրների հաջող իրագործման գրավականը, այն մեծ պար-
տավորությունների կատարման գրավականը, որ իր վրա է վերցրել ռեսպուբ-
լիկայի աշխատավորությունը յոթնամյա պլանով։

---

# ՏԱՐԲԵՐ ՍԻՍՏԵՄՆԵՐԻ ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԴԵՐԸ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԿԱՆԽԵԼՈՒ ԳՈՐԾՈՒՄ

Մ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

*Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանում, երբ խաղաղության և առաջադիմության ուժերը գերազանցում են պատերազմի և ռեակցիայի ուժերին, սոցիալական տարբեր սիստեմների տևական խաղաղ գոյակցությունն իրական փաստ է դարձել։*

*Կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների խաղաղ գոյակցության պրոբլեմը ծագել է միայն իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում։ Վերլուծելով հասարակության արդի զարգացումը, Վ. Ի. Լենինը եկավ հետևյալ եզրակացության՝ քանի որ սոցիալիզմի հաղթանակը սկզբնապես հնարավոր է մեկ, առանձին վերցրած երկրում, կապիտալիզմի շրջապատման պայմաններում, ապա* հնարավոր է և տարբեր սիստեմների խաղաղ գոյակցությունը մի ամբողջ դարաշրջանի ընթացքում։

*Խաղաղ գոյակցության լենինյան գաղափարն իր մեջ պարունակում է երկրների լիակատար իրավահավասարության, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, որևէ խտրականության բացակայության, հասարակական-քաղաքական, տնտեսական, գիտական կյանքի բոլոր բնագավառներում երկրների և ժողովուրդների սերտ համագործակցության սկզբունքները։*

*Խաղաղ գոյակցության գաղափարն իր ակունքներով կապված է ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն շարժման հետ, մասսաներ, որոնք առաջադիմության և խաղաղության կերտողն ու կրողն են։ Եթե ամեն մի հասարակություն մարդկանց բուն իսկ գործունեությունն է, ապա հասարակության պատմությունը ամենից առաջ ժողովրդական մասսաների պատմությունն է, նյութական և կուլտուրական բարիքների արտադրողների պատմությունը, և պատմական իրադարձությունների մասին պետք է դատել* «մասսաների *և դասակարգերի շարժումներով ամբողջովին վերցրած, այլ ոչ թե առանձին անձերի ու խմբիկների տրամադրություններով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 18, էջ 397)։*

*Մարդիկ իրենք են կերտում իրենց պատմությունը։ Իր այս դրույթով մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ պատմական զարգացումը մարդկանց հասարակական-արտադրական պրակտիկ գործունեության արդյունքն է։ Այդպես դնելով հարցը, մարքսիզմ-լենինիզմը երբեք աչքաթող չի արել ինչպես պարտիաների, այնպես և անհատների պատմական գործունեությունը։ Չժխտելով անհատների որոշակի դերը պատմության մեջ, մարքսիզմ-լենինիզմն ամենից վեր է դասում մարդկային պատմությունը կերտողների՝ աշխատավոր մասսաների պատմական նախաձեռնությունը։*



*Պրակտիկայում մարքսիզմ-լենինիզմի այդ դրույթի վառ ապացույցներից մեկն այն է, որ սոցիալիստական ռևոլյուցիայի շնորհիվ առաջ եկած պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն ամբողջ աշխարհով մեկ պաշտոնապես հռչակեց ժողովրդական մասսաների վճռական դերը խաղաղության և սոցիալական պրոգրեսի համար մղվող պայքարում։*

*Մինչև այսօր էլ բուրժուական փիլիսոփաները հասարակական այս կամ այն երևույթը բացատրելիս հերքում են կամ անտեսում ժողովրդական մասսաների ստեղծագործական դերը։ Ժողովուրդը՝ հում նյութ է, իներտ ուժ, ոչնչություն, պատմությունը կերտում են ոչ թե ժողովուրդները, այլ մեծ մարդիկ — ահա նրանց ռեակցիոն և փուչ դրույթները։ Տիրապետող դասակարգերն այդ «տեսություններն» օգտագործում են աշխատավորների ուշադրությունը քաղաքականությունից շեղելու, նրանց դասակարգային գիտակցությունը մթագնելու և մեկ ժողովրդին մյուսի դեմ դուրս բերելու համար։ Տնտեսական և քաղաքական ճնշման, խաբեության և շանտաժի միջոցով ռեակցիոն ուժերին երբեմն հաջողվում է աշխատավորներին գործիք դարձնել իրենց հակաժողովրդական քաղաքականությունն անցկացնելու համար, ագրեսիվ, նվաճողական պատերազմների հրահրման ու կազմակերպման համար։*

*Ի հակադրություն բուրժուական սոցիոլոգների այն պնդումների, թե իբր ագրեսիվ պատերազմներն իրենց ծագմամբ հետևանք են մարդու բիոլոգիական, հոգեկան և այլ հատկությունների, պատմական մատերիալիզմն ապացուցել է, որ պատերազմների բնույթն ու նրանց ծագումը պայմանավորված են հասարակության շահագործողական էությամբ, շահագործող դասակարգերի տիրապետությամբ։*

*Եթե պատերազմները քաղաքականության շարունակությունն են բռնի միջոցներով, ապա դրանք չեն կարող ծագել տարերայնորեն. Նրանք սովորաբար նախապատրաստվում (որի համար ժամանակ և միջոցներ են հարկավոր) և մղվում են այնտեղ ու այն ժամանակ, որտեղ և երբ դրանք համապատասխանում են շահագործող դասակարգերի շահերին։*

*Եթե ստրկատիրական կարգերի ժամանակ պատերազմները մղվում էին նախ և առաջ մեծագույն արտադրողական ուժին՝ ստրուկներին տիրելու նպատակով, ապա ֆեոդալիզմի ժամանակ՝ հողեր զավթելու և հողին ամրացված գյուղացիներին տիրելու համար։ Կապիտալիզմի ժամանակ պատերազմները մղվում են գաղութներ, նոր նպաստավոր շուկաներ զավթելու և գերշահույթի համար։*

*Իմպերիալիզմի դարաշրջանում, երբ արդեն աշխարհը բաժանված է շուկաների և ազդեցության ոլորտների, վերաբաժանման համար մոնոպոլիստական խմբերի, իմպերիալիստական պետությունների միջև մղվող մրցակցային պայքարից ելք որոնելու համար շահագործողական դասակարգերը դիմում են տնտեսական էքսպանսիայի և ագրեսիայի։ Բոլոր անտագոնիստական հասարակությունների համար անխուսափելի պատերազմները իմպերիալիզմի ժամանակ դառնում են նրա մշտական ուղեկիցները և, ընդգրկելով աշխարհի ավելի ու ավելի լայն շրջաններ,* վերածվում համաշխարհային *սպանդի։*

*Իմպերիալիզմը որպես մոնոպոլիստական կապիտալիզմ՝ պատերազմում*

հետապնդում է նախ՝ տնտեսական նպատակ, որի ընթացքում նա ջանում է որքան կարելի է մեծացնել իր կապիտալիստական շահույթները և երկրորդ՝ քաղաքական նպատակ, որի ընթացքում նա ձգտում է ա) աշխատավորների ուշադրությունը շեղել դասակարգային պայքարից, բ) ճնշել ազգային-ազատագրական և հասարակական ամեն մի այլ առաջադիմական շարժում, գ) փորձում է ոչնչացնել պրոլետարիատի դիկտատուրան սոցիալիստական երկրներում կամ կասեցնել նրա զարգացման ընթացքը։ Սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 թվականի նոյեմբերին Մոսկվայում կայացած խորհրդակցության Դեկլարացիայում ասված է. «քանի դեռ պահպանվում է իմպերիալիզմը, կպահպանվի և հողը ագրեսիվ պատերազմների համար։ Վերջին տարիներին ամերիկյան, անգլիական, ֆրանսիական և մյուս իմպերիալիստներն ու նրանց լաքեյները պատերազմ են մղել և մղում են Հնդկաչինում, Ինդոնեզիայում, Կորեայում, Մալայայում, Քենիայում, Գվատեմալայում, Եգիպտոսում, Ալժիրում, Եմենում»։ Սակայն, ինչպես նշել է ՍՄԿԿ XX համագումարը, պատերազմները ճակատագրական անխուսափելիություն չեն, որովհետև ներկայումս խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերն այնքան մեծ են, որ կարող են կանխել համաշխարհային նոր սպանդը՝ ագրեսորներին զսպաշապիկ հագցնելով։ Հետևաբար, հասարակական տարբեր սիստեմ ունեցող երկրները կարող են և պետք է շարունակեն խաղաղ մրցությունը տնտեսության, քաղաքականության և այլ բնագավառներում։

Պատմական փորձը ապացուցում է, որ խաղաղ գոյակցության լենինյան գաղափարը կոնյունկտուրային նկատառումներով և տակտիկական մանյովրի նպատակով չէ որ առաջ է քաշվել։ Սովետական կառավարությունը, նշել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը, իրականում վարում է այնպիսի քաղաքականություն, որի նպատակն է՝ յուրաքանչյուր սովետական մարդու համար, երկրի վրա ապրող յուրաքանչյուր մարդու համար ապահովել հանգիստ գիշեր և բարի օր։ Մենք ուզում ենք, որ պատերազմն ընդմիշտ բացառվի ժողովուրդների կյանքից որպես պետությունների վիճելի հարցերի լուծման միջոց, որպեսզի ամբողջ երկրագնդում հաղթանակի կյանքն ու խաղաղ աշխատանքը։

Խաղաղ գոյակցության գաղափարը բխում է երկու սիստեմների ուժերի փոխհարաբերությունից, հասարակական զարգացման նոր մակարդակից, այն հիմնավորված է գիտականորեն և ապացուցված՝ պրակտիկայում։ Քանի որ հնի և նորի գոյակցությունը հնարավոր է այնքան ժամանակ, որքան մահացողը, հինը դիմադրում է զարգացողի ընթացքին, այդքանով էլ հնարավոր է կապիտալիստական սիստեմի խաղաղ գոյակցությունը սոցիալիստական սիստեմի հետ, որը վերջին հաշվով կհաղթի ամբողջ աշխարհում, իր հետ բերելով համընդհանուր խաղաղություն։

Ներկա դարաշրջանում կան բոլոր օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները, որպեսզի համաշխարհային նոր պատերազմը կանխվի և խաղաղ գոյակցության փաստը վերածվի հասարակական տարբեր սիստեմներ ունեցող երկրների տևական շրջանի խաղաղ մրցության և համագործակցության՝ կյանքի տնտեսական, քաղաքական և կուլտուրական բնագավառներում։

Եթե համաշխարհային երկրորդ պատերազմից առաջ խաղաղ գոյակցությունը հենվում էր միայն մեկ սոցիալիստական երկրի վրա, երբ խաղաղության ուժերը բավականաչափ շատ ու համախմբված չէին և այդ պատճառով



մարդկությանը չհաջողվեց խուսափել համաշխարհային պատերազմից, ապա այժմ համաշխարհային իրադրության արմատական փոփոխման հետևանքով, Սովետական Միության գլխավորած սոցիալիզմի հզոր լագերի առկայության պայմաններում, հնարավոր է կանխել համաշխարհային նոր պատերազմի ծագումը և սոցիալական հակադիր սիստեմների երկրների խաղաղ գոյակցությունը վերածել այդ երկրների ակտիվ մրցության տևական շրջանի։

Աշխարհում տեղի ունեցած արմատական փոփոխությունները, Սովետական Միության մեծագույն հաջողությունները և առաջին հերթին երկրի արհեստական արբանյակների ու միջմոլորակային հրթիռի արձակումը, յոթնամյա պլանի մեծ խնդիրների կենսագործումը ուրախություն են պատճառում ամբողջ աշխարհի խաղաղասեր աշխատավորությանը։ Այդ հաջողություններն ամրապնդում են հավատն այն բանի նկատմամբ, որ երկրները կարող են և այսուհետև էլ պետք է խաղաղ գոյակցեն և որ կարելի է կանխել համաշխարհային նոր պատերազմը, որն ամեն գնով փաստորեն հրահրում են իմպերիալիստները։

Սովետական Միությունը՝ Մեծ Հոկտեմբերի Հայրենիքը, իր գոյությունն սկսելով խաղաղության մասին դեկրետ ազդարարելով, ավելի քան քառասունմեկ տարի է, ինչ հետևողականորեն պայքարում է ժողովուրդների միջև համագործակցություն ու բարեկամություն ամրապնդելու համար, կանգնած է սոցիալական տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության հնարավորության ու անհրաժեշտության դիրքերում։ Սովետական կառավարության այդ լենինյան խաղաղասիրական քաղաքականությունը, նրա բազմաթիվ կոնստրուկտիվ առաջարկությունները, որոնք ուղղված են միջազգային լարվածության մեղմացմանը, ջերմ պաշտպանություն են գտել առաջադեմ մարդկության կողմից։

Հասարակական-քաղաքական տարբեր սիստեմների տևական խաղաղ գոյակցության հնարավորության և անհրաժեշտության կարևորագույն գործոններից մեկն այն է, որ ժամանակակից պայմաններում վիթխարի չափով աճել է ժողովրդական մասսաների ակտիվությունը սոցիալ-տնտեսական, կուլտուրական և հասարակական կյանքի այլ բնագավառներում։ Դրա շնորհիվ կապիտալիստական երկրներում փոխվում է և հասարակական-քաղաքական ուժերի հարաբերակցությունը՝ հօգուտ խաղաղության և ընդդեմ պատերազմի։ Սոցիալիզմն ու կոմունիզմը արագորեն թափանցում են միլիոնավոր մասսաների գիտակցության մեջ, ավելի ու ավելի զարգացնելով նրանց դասակարգային գիտակցությունը և քաղաքական ակտիվությունը։ Կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ աշխատավոր մասսաները ոչ միայն գալիս են այն գիտակցության, որ համընդհանուր կամ բացարձակ խաղաղությունը հնարավոր է միայն սոցիալիստական (կոմունիստական) հասարակության ժամանակ, այլև ակտիվ կերպով պայքարում են խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար։

Պրոգրեսի ու խաղաղության ուժերի վերջնական հաղթանակի նկատմամբ ժողովրդական մասսաներին նոր եռանդ հաղորդեց ՍՄԿԿ XXI համագումարը, որն ամբողջ աշխարհի աշխատավորներին ցույց տվեց, որ Սովետական Միությունը որպես սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման վառ փարոս, հանդիսանում է խաղաղության դրոշակակիրը։ Սոցիալիզմի հաղթանակած երկրի մեծ օրինակը լուսավորում է ժողովուրդների ճանապարհը դեպի նոր կյանք, ուր ամեն ինչ ենթարկված կլինի մարդկության բազմակողմանի բարգավաճ-

մանը և լիովին կբացառվեն ոչ միայն մարդու կողմից մարդու շահագործումը, այլև ամեն տեսակի պատերազմները։

Աշխատավոր մասսաներն ավելի ու ավելի են գալիս այն հաստատ համոզման, որ սոցիալիստական լագերի գոյությունն ու զարգացումը, նրա վճռական, ակտիվ պայքարը խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար՝ ժամանակակից միջազգային հարաբերությունները կայունացնող կարևորագույն գործոնն է և այն վճռական ուժը, որը խանգարում է ագրեսիվ նոր պատերազմների հրահրումը իմպերիալիստների կողմից։ Այդ է պատճառը, որ հաճախ խաղաղության համար ժողովրդական մասսաների պայքարը միահյուսվում է դեմոկրատական ազատությունների, հասարակության արմատական սոցիալական վերափոխությունների համար մղվող պայքարի հետ։ Ժողովրդական մասսաները հզոր ուժ են դառնում խաղաղության համար մղվող պայքարում։ Մերժելով պատերազմը, նրանք չեն ցանկանում գնալ այնպիսի քաղաքականության ետևից, որ նրանց տանում է դեպի պատերազմ։

Եթե առաջ նյութական և հոգևոր բարիքների արտադրողներն իրենց տնտեսական և քաղաքական ճնշվածության պատճառով կարող էին միայն երազել խաղաղության մասին, ապա մեր դարաշրջանում ոչ միայն ուզում, այլև պահանջում են, որ խաղաղություն լինի, ակտիվորեն պայքարում են պատերազմը կանխելու համար։ Եվրոպական երկրների աշխատավորների ու արհմիությունների Բեռլինի կոնֆերենցիայի ընդունած դիմումի մեջ ասված է. եվրոպական երկրների աշխատավորնե՛ր, ստիպենք ամենուր լսելու բանվոր դասակարգի հզոր և միասնական ձայնը։ Միասնությամբ ու պայքարով «ո՛չ» ասենք ուժի քաղաքականությանը և ռազմական մրցավազքին, «ո՛չ» ասենք սառը պատերազմին, որը մոնոպոլիաները կցանկանային հավերժացնել՝ իրենց հրեշավոր շահույթները պահպանելու նպատակով, «ո՛չ» ասենք ատոմային պատերազմին։ Միասնությամբ ու պայքարով մենք կարող ենք և պետք է խափանենք պատերազմի ուժերի մեքենայությունները։

Ի տարբերություն անցյալի, երբ տիրապետող շահագործող դասակարգերը մասսաների թույլ համախմբվածության ու պասիվության պատճառով, ինչպես նաև պատերազմի կանխման նյութական և սոցիալական հնարավորությունների բացակայության պատճառով կարող էին հեշտությամբ պատերազմ հրահրել, ներկա դարաշրջանում, սոցիալական արմատական վերափոխությունների և գիտական մեծագույն հայտնագործությունների դարաշրջանում, ժողովրդական լայն մասսաները խաղաղության համար մղվող պայքարում ավելի ու ավելի են հանդես գալիս որպես միասնական, կազմակերպված ուժ։ Խաղաղության և հասարակության սոցիալական վերափոխությունների համար աշխատավորների պայքարի ավանգարդում ընթանում է ամենաառաջավոր և կենսունակ արդյունաբերական պրոլետարիատը, որի «ձեռքին է գտնվում պատերազմի ու խաղաղության հարցի վճռումը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 15, էջ 254)։ Այն, որ բանվոր դասակարգն իմպերիալիստական պատերազմների անսասան հակառակորդ է և խաղաղության ակտիվ մարտիկ, այդ բանի բացատրությունը պետք է որոնել նրա սոցիալական ներքին բնույթի, նրա հասարակական-քաղաքական դրության և, առաջին հերթին, տնտեսական դրության մեջ։

Իմպերիալիզմի ժամանակ աշխատավորների հարաբերական և բացարձակ



աղքատացման օրենքի գործողությունը գնալով ավելի ու ավելի ուժեղանում է։ Կապիտալիստական առավելագույն շահույթ ստանալու նպատակով խոշոր մոնոպոլիաներն ուժեղացնում են սպառազինությունների մրցավազքը, էկոնոմիկայի ռազմականացումը, որը տանում է ուղղակի դեպի պատերազմ։ Ինչպես երբեք, կապիտալիզմի գոյության արդի պայմաններում մեկ բևեռում հարստության, իսկ մյուս բևեռում աղքատության աճը սրում է հակասությունները և ուժեղացնում դասակարգային պայքարը։ Դա երևում է այն տվյալներից, որ ցույց է տալիս գործադուլային շարժման աճը կապիտալիստական երկրներում։ ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրության հաղորդմամբ, երկրում միայն 1958 թ. եղել է մոտ 3400 գործադուլ, որին մասնակցել են 2200 հազար աշխատավորներ։

Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը միայնակ չէ այն պայքարում, որ նա մղում է քաղաքական ազատությունների և սոցիալական առաջադիմության համար, միջազգային լարվածությունը թուլացնելու, սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, կայուն և դեմոկրատական խաղաղություն հաստատելու համար։ Նա, որպես ամենակազմակերպված և ռևոլյուցիոն դասակարգ, գլխավորում է խաղաղության համար, ընդդեմ պատերազմի ժողովրդական մասսաների կողմից մղվող պայքարը, որին մասնակցում են աշխատավոր գյուղացիությունը, առաջադիմական ինտելիգենցիան և հասարակության տարբեր խավերն ու խմբերը, անկախ իրենց քաղաքական, կրոնական և այլ համոզմունքներից։ Նոր պատերազմ հրահրողների դեմ իրենց պայքարն ավելի են ակտիվացրել արհմիությունները։ Առանձնապես նշանակալից են ինչպես անցյալ տարվա հուլիսի 16—22-ը Ստոկհոլմում զինաթափման և միջազգային համագործակցության կոնֆերենցիան, որին մասնակցեցին հինգ աշխարհամասերի ժողովուրդների տարբեր խավերի ներկայացուցիչներ, այնպես և այս տարվա մայիսին հրավիրված Խաղաղության Համաշխարհային Խորհրդի սեսիան։ Խաղաղության և դեմոկրատիայի համար ժողովուրդների ծավալած հզոր շարժումը կաշկանդող ներգործություն է ունենում Արևմուտքի միլիտարիստական տրամադրություններ ունեցող այն շրջանների վրա, որոնք ձգտում են համաշխարհային նոր պատերազմ հրահրել։

Տարբեր սիստեմների տևական խաղաղ գոյակցության հնարավորության կարևորագույն գործոններից մեկն էլ գաղութային և կախյալ երկրների ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի վերելքն է, որը խորտակում է գաղութակալության վերջին ճիգերը։ Գաղութակալության լուծը թոթափած և անկախության հասած ժողովուրդներն ակտիվորեն պայքարում են իմպերիալիստական տերությունների դեմ, որոնք փորձում են էքսպանսիաների ու պատերազմների միջոցով նրանց զրկել ազատությունից և ազգային անկախությունից։ Արևելքի երկրները դարձել են իմպերիալիզմի կործանման կարևորագույն գործոններից մեկը։ Այդ ժողովուրդներն արդեն համոզվում են, որ տնտեսական և կուլտուրական հետամնացության վերացման և իրենց առաջընթացի համար կարևորագույն նշանակություն ունի միջազգային համագործակցությունը և խաղաղության պահպանումը։

Խաղաղ գոյակցությանը նպաստող գործոն է նաև այն, որ կապիտալիստական երկրները ճարկադրված են տնտեսական, առևտրական և այլ կապեր ունենալ սոցիալիզմի լագերի երկրների հետ՝ փոխադարձորեն շահավետ հիմունքներով։ Սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող երկրների տնտեսա-

կան համագործակցությունը շահավետ է նրանց համար, որովհետև դրանով իսկ նրանք հնարավորություն են ստանում օգտվել այն առավելություններից, որ ստեղծում է աշխատանքի բաժանումը միջազգային մասշտաբով։ Առանց տնտեսական համագործակցության, առանց առևտրի, որոնք ոչ միայն նպաստում են յուրաքանչյուր երկրի ազգային էկոնոմիկայի զարգացմանը, այլև ամրապնդում ժողովուրդների բարեկամությունն ու համագործակցությունը, խաղաղ գոյակցությունն աներևակայելի կլիներ։

Տնտեսական շահերը ստիպում են Արևմուտքի գործարար շրջաններին, որպեսզի նրանք ուղիներ որոնեն սոցիալիստական լագերի երկրների հետ առևտուրն ընդլայնելու, երկու սիստեմների տնտեսական խաղաղ համագործակցությունն ընդունելու համար։ Չնայած ամերիկյան արգելքներին, զգալով տնտեսական, քաղաքական և այլ բնույթի դիսկրիմինացիաների ծանր հետևանքները, Արևմուտքի նորանոր երկրները հատկապես վերջին ժամանակներս առևտրական, կուլտուրական և ուրիշ այլ հարաբերությունների մեջ են մտնում սոցիալիստական երկրների հետ։ Առանձնապես նշանակալի են այս տարվա մայիսին ՍՍՌՄ-ի և Մեծ Բրիտանիայի, ինչպես և Դանիայի ու այլ երկրների հետ կնքված փոխադարձ շահավետ առևտրական համաձայնագրերը։ Սովետական Միությունն այժմ առևտուր է անում աշխարհի ավելի քան 70 երկրների հետ (1946 թ. 40—ի դիմաց)։ Ապրանքափոխանակությունն արտասահմանյան երկրների հետ միայն վերջին 8 տարվա ընթացքում ավելացել է 2,6 անգամ, այդ թվում կապիտալիստական երկրների հետ 2,5 միլիարդ ռուբլուց (1950 թ.) այն հասել է մինչև 9 միլիարդ ռուբլու (1958 թ.)։

Տնտեսության կապիտալիստական սիստեմի հակասությունների էլ ավելի սրման հետևանքով բուրժուական շրջաններում գնալով ավելանում է խաղաղ գոյակցության կողմնակիցների թիվը, որովհետև նրանք չեն կարող հաշվի չառնել կապիտալիստական և սոցիալիստական երկրների միջև միջազգային տնտեսական կապեր ունենալու անհրաժեշտությունը, որը բխում է յուրաքանչյուր երկրի արտադրության զարգացման պահանջներից։

Սակայն չպետք է անտեսել, որ կապիտալիզմի ներքին ագրեսիվ բնույթը ոչ միայն չի փոխվել, այլ, ընդհակառակը, ավելի ռեակցիոն, հակաժողովրդական է դարձել։ Դրա ապացույցն է ամերիկա-անգլիական իմպերիալիստների ագրեսիվ քաղաքականությունն Արաբական Արևելքի և այլ երկրների նկատմամբ։ Հետևապես, մոնոպոլիստական կապիտալիզմի էքսպանսիոնիստական տենդենցը, զավթողական պատերազմներ հրահրելու տենդենցը ամենևին էլ չի թուլացել։ Ելնելով դրանից, ՍՄԿԿ XXI համագումարը նշեց, որ քանի գոյություն ունի իմպերիալիզմի կողմից պատերազմի սանձազերծման հնարավորություն, չի կարելի թերագնահատել ագրեսիայի վտանգը և, հետևապես, սոցիալիստական երկրները, բոլոր խաղաղասեր ուժերը պետք է մեծագույն զգոնություն ցուցաբերեն և ուժեղացնեն պայքարը խաղաղության պահպանման համար։

Բացի վերը նշած գործոններից, մեր դարաշրջանում, երբ անպարտելի ուժ է դարձել համաշխարհային սոցիալիստական սիստեմը, երբ ավելի մեծ չափով է աճում ժողովրդական մասսաների դերը միջազգային պրոբլեմների լուծման գործում, առաջ են գալիս նոր գործոններ, որոնք նույնպես զգալի դեր են խաղում համաշխարհային նոր պատերազմը կանխելու և խաղաղ գոյակցության համար մղվող պայքարում։



Նոր պայմաններում ոչ սոցիալիստական երկրների ժողովուրդները կարող են հասարակության սոցիալիստական վերափոխություն կատարել առանց զինված ընդհարման՝ իր դարն ապրած դասակարգերի հետ, խաղաղ ճանապարհով։ Դա ներգործում է պատերազմի և ագրեսիայի ուժերի վրա, նպաստում խաղաղ գոյակցության գաղափարի հաղթանակին։

Մեր օրերում գնալով ամրապնդվում է այն համոզումը, որ ջերմամիջուկային զենքի գործադրումը մեծագույն հանցագործություն է ամբողջ մարդկության հանդեպ։ Այժմ կան բոլոր ռեալ հնարավորությունները, որպեսզի այն կանխվի. մյուս կողմից՝ եթե այն սկսվի, ժողովրդական մասսաները, խաղաղության հզոր ուժերը զսպաշապիկ կհագցնեն ագրեսորներին, որովհետև ջերմամիջուկային հարձակումը ոչ այնքան պատերազմելու ձև է, որքան մահափորձ՝ մարդկության դեմ։

Գիտակցելով այդ ամբողջ վտանգը, բարի կամքի բոլոր մարդիկ է՛լ ավելի սերտորեն են համախմբվում հակապատերազմական միասնական ճակատում և պահանջում արգելել ու ոչնչացնել մասսայական ոչնչացման զենքը։

***

Այսպիսով, եթե անտագոնիստական հասարակարգերում պատերազմները հարստացման աղբյուր են շահագործող դասակարգերի համար և միջոց ամեն մի պրոգրես ճնշելու, ապա ժամանակակից պայմաններում, սոցիալական սրմատական վերափոխությունների և գիտական մեծագույն հայտնագործությունների դարաշրջանում, մոնոպոլիստական կապիտալիզմը սահմանափակ է իր ավազակային, կործանարար բնույթը դրսևորելու մեջ։ Կապիտալիստական սիստեմի կործանման և սոցիալիստական սիստեմի կազմավորման ու հաղթանակի պայմաններում անհրաժեշտ է դարձել սոցիալական տարբեր սիստեմների խաղաղ գոյակցությունը։ Իսկ պատերազմները, որոնք երբեմն առ երբեմն հրահրվում են իմպերիալիստական ուժերի կողմից, կարող են կանխվել պատերազմի ուժերին գերազանցող խաղաղասիրական ուժերի վճռական ու կազմակերպված գործողությունների շնորհիվ։

ՍՄԿԿ XXI համագումարի գաղափարները, ինչպես արևի շողեր թափանցել են աշխարհի բոլոր անկյունները և մարքսիզմ-լենինիզմի լույսով պայծառացրել խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերի ամրապնդման ուղին։ «Ուժի դիրքից» մարդատյաց քաղաքականությունը պարտություն-պարտության ետևից է կրում, որի ակնառու ապացույցը երկար մանյովրներից հետո արևմտյան դիվանագետների հարկադրական վայրէջքն էր Ժնևում՝ մեծ տերությունների արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությունում քննարկելու Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի և Բեռլինի հարցի խաղաղ լուծման ուղիները։ Սոցիալական տարբեր կարգ ունեցող երկրների պետական գործիչների անհատական կոնտակտները, պառլամենտական և այլ պատվիրակությունների փոխանակումը և կապերի ընդլայնումը մերձեցնում են ժողովուրդներին և դրանով իսկ ուժեղացնում նրանց ակտիվ գործունեությունը խաղաղության և առաջադիմության համար մղվող պայքարում։

Ահա թե ինչու Ն. Ս. Խրուշչովի և Դ. Էյզենհաուերի առաջիկա փոխայցելությունը միջազգային հասարակական շրջաններում դիտվում է որպես պատմական իրադարձություն, որը բարերար ազդեցություն կգործի ոչ միայն

ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների հետագա զարգացման վրա, այլև կծառայի ի բարօրություն ընդհանուր խաղաղության։ Բարի կամքի բոլոր մարդիկ դրանում տեսնում են առողջ մտքի, խաղաղության և խաղաղ գոյակցության քաղաքականության գաղափարների հաղթանակը։ Միայն նրանք են անհանգստացել և տխրել այդ փաստից, ովքեր սարսափում են խաղաղության ամրապնդումից և չեն ցանկանում միջազգային դրության բարելավում։

Խաղաղության և ատոմային կործանարար պատերազմից մարդկության փրկության գործը՝ միջազգային ամենակարևորագույն խնդիրն ու ողջ երկրագնդի հարյուր միլիոնավոր մարդկանց հոգատարության առարկան է։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի, ինչպես նաև սոցիալիստական երկրների պլանների իրականացումը ավելի նպաստավոր պայմաններ կստեղծեն արդիականության այդ հիմնական պրոբլեմի՝ ընդհանուր խաղաղության պահպանման համար։ Միևնույն ժամանակ կաճեն ու կամրապնդվեն ամբողջ աշխարհի խաղաղասեր ուժերը, որոնք կկարողանան իմպերիալիզմի ռազմատենչ շրջաններին ստիպել հրաժարվելու նոր պատերազմներ սանձազերծելու պլաններից։ Ինչպես նշված է ՍՄԿԿ XXI համագումարի բանաձևում, «դեռևս մինչև աշխարհում սոցիալիզմի լիակատար հաղթանակը, երբ աշխարհի մի մասում պահպանվում է կապիտալիզմը, առաջ է գալիս մարդկային հասարակության կյանքից համաշխարհային պատերազմը բացառելու ռեալ հնարավորությունը»։

Այսպիսով, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի հետագա զարգացմանը զուգընթաց՝ իմպերիալիստական զավթողական պատերազմների առաջացման հավանականությունն աստիճանաբար կնվազի, իսկ ապա իսպառ կվերանա՝ այդ պատերազմներին ծնունդ տվող սոցիալ-տնտեսական հիմքերի ոչնչացման հետ մեկտեղ։ Եվ այն ժամանակ վրա կհասնի համընդհանուր խաղաղության դարաշրջանը:

---



# ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ԼՈՒՍԱՎՈՐ ՈՒՂԻՆԵՐՈՎ

Գ. ՓԻՐՑԽԱԼԱՎԱ

Վրաստանի ԿՊ Կենտկոմի «ՍԱՔԱՐԹՎԵԼՈՍ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ» ամսագրի խմբագիր

Վրաստանի արգավանդ դաշտերն ու անտառապատ լեռները, ընդերքի
անթիվ ու բազմազան հարստությունները, արագընթաց գետերն ու հրաշալի
օդը միշտ էլ տեսնողների հիացմունքն են առաջացրել։ Բազմաթիվ այցելուներ
հմայվել են Վրաստանի բնությամբ և գրքերում ու հոդվածներում իրենց հիացմունքն են արտահայտել։ Սակայն առաջ, մինչև սովետական կարգերի հաստատումը, բնության կողմից աննկարագրելի գեղեցկությամբ և հարստությամբ
առատորեն պարգևատրված Վրաստանում աշխատավոր մարդը երբեք չի
ուրախացել, նա այս երկրի փիրուզե երկնքից և զմրուխտյա ցամաքից երբեք
հաճույք չի զգացել։ Հողազրկություն, «ուրիշի մոտ բատրակություն անել»,
կալվածատերերի և կապիտալիստների կողմից վայրագ շահագործում, ցա-
րական աստիճանավորների կողմից քաղաքական և ազգային ճնշում, քաղց
ու տգիտություն,— այսպիսին էր առաջներում գյուղացու ու բանվորի վիճակը։
Բայց ահա 1921 թվականի փետրվարին Հոկտեմբերյան Սոցիալիստա-
կան Մեծ ռևոլյուցիայի ճառագայթները լուսավորեցին նաև Վրաստանը։
Վրաստանի աշխատավորները կոմունիստական պարտիայի ղեկավարու-
թյամբ, ռուս մեծ ժողովրդի և նրա փառապանծ Կարմիր Բանակի եղբայրա-
կան, անշահախնդիր օգնությամբ տապալեցին հայրենիքի դավաճան, ար-
յունարբու մենշևիկների կառավարությունը, կալվածատերերի ու կապիտա-
լիստների տիրապետությունը և Սովետական իշխանություն հաստատեցին։
Վրաց ժողովրդի պատմության մեջ նոր դարաշրջան սկսվեց։

Սովետական իշխանությունը՝ ինչպես Սովետական Միության բոլոր ժողովուրդներին, այնպես էլ վրաց ժողովրդին իսկական ազգային անկախություն բերեց, նրա ստեղծագործական ուժերի և ձիրքի փթթման բոլոր պայմաններն ստեղծեց, քաղաքական, տնտեսական և կուլտուրական ծաղկման լուսավոր և լայնարձակ ուղի հարթեց։

Սովետական իշխանության հաստատումից հետո չորս տասնյակ տարիների ընթացքում, որ պատմության համար խիստ աննշան ժամանակաշրջան է, Վրաստանը ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասային երկրից վերածվեց առաջավոր սոցիալիստական ռեսպուբլիկայի՝ բարձր զարգացած արդյունաբերությամբ և գյուղատնտեսությամբ։ Ծաղկեց ու բարգավաճեց վրաց ժողովրդի ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Վրաց ժողովուրդը լավ գիտե, որ ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերված հաջողությունները հետևանք են լենինյան իմաստուն ազգային քաղաքականության կենսագործման և եղբայրական ազգերի և, առաջին հերթին, ռուս մեծ ազգի անշահախնդիր, եղբայրական օգնության։ Այդ է պատճառը, որ Վրաստանի աշխատավորներն իրենց աչքի լույսի նման պահպանում են Կոմունիստական պարտիայի կոփած Սովետական Միության ազգերի մեծ բարեկամությունը, ըստ ամենայնի ամրապնդում են այն և իրենց լուման մուծում եղբայրական մյուս ազգերի էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի գործում։

## I

Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, որոնք հաստատել է ՍՄԿՊ XXI համագումարը, նախատեսում են ինչպես մեր ամբողջ սոցիալիստական Հայրենիքի, այնպես էլ մեր բոլոր միութենական ռեսպուբլիկաների, նրանց թվում նաև Վրաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի նոր հզոր վերելք և ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարելավում։

Ընթացիկ յոթնամյակում զգալիորեն աճելու են Սովետական Վրաստանի արդյունաբերության բոլոր ճյուղերը, նոր ծաղկման է հասնելու նրա բազմաճյուղ գյուղատնտեսությունը, ուժեղ չափով զարգանալու է գիտությունն ու տեխնիկան, է՛լ ավելի է բարձրանալու ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի մակարդակը։

Յոթնամյա պլանը նախատեսում է ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի աճ՝ 75 տոկոսով։ Կապիտալ ներդրումների ծավալը հասնելու է 16,8 միլիարդ ռուբլու։ Ինչպես ամբողջ Սովետական Միության, այնպես էլ Սովետական Վրաստանի արդյունաբերության նշանակալի աճն ստացվելու է գերազանցապես ծանր ինդուստրիայի զարգացման հիման վրա։ Ռեսպուբլիկայում ամենաարագ տեմպով զարգանալու են այնպիսի ճյուղեր, ինչպիսին են էլեկտրաէներգետիկան, քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկան և սարքաշինությունը։

Յոթնամյակում հատուկ ուշադրություն է դարձվելու էլեկտրաէներգիայի արտադրանքի ավելացմանը։ Սովետական իշխանության հաստատումից հետո Վրաստանում արագ տեմպով զարգանում է էլեկտրաէներգետիկան։ Եթե 1913 թվականին Վրաստանում արտադրվել էր 20 միլիոն կիլովատ ժամ, ապա 1958 թվականին՝ մոտավորապես 3 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, որ 150 անգամ գերազանցում է 1913 թվականի արտադրանքը։ Չնայած այսպիսի աճին, այժմ էլեկտրաարտադրությունը չի բավարարում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքը՝ էլեկտրաէներգիայի նկատմամբ։ Այս պահանջմունքը բավարարելու նպատակով յոթնամյակում գործարկվելու է երկու նոր, հզոր հիդրոէլեկտրակայան՝ Լաջանուրիի և Խրամի երկրորդ հիդրոէլեկտրակայանները։ Բացի դրանից, կառուցվելու և շահագործման է հանձնվելու հզոր ջերմաէլեկտրակայան, որն աշխատելու է Ադրբեջանից ստացվելիք բնական գազով։ Զգալիորեն մեծանալու է Ռուսթավիի ջերմակենտրոնական, Տղվարչելիի և Բաթումիի ջերմաէլեկտրակայանների կարողությունը։ Այս ամենն ապահովելու է էլեկտրաէներգիայի նկատ-



մամբ ռեսպուբլիկայի այժմյան պահանջմունքի բավարարումը։ Յոթնամյակի
երկրորդ կեսում սկսվելու է հզոր հիդրոէլեկտրակայանի շինարարություն՝
Էնգուր·գետի վրա։

Յոթնամյակում արագ տեմպով զարգանալու է ռեսպուբլիկայի քիմիա-
կան արդյունաբերությունը, որի արտադրանքը 1958 թվականի համեմատու-
թյամբ մեծանալու է 6 անգամ։ Քիմիական արդյունաբերությունն այժմ թո-
դարկում և է՛լ ավելի մեծ քանակությամբ թողարկելու է հանքային պարար-
տանյութեր ինչպես Վրաստանի, այնպես էլ եղբայրական ռեսպուբլիկաների
գյուղատնտեսության կարիքների համար։ Զգալիորեն ավելանալու է կալիում
պերմանգանատի թողարկումը, որն օգտագործվելու է տեխնիկական կարիք-
ների և բժշկական պրեպարատների համար։

1959—1965 թվականներին շեշտակիորեն մեծանալու է լիտոպոնի,
պղնձի արջասպի, քարածխային խեժի և բժշկական այնպիսի պրեպարատնե-
րի արտադրությունը, ինչպիսին են՝ կոֆեինը, տանինը և այլն։ Կոֆեինը մի-
միայն Վրաստանում է պատրաստվում։ Այն թողարկում է Բաթումիի կոֆեինի
գործարանը։

Յոթնամյակում շարք են մտնելու նոր ձեռնարկություններ, որոնք է՛լ
ավելի կհարստացնեն և բազմազան կդարձնեն ռեսպուբլիկայի քիմիական
արդյունաբերության արտադրանքը։ Ռուսթավիում ազոտի գործարանին կից
կառուցվելու է կապրոլաքտամների ցեխ։ Նույն տեղում կառուցվելու է կապրո-
նի մանրաթելի հզոր ֆաբրիկա։ Ազոտի գործարանին ավելանալու է նոր ցեխ,
որը տալու է բարձրորակ պարարտանյութ և պլաստմասսաներ։

Արագ տեմպով առաջ են գնալու մեքենաշինությունը, էլեկտրատեխնի-
կան և սարքաշինությունը, որոնց արտադրանքը յոթնամյակում, 1958 թվա-
կանի համեմատությամբ, մեծանալու է 3,2 անգամ։ Դրանց թվում, հատկա-
պես մեծ չափով զարգանալու է էլեկտրատեխնիկական արդյունաբերությու-
նը, որի արտադրանքի թողարկումը մեծանալու է 8 անգամ։ Ռեսպուբլիկա-
յում կառուցվել և կառուցվում են էլեկտրատեխնիկական 21 նոր գործարան-
ներ։ Նրանք թողարկելու են (մի քանիսն արդեն թողարկում են) 100-ից ավե-
լի տեսակի արտադրանք՝ սկսած հանքահորերի համար անհրաժեշտ էլեկ-
տրաքարշերից, ապառ բարձող մեքենաներից և էլեկտրաեռքային սարքերից
և վերջացրած լվացքի մեքենաներով և սեղանի վենտիլյատորներով։

Թբիլիսիի էլեկտրաքարշաշինական գործարանը 1965 թվականին էլեկ-
տրաքարշերի թողարկումը 1958 թվականի համեմատությամբ ավելացնելու
է 12,5 անգամ։ Քութայիսիի ավտոմոբիլային գործարանը թողարկելու է լեռ-
նային պայմաններում աշխատելու համար հարմարեցրած մեքենաներ, յու-
րացնելու է յոթ տոննանոց ավտոքարշակների թողարկումը, զգալիորեն ավե-
լացնելու է մեքենաների և տրակտորների արտադրությունը։ Երկու և կես
անգամ ավելանալու է մետաղահատ հաստոցների թողարկումը, որոնք օգ-
տագործվում են ոչ միայն մեր երկրի ձեռնարկություններում, այլև արտա-
հանվում են արտասահման։ Զգալիորեն մեծանալու է այնպիսի մեքենաների
և սարքերի արտադրությունը, որոնք անհրաժեշտ են սննդի արդյունաբերու-
թյան մեջ՝ թեյի, գինու և պահածոների ձեռնարկություններում ավտոմատիկ
գծեր ստեղծելու համար։ Զգալիորեն ընդլայնվելու է նաև մեքենաների ար-
տադրությունը գյուղատնտեսության այնպիսի հատուկ ճյուղերի համար, ինչ-

պիսին են՝ թեյարուծությունը, այգեգործությունը, ծխախոտագործությունը և այլն։

Վրաց ժողովրդի պարծանքն է Ռուսթավիի մետալուրգիական գործարանը, որը տալիս է պողպատ, չուգուն և այլն։ Յոթնամյակում է՛լ ավելի է ընդլայնվելու գործարանի արտադրությունը։ Մետալուրգիայի արտադրանքն ավելանալու 32 տոկոսով, որին կարելի է հասնել հիմնական ձեռնարկության ներքին ռեզերվներն օգտագործելու հաշվին, արտադրական պրոցեսների հետագա ավտոմատացման հիման վրա։

Զգալիորեն ավելացնելու է արտադրանքի թողարկումը Թբիլիսիի խոշոր ձեռնարկություններից մեկը՝ «Ցենտրոլիտ»-ը, որը պատրաստում է չուգունե և պողպատե ձուլվածքներ ինչպես Վրաստանի, այնպես և եղբայրական ռեսպուբլիկաների մեքենաշինական գործարանների համար։

Յոթնամյակում մեծ ուշադրություն է դարձվելու հանքանյութերի հանույթին, ինչով այնքան հարուստ է Սովետական Վրաստանը։ Այստեղ է գտնվում լավագույն որակի մանգանի աշխարհում խոշորագույն հանքավայրերից մեկը, որի նկատմամբ պահանջմունքը մեր երկրում օրեցօր մեծանում է։ Մանգանի հանույթն ավելանալու է 35 տոկոսով. այս նպատակով շահագործման են հանձնվելու նոր հանքավայրեր։

Վրաստանի լեռնային արդյունաբերությանն ավելանալու է նոր խոշոր բազա։ Մառնեուլիի շրջանում 1961 թվականից ծավալվելու են կապարի-ցինկի և պղնձի հանույթն ու վերամշակումը։ Խիստ ավելանալու է քարածխի հանույթը, որի համար գործարկվելու է երկու նոր հանքավայր, որոնցից յուրաքանչյուրը տալու է այնքան քարածուխ, որքան ստացվել է 1958 թվականին բոլոր հանքավայրերից։

Մեր երկրի քիմիական արդյունաբերության այլ ճյուղերի համար մեծ նշանակություն ունի անդեզիտը, Անդեզիտը լավագույն շինանյութ է։ Դրա հետ մեկտեղ՝ նրա տաշած քարերի մասնիկները, փոշին ու խիպարը օգտագործում են ծծմբաթթվի, ազոտային պարարտանյութերի, սինթետիկ կաուչուկի, սպիրտի և բենզինի արտադրության մեջ, ինչպես նաև կոքսաքիմիայում։ Անդեզիտը, որ արտադրվում է միայն Վրաստանում (Բուկուրիանիում), նույնիսկ արտասահման է արտահանվում։ Յոթնամյակում է՛լ ավելի է մեծանալու անդեզիտի արտադրությունը։ Զգալիորեն ընդլայնվելու է վրացական դիատոմիտի արտադրությունը, որն օգտագործվում է որպես մեկուսիչ սպիտակ ցեմենտ պատրաստող նյութ և ճարպերի ու խմիչքների մաքրման համար։ Ընդլայնվելու է նաև մարմարի արտադրությունը։ Այս երկու արտադրանքը հռչակված են ոչ միայն ՍՍՌՄ-ում, այլև նրա սահմաններից դուրս։

Արագ տեմպով է զարգանալու Վրաստանում շինանյութերի արդյունաբերությունը և շինարարական ինդուստրիան։ Միմիայն հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների և դետալների թողարկումն ավելանալու է համարյա 20 անգամ։ Շարք են մտնելու շինանյութերի նոր ձեռնարկություններ, իսկ գործող ձեռնարկություններն ընդլայնվելու են և ավելի շատ արտադրանք են թողարկելու, քան թողարկում էին մինչև հիմա։

Մեծ խնդիրներ են ծառացած անտառային և թղթի արդյունաբերության առջև, որի արտադրանքը յոթնամյակում մեծանալու է 1,8 անգամ։

Վրացական ՍՍՌ ժողովրդական տնտեսության մեջ նշանակալից տեղ են գրավում սննդի և թեթև արդյունաբերության բազմազան ճյուղերը։ Ընթացիկ



յոթնամյակում զգալի չափով զարգանալու են նշված ճյուղերը, մասնավորապես թեյի կանաչ տերևի և խաղողի վերամշակումը։

Ինչպես հայտնի է, Վրաստանը Սովետական Միության թեյարուծության հիմնական բազան է։ Նա տալիս է մեր երկրում արտադրվող թեյի 97 տոկոսը։ Սակայն, թեյի այն քանակը, որ ներկայումս մթերվում է Սովետական Միությունում, չի բավարարում նրա բնակչության պահանջմունքը։ Թեյի որոշ քանակությունը մեր երկիրը ներմուծում է արտասահմանից։ Այժմ Վրաստանի առջև խիստ մեծ և պատվավոր խնդիր է դրված՝ ընթացիկ յոթնամյակում գոնե հիմնականում բավարարել Սովետական Միության պահանջմունքը թեյի նկատմամբ։ Այդ պատճառով անհրաժեշտ կլինի զարկ տալ թեյարուծության և թեյի արդյունաբերության հզոր զարգացմանը։ Յոթնամյակում ավելանալու է ինչպես թեյի տերևի բերքատվությունը, այնպես էլ նրա վերամշակումը, որի համար կառուցվելու են 15 նոր ֆաբրիկա։

Յոթնամյակում զգալիորեն ավելանում է խաղողի վերամշակումը և մրգի, բանջարեղենի-ձկնեղենի բարձրորակ պահածոների արտադրությունը։ Մսի և մսի արտադրանքի թողարկումը մեծանալու է 1,7 անգամ, շաքարավազի արտադրությունը հասնելու է 25 հազար տոննայի։

Ավելանալու է տնային կարասիների արտադրությունը, որի պահանջմունքն անշեղորեն մեծանում է։ 1960 թվականին թողարկվելու է 250 միլիոն ռուբլու կահույք, մինչդեռ 1958 թվականին թողարկվել էր 114 միլիոն ռուբլու։

Յոթնամյակում արագորեն զարգանալու է մանածագործական արդյունաբերությունը։ Զգալիորեն ավելանալու է արհեստական և սինթետիկ մանրաթելից գործվածքների և տրիկոտաժի թողարկումը։ Շարք է մտնելու Գորիի բամբակեղենի կոմբինատի երկրորդ հերթը, որը կոմբինատի արտադրանքը տարեկան ավելացնելու է 30 միլիոն մետր գործվածքով։ Թբիլիսիում կկառուցվի մետաքսագործական նոր ֆաբրիկա։ Շարք են մտնելու նաև մաքուր բրդեղենի և տրիկոտաժային ֆաբրիկաներ։ Ընդհանրապես ռեսպուբլիկայում մետաքսի գործվածքների արտադրությունը կմեծանա 1,6 անգամ, բրդեղենինը՝ 1,7 անգամ, բամբակեղենինը՝ 1,9 անգամ։ Զգալիորեն զարգանալու են նաև կաշվե կոշկեղենի թողարկումը և թեթև արդյունաբերության այլ ճյուղեր։

Յոթնամյա պլանը նախատեսում է ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի նոր վերելք՝ առնվազն 1,5—2 անգամ, և առաջին հերթին՝ թեյարուծության, խաղողագործության և պտղաբուծության։ Նախատեսվում է նաև անասնաբուծության արագ զարգացում։ Ըստ պլանի՝ յոթնամյակի վերջում գյուղատնտեսության արտադրանքի առանձին տեսակների արտադրությունը հասցվելու է հետևյալ քանակի — հացահատիկինը՝ մինչև 1.211 հազար տոննա՝ 1958 թ. արտադրված 939 հազար տոննայի փոխարեն. մսինը (սպանդանոցային քաշով)՝ մինչև 150 հազար տոննա՝ 99 հազար տոննայի փոխարեն. կաթինը՝ մինչև 975 հազար տոննա՝ 502 հազար տոննայի փոխարեն. ձվինը՝ մինչև 497 միլիոն հատ՝ 299 միլիոնի փոխարեն. բանջարեղենինը՝ մինչև 5.510 տոննա՝ 4.430 տոննայի փոխարեն. ծխախոտինը՝ մինչև 20 հազար տոննա՝ 1958 թվականին արտադրված 16 հազար տոննայի փոխարեն։ 1965 թվականին թեյի կանաչ տերևի մթերումը հասնելու է 200 հազար տոննայի, զգալիորեն մեծանալու է շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի և այլ կուլտուրաների արտադրությունը։

Վրացական գինին ու միրգը հայտնի են ամբողջ Սովետական Միությունում։ Գինին արտահանվում է մեր երկրի սահմաններից էլ դուրս։ 1959—1965 թվականներին զգալի չափով զարգանալու են այգեգործությունը և պտղաբուծությունը։ Նախատեսված է կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում 78 հազար հեկտար տարածությամբ պտղատու ծառերի և խաղողի նոր այգիներ տնկել։ Յոթնամյակի վերջում խաղողի արտադրությունը հասնելու է 330 հազար տոննայի, որը 1958 թվականի մթերածից երկու անգամ ավելի է։ Կրկնակի անգամ ավելանալու է նաև մրգի մթերումը։ Պլանով նախատեսվում է մեծացնել ցիտրուսների տնկիների տարածությունը։

Վրաստանի գյուղատնտեսությունը բոլոր պայմաններն ունի այն բանի համար, որ հաջողությամբ կատարի յոթնամյա պլանով նախատեսված պարտավորությունները։ Նա ունի հրաշալի կադրեր, լավ մասնագետներ, շնորհալի և փորձված կազմակերպիչներ։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը հագեցված է ժամանակակից հզոր տեխնիկայով։ 1959—1965 թվականներին նա կստանա ավելի մեծ քանակով հացահատիկ հավաքող կոմբայններ, տրակտորներ, ավտոմոբիլներ և այլ մեքենաներ ու սարքեր։ Յոթնամյակում ավարտվելու է բոլոր կոլտնտեսությունների էլեկտրիֆիկացումը, որը գյուղատնտեսության աշխատողներին հնարավորություն կտա զգալիորեն ավելացնելու գյուղատնտեսական արտադրանքը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը։

Յոթնամյակում է՛լ ավելի արագ տեմպով կզարգանա բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարությունը։ Բնակարանային և կոմունալ շինարարության համար միմիայն պետական միջոցներից ռեսպուբլիկայում ծախսվելու է 4 միլիարդ 114 միլիոն ռուբլի, որը 1 միլիարդ 564 միլիոն ռուբլով գերազանցում է այն գումարը, որ ծախսվել էր անցած յոթնամյակի ընթացքում։ Լայն թափ է ստանալու նաև դպրոցների, մասնավորապես, գիշերօթիկ դպրոցների, հիվանդանոցների և բժշկական այլ հիմնարկների և կուլտուր-լուսավորական հիմնարկների շինարարությունը։ Խոշոր աշխատանքներ են իրականացվելու քաղաքների, ավանների և գյուղերի հետագա բարեկարգման ուղղությամբ։

Յոթնամյակում հսկայական քայլերով կզարգանան Վրաստանի գիտությունը և տեխնիկան, նոր ծաղկում կապրեն գրականությունն ու արվեստը, կուլտուրայի բոլոր ճյուղերը։

## II

Վրաստանի աշխատավորները, ոգեշնչված ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումներով, հայրենասիրական մեծ վերելքով լծվել են յոթնամյա պլանը գերակատարելու համար ծավալված սոցիալիստական մրցմանը, վերցրել են բարձր պարտավորություններ և աշխատանքային սխրագործության լավագույն օրինակներ են ցույց տալիս։

Պարտիայի XXI համագումարի մշակած կոմունիստական շինարարության մեծ ծրագրի իրականացման համար մղվող անձնվեր պայքարի մասին է խոսում այն փաստը, որ Վրաստանի արդյունաբերության աշխատողներն արդյունաբերական արտադրանքի արտադրության ընթացիկ տարվա վեց ամսվա պլանը կատարել են 104,2 տոկոսով։



Այժմ արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները միայն պլանի կատարմամբ այլևս չեն բավարարվում։ Նրանք նոր նախաձեռնություն են ցուցաբերում՝ գործողության մեջ են դնում ձեռնարկության ներքին ռեզերվները, որոնք ապահովում են արտադրանքի թողարկման ավելացում, աշխատանքի արտադրողականության բարձրացում և արտադրանքի ինքնարժեքի իջեցում։

Քութայիսիի Գ. Կ. Օրջոնիկիձեի անվան ավտոմոբիլային գործարանում մի հիանալի նախաձեռնություն է առաջ եկել՝ արտապլանային խնայողության հիման վրա ստեղծվում է յոթնամյակի ֆոնդ։ Ավտոշինարարները հանձն առան՝ հումքի, վառելիքի, էլեկտրաէներգիայի, ձեռնարկության հիմնական և օժանդակ միջոցների տնտեսմամբ ընթացիկ տարում յոթնամյակի ֆոնդը մուծել 7 միլիոն ռուբլի։ Ավտոգործարանի աշխատավորները կոչ արեցին Վրացական ՍՍՌ արդյունաբերության, տրանսպորտի և շինարարական բոլոր բանվորներին, ինժեներներին, տեխնիկներին և ծառայողներին՝ յոթնամյակի ֆոնդեր ստեղծել։ Վրաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հավանությանն արժանացած ավտոմոբիլային գործարանի այս նախաձեռնությանը լայնորեն արձագանքեցին ռեսպուբլիկայի ձեռնարկությունների և շինարարությունների կոլեկտիվները։ Քութայիսիի ավտոշինարարների նշված նախաձեռնությունը «Պրավդա» թերթը համարեց որպես Վրաստանի բանվոր դասակարգի մեծագույն նախաձեռնությունը։ Այժմ ռեսպուբլիկայի արդյունաբերության, տրանսպորտի և շինարարական բոլոր կոլեկտիվները պայքարում են արտապլանային խնայողության և յոթնամյակի ֆոնդի օգտին իրենց լուման մուծելու համար։ Նախնական տվյալներով առ մեկը հուլիսի՝ յոթնամյակի ֆոնդն է մուծված 50 միլիոն ռուբլի։

Սովետական Վրաստանի ձեռնարկությունների կոլեկտիվները պայքարում են արտադրության ներքին ռեզերվների հայտնաբերման և օգտագործման համար։ Այս պայքարի պայծառ օրինակներից մեկը ցույց տվին Կասպիի Ի. Վ. Ստալինի անվան ցեմենտի գործարանի բանվորները, ինժեներները և տեխնիկները։ Արտադրության ներքին ռեզերվների օգտագործմամբ, յոթ ամսում, նվազագույն ծախսերով նրանք կառուցել են պտտվող չորրորդ վառարանը, որը ամբողջ գործարանի կարողությունն ավելացնելու է 30 տոկոսով։ Այս վառարանի գործարկմամբ Կասպիի ցեմենտագործները պետական միջոցներից 11 միլիոն ռուբլի տնտեսեցին և արժեքավոր ավանդ ներդրին ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա ծաղկման գործում։

Քութայիսիի ավտոմոբիլագործների և Կասպիի ցեմենտագործների աշխատանքային սխրագործության այս օրինակները բացառություն չեն։ Արտադրական անօրինակ խանդավառություն է տիրում ռեսպուբլիկայի արդյունաբերական այլ ձեռնարկությունների կոլեկտիվներում։

Ինչպես սովետական ամբողջ ժողովրդի, այնպես և Վրաստանի աշխատավորների մեջ քաղաքական և ստեղծագործական ակտիվության նոր հզոր վերելք առաջացրին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի որոշումները, որտեղ տրված է մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում տեխնիկական առաջադիմության իրականացման հոյակապ ծրագիրը։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության և տրանսպորտի աշխատողները, որոնք ոգեշնչված են Հունիսյան պլենումի որոշումներով, այդ պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովի արտասանած ճառով և Սովետական Միության բոլոր աշխա-

տավորներին ուղղված պլենումի Դիմումով, այժմ անխոնջ կերպով պայքարում են արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման համար, արտադրության մեջ ակտիվ կերպով արմատավորում են առաջավոր տեխնիկան ու փորձը։

Յոթնամյա պլանը հաջողությամբ կատարելու համար մղվող պայքարում Վրացական ՍՍՌ արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներից ետ չեն մնում նաև գյուղատնտեսության աշխատողները, որոնք աշխատում են մեծագույն ջանասիրությամբ, որպեսզի իրենց արժանի լուման մուծեն մթերքի և հումքի նկատմամբ մեր սոցիալիստական Հայրենիքի պահանջմունքը բավարարելու գործում։

Անկարելի է չհիշատակել ռեսպուբլիկայի թեյագործների աշխատանքային հաջողությունները։ Թեյագործները պարտավորություն վերցրին՝ տարեցտարի ավելացնելու որակյալ թեյի տերևի բերքը և 1965 թվականին Սովետական Միությունը լիովին ապահովելու հայրենական թեյով։ Ընթացիկ տարում՝ յոթնամյակի առաջին տարում, նրանք հավաքելու են 140 հազար տոննա որակյալ թեյի տերև կամ 7 հազար տոննայով պլանից ավելի։

Վրաստանի ցիտրուսագործները պարտավորվել են ընթացիկ տարում հավաքել և պետությանը հանձնել ավելի քան 560 միլիոն ցիտրուսային պտուղ, իսկ 1965 թվականին՝ մեկ միլիարդից ավելի։ Նրանք այժմ աշխատում են հանձն առած պարտավորություններն ի կատար ածելու համար։

Մեր երկրի հանրային անասնաբուծության նոր հզոր վերելքի համար մղվող պայքարում եռանդուն կերպով մասնակցում են ռեսպուբլիկայի անասնաբույծները։ Նրանք ավելացնում են անասունների գլխաքանակը, բարելավում նրանց ցեղայնությունը, ամրապնդում կերային բազան, բարելավում անասունների նկատմամբ տարվող խնամքը։ Անասնաբուծական ֆերմաներում լայնորեն իրականացվում է աշխատատար պրոցեսների մեքենայացումը և այլն։ Անասնաբույծների անձնուրաց աշխատանքի մասին է խոսում այն փաստը, որ անասնաբուծական մթերքների մթերման կիսամյա պլանը ռեսպուբլիկան կատարել է — մսինը՝ 112,5 տոկոսով, կաթինը՝ 111,5, ձվինը՝ 103,7, բրդինը՝ 108,8 տոկոսով։

Սովետական Միության աշխատավորները կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, հաջողությամբ կենսագործում են ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները, հաստատուն քայլերով ընթանում են առաջ և ստեղծում ամենալավագույն և ամենաարդարացի հասարակությունը՝ կոմունիստական հասարակությունը։ Սովետական Միության այլ ժողովուրդների հետ միասին, կոմունիզմի շինարարության գործում իր արժանի լուման է մուծում նաև վրաց ժողովուրդը, որը խորապես գիտակցում է, որ կոմունիզմի կառուցման մեծ նպատակի համար պետք է լավ աշխատել։

---

# ԽՆԱՄՔՈՎ ԵՎ ՃԻՇՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՖՈՆԴԸ

Բ. ՄԻՐՁՈՅԱՆ

Բնակարանային պրոբլեմը մարդկության հուզող ամենասուր սոցիալական պրոբլեմներից մեկն է։ Վերցնենք թեկուզ Ամերիկայի Միացյալ Նահանգները։ Դա աշխարհիս ամենահարուստ ու զարգացած կապիտալիստական երկիրն է, որը չի տեսել ավերիչ պատերազմներ։ Եվ չնայած մեկ շնչին ընկնող բնակելի տարածությամբ ԱՄՆ-ն անցել են մյուս երկրներից, բնակարանային հարցն այստեղ մնում է չլուծված։ «Ինչպես ասված է ԱՄՆ-ի դեմոկրատական պարտիայի Կոմիտեի «փաստերի գրքում», 15 միլիոն մարդ ապրում է հետնախորշերում, 13 միլիոն տներ (բոլոր տների ընդհանուր թվի մեկ քառորդը) չեն համապատասխանում բնակելի տներին ներկայացվող պահանջներին, քաղաքների յոթ միլիոն տներ, լրիվ խարխուլ լինելու հետևանքով, բնակության համար պիտանի չեն» (Ն. Ս. Խրուշչով, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, զեկուցում ՍՄԿՊ XXI համագումարում, Հայպետհրատ, 1959 թ., էջ 63—64)։ Աշխատավորության բնակարանային դրությունը մխիթարական չէ նաև մյուս կապիտալիստական երկրներում։ Ամենուրեք «բնակարանային կարիքը,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— բարձր բնակարանավարձը, որն ընտանիքի բյուջեի 25—30 տոկոսն է կազմում, կրնկակոխ հետևում են կապիտալիստական աշխարհի աշխատավորներին»։

Սովետական Միության աշխատավորության բնակարանային պայմանների բարելավումը միշտ էլ գտնվել է պարտիայի և կառավարության ուշադրության կենտրոնում։ Բնակարանավարձը մեր երկրում միջին հաշվով կազմում է ընտանիքի բյուջեի 4—5 տոկոսը։ Մեր քաղաքներին խորթ են կապիտալիստական քաղաքներին հատուկ հակասությունները և երևույթները։

Բայց այդ դեռ չի նշանակում, որ մեզ մոտ լուծված է բնակարանային պրոբլեմը։ «Մենք գիտենք,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— որ մեզանում զգացվում է բնակարանային սուր պակաս։ Բնակարանի պակասի պատճառները հասկանալի են։ Նախ՝ Սովետական իշխանությունը հին կարգից ժառանգություն ստացավ աներևակայելի բնակարանային կարիք։ Երկրորդ՝ Սովետական իշխանության տարիներին քաղաքների և բանվորական ավանների բնակչությունն աճեց ավելի քան երեք ու կես անգամ։ Երրորդ՝ նախապատերազմյան տարիներին մենք ստիպված էինք խնայել ամեն ինչում, այդ թվում նաև բնակարանների շինարարության մեջ, յուրաքանչյուր կոպեկը օգտագործելով ծանր ինդուստրիա ստեղծելու համար։ Չորրորդ՝ Սովետական Միության բնակարանային ֆոնդին հսկայական վնաս պատճառեց պատե-

րազմը, որն անօթևան թողեց մոտ 25 միլիոն մարդ» (Ն. Ս. Խրուշչով, զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակին նվիրված հոբելյանական սեսիայում)։

Այժմ, երբ մեր երկիրը թևակոխել է կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, բնակարանային պրոբլեմի լուծումը ստանում է համաժողովրդական առաջնահերթ նշանակություն։ Ահա թե ինչու Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը, «ՍՍՌՄ-ում բնակարանային շինարարության զարգացման մասին» հայտնի որոշման մեջ խնդիր դրեցին երկրում բնակարանների պակասը վերացնել 10—12 տարում։

Արձանագրելով այդ որոշման հաջող իրագործման ընթացքը, պարտիայի XXI արտահերթ համագումարը նախագծեց 1959-1965 թվականներին բանվոր-ծառայողների համար կառուցել 15 միլիոն բնակարան, իսկ կոլտնտեսականների ու գյուղական ինտելիգենցիայի համար՝ 7 միլիոն բնակելի տուն։ Քաղաքներում ու գյուղական վայրերում կկառուցվեն մեկ ընտանիքի բնակեցման համար նախատեսված խնայողաբեր բարեկարգ բնակարաններ։ Չնայած քաղաքային բնակչության առավել աճին, յոթնամյակի վերջում զգալիորեն կավելանա նաև մեկ շնչին ընկնող բնակելի տարածությունը և ընդհուպ կմոտենա սանիտարական նորմայով նախատեսված տարածությանը։ Միաժամանակ խնդիր է դրվում բնակելի տարածությունը բաշխելիս անցնել յուրաքանչյուր ընտանիքին առանձին բնակարան տալու սկզբունքին։

Պարտիայի XXI համագումարի առաջադրած բնակարանային շինարարության հոյակապ պլանի իրագործումով արմատապես կբարելավվեն քաղաքային ու գյուղական բնակչության բնակարանային պայմանները և մեր երկրում հիմնականում կվերացվի բնակարանային պակասը։

Այդ խնդիրն իրականացնելու նպատակով յոթնամյակում մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների 1/4 մասը, որը կազմում է ավելի քան 3 միլիարդ ռուբլի, տրամադրվում է բնակարանային շինարարությանը։ Նախատեսվում է ռեսպուբլիկայի քաղաքներում ու ավաններում կառուցել 81.000 բնակարան՝ 2,3 միլիոն քմ. բնակելի տարածությամբ։ Բացի այդ, բնակչության միջոցների հաշվին պետական վարկի օգնությամբ շահագործման կհանձնվեն մոտ 1500 հազար քմ. բնակելի տարածությամբ տներ։ Այդ բոլորը հնարավորություն կտան քաղաքային բնակչության մեկ շնչին ընկնող բնակելի տարածությունը յոթ տարվա ընթացքում ավելացնել մոտ 55 տոկոսով, 4,6 քառակուսի մետրը հասցնելով 7,1 քառակուսի մետրի։

Առանձնահատուկ ուշադրություն է դարձվում Երևանի բնակարանային շինարարության և բնակարանային կարիքը վերացնելու հարցերին։ Գաղտնիք չէ, որ մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաքում զգացվում է բնակարանային լուրջ պակաս։ Այստեղ բնակչության մեկ շնչին 10 տոկոսով ավելի քիչ բնակելի տարածություն է ընկնում, քան մյուս քաղաքներում և ավաններում, իսկ ռեսպուբլիկայի քաղաքային բնակչության 58 տոկոսը կենտրոնացած է Երևանում։ Այդ պատճառով էլ բնակարանային շինարարությանը հատկացվող միջոցների գրեթե 2/3 մասը տրամադրվում է մայրաքաղաքին։ Անհատական բնակարանային շինարարության հետ միասին նախատեսվում է Երևանում շահագործման հանձնել մոտ 2 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն



կամ գրեթե այնքան, որքան կազմում է քաղաքի ներկայիս բնակարանային ֆոնդը։ Նպատակ է դրվում բնակչության մեկ շնչին ընկնող բնակելի տարածությունը բարձրացնել մոտ 60 տոկոսով։

Սակայն պետք է նշել, որ այդ լուրջ ու դժվարին խնդրի լուծումը կախված է ոչ միայն բնակարանային շինարարության պլանի իրականացումից, այլև մի շարք այլ գործոններից, որոնց թվում անչափ կարևոր նշանակություն ունեն քաղաքի բնակչության աճը և բնակարանների բաշխումը կարգավորելու հարցերը։

Խոշոր քաղաքներում, այդ թվում նաև Երևանում բնակարանային կարիքի վերացումը սերտորեն կապված է բնակչության աճի հետ։ Ընդամենը 33 տարվա ընթացքում (1926—1959 թ. թ.) Երևանի բնակչությունն աճել է 8 անգամ, այն դեպքում, երբ ռեսպուբլիկայի բնակչությունն (առանց Երևանի) աճել է միայն 43 տոկոսով։ Քաղաքի բուռն զարգացումն իր հերթին ստիպել է մի քանի անգամ վերնայել Երևանի գլխավոր հատակագիծը, որի հետևանքով գերազանցապես քանդվել են կենտրոնական փողոցների առաջին պլանի վրա գտնվող, դեռևս բնակության համար պիտանի տները՝ նոր հրապարակներ, փողոցներ բացելու և մեծ մասամբ հասարակական նշանակություն ունեցող շենքեր կառուցելու նպատակով։ Ահա թե ինչու, չնայած բնակարանային շինարարության բավականին լայն ծավալին, քաղաքի բնակարանային ֆոնդն անցած 33 տարիներին աճել է ավելի դանդաղ, քան բնակչությունը (7:8 հարաբերությամբ)։

Երևանում, ինչպես նաև բոլոր խոշոր քաղաքներում բնակարանային պրոբլեմն ավելի արագ լուծելու համար, պարտիան և կառավարությունը խնդիր են դրել դադարեցնել այդպիսի քաղաքների բնակչության մեխանիկական աճը և բնակարանային շինարարությունն իրականացնել ազատ տարածությունների վրա։ Պարտիայի XX համագումարը միաժամանակ խնդիր դրեց ապակենտրոնացնել խոշորագույն քաղաքների բնակչությունը, արտադրողական ուժերի ավելի ռացիոնալ տեղաբաշխման և այդպիսի քաղաքների շուրջը փոքրիկ բարեկարգ քաղաքներ կառուցելու միջոցով։ Պարտիայի այդ գծի հետևողական իրականացման հետևանքով խոշոր քաղաքների բնակչությունը վերջին ժամանակներս սկսել է աճել ավելի դանդաղ, քան քաղաքային բնակչությունն ընդհանրապես։ Օրինակ, վերջին երեք տարում 500 հազարից ավելի բնակչություն ունեցող 25 խոշորագույն քաղաքներում բնակչությունն ավելացել է 9 տոկոսով, իսկ մնացած քաղաքներում և քաղաքատիպ վայրերում՝ 17 տոկոսով։ Մինչդեռ Երևանի բնակչությունը 3 տարում ավելացել է մոտ 33 տոկոսով և այժմ կազմում է 509 հազար։ Եթե նույնիսկ մի կողմ թողնենք քաղաքի մեջ նոր բնակավայրերի ընդգրկման փաստը, Երևանի բնակչությունը շարունակում է աճել նաև շրջաններից եկող մարդկանց հաշվին։ Իսկ դրա համար չկա ոչ մի տնտեսական անհրաժեշտություն, մանավանդ, որ ռեսպուբլիկայի բնակչության գրեթե 1/3 մասն արդեն կենտրոնացել է նրա մայրաքաղաքում։

Դրա հետ միասին բնակարանային շինարարությունը դեռևս լրիվին չի իրականացվում ազատ տարածությունների վրա, որի հետևանքով վերջին երկու տարում քաղաքում շահագործման հանձնված մոտ 200 հազար քառակուսի մետր բնակելի տարածության 1/3—1/4 մասը տրամադրվել է բնակարանային ֆոնդի կորուստը ծածկելուն։

Ստացվում է, որ նույնիսկ բնակարանային շինարարության ներկայիս ավելի լայն ծավալման պայմաններում մեկ շնչին ընկնող բնակելի տարածությունը մնում է նույնը կամ աճում է շատ դանդաղ (վերջին երեք տարում այն ավելացել է ոչ ավելի, քան 0,2 քառակուսի մետրով)։

Հետևապես պարտիայի և կառավարության նշած ժամկետներում Երևանում բնակարանային կարիքը վերացնելու համար անհրաժեշտ է ճիշտ կերպով լուծել բնակչության աճի կարգավորման, քաղաքի պլանավորման, նրա հողերի ռացիոնալ օգտագործման և բնակարանային շինարարության տեղադրման հարցերը։ Յոթնամյակում ռեսպուբլիկայում արտադրողական ուժերի ավելի ռացիոնալ ու համաչափ տեղաբաշխումը, անշուշտ, կնպաստի մայրաքաղաքի բնակչության մեխանիկական աճի դադարեցմանը։ Մեր կարծիքով, պետք է նաև աստիճանաբար իրականացնել մայրաքաղաքից առանձին հիմնարկների ու ձեռնարկությունների դուրս բերումը։

Պետք է ուղղակի ասել, որ քաղաքային հողերի ոչ ռացիոնալ օգտագործման ու հաճախ էլ շռայլման պատճառով քաղաքի ընդլայնման պրոցեսին ուղեկցել է արդեն մշակված, առանց այն էլ ոչ շատ պտղատու հողերի վերածումը շինարարական հրապարակների և մասնավոր տնաշինության համար հողամասերի։ Ահա թե ինչու, չնայած քաղաքի տերիտորիան հասել է 22 հազար հեկտարի, քաղաքային սահմանագծում քիչ են մնացել ազատ տարածություններ, որտեղ հնարավոր լինի կենտրոնացնել պետական և անհատական բնակարանային շինարարությունը։ Եթե հաշվի առնենք, որ պետական հաստատված նորմաներով 500 հազար բնակչություն ունեցող քաղաքի տարածությունը չպետք է անցնի 5000 հեկտարից և, որ ամեն մի լրացուցիչ հեկտարի լրիվ բարեկարգումը պահանջում է մոտ մեկ միլիոն ռուբլի կապիտալ ներդրում, ապա հասկանալի կդառնա, թե ինչպիսի մեծ անարտադրողական ծախսերի հետ է կապված Երևանի տերիտորիայի ընդլայնումը։

Այժմ քաղաքային Սովետն աշխատում է ուղղել քաղաքի պլանավորման և հողերի բաշխման գործում նախկինում թույլ տրված լուրջ սխալները, բայց դա անչափ թանկ է նստում, քանի որ այն հաճախ կապված է լինում միաժամանակյա նոր բնակելի շենքերի (մեծ մասամբ մասնավոր) քանդման հետ։

Մեր կարծիքով, քաղաքաշինության բոլոր հարցերը ներկա պայմաններում լիովին պետք է ենթարկվեն բնակարանային ֆոնդի ավելացման խնդրին։ Այդ իսկ պատճառով պետք է քանդել միայն խարխուլ ու վթարային դրության մեջ գտնվող տները և թաղամասերը։ Կենտրոնական փողոցների առաջին գծի վրա բնակարանային շինարարությունը ոչ միայն չի օգնում բնակելի ֆոնդի ավելացմանը ու թանկացնում շինարարության արժեքը, այլև ավելի վատ պայմաններ է ստեղծում տվյալ թաղամասի ներսում ապրող բնակչության համար։ Դրա հետ միասին նոր բնակելի շենքերի բնակչությունը երկար ժամանակ զրկված է մնում լայնատարած ու բարեկարգ բակերից։ Հետևապես կենտրոնական թաղամասերի վերակառուցումը պետք է կատարել աստիճանաբար և ամբողջապես։

Այստեղ հարկ ենք համարում նշելու, որ առանձին հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ, շինարարներ ու ճարտարապետներ պետական գործի նկատմամբ երբեմն ցուցաբերում են նեղ գերատեսչական, երբեմն էլ սուբյեկտիվ վերաբերմունք։ Այդպիսի դեպքերում նրանք հաշվի չեն առնում, թե



ինչ կարժենա մեկ քմ. բնակելի տարածությունը և տերիտորիայի յուրացումը, միայն թե շենքը և հատկապես այն բնակարանները, որոնք նախատեսվում են իրենց համար, կառուցվեն «բարձր ճաշակով» և անպայման կենտրոնում։

Ուստի զարմանալի չէ, որ քաղաքի կենտրոնական մասերում ու մագիստրալների վրա գտնվող գրեթե ոչ մի բնակելի շենք չի կառուցվել տիպային նախագծով և որպես կանոն մոտ 2 անգամ թանկ է նստել, քան Ծերեթելու փողոցի վրա տիպային նախագծերով կառուցված բնակելի շենքերը։ Այսպես, օրինակ, 1958 թվականին Շինարարության մինիստրության, Շինարարության ու ճարտարապետության պետական կոմիտեի, Գեոլոգիական վարչության, Ավտոտրանսպորտի մինիստրության, Առողջապահության մինիստրության, Անասնաբուծական ինստիտուտի, Պոլիվինիլացետատ և Հայէլեկտրագործարանների կոլեկտիվների համար քաղաքի կենտրոնական փողոցներում շահագործման են հանձնվել մի շարք բնակելի տներ, որոնց յուրաքանչյուր քառ. մետրի վրա միջին հաշվով ծախսվել է մոտ 2200 ռ., այն դեպքում, երբ տիպային նախագծում մեկ քառ. մետրի արժեքը նույն ժամանակ կազմել է 1380 ռուբլի։ Այլ կերպ ասած, միայն վերոհիշյալ պատվիրատու կազմակերպությունների, ինչպես նաև շինարարական ու նախագծային կազմակերպությունների մեղքով անցյալ տարի թույլ է տրվել 12.200 հազար ռուբլու գերածախս, որով լրացուցիչ կարելի էր շահագործման հանձնել 9000 քմ. բնակելի տարածություն և բավարարել 1000-ից ավելի քաղաքացիների բնակարանային պահանջը։

Այն դեպքում, երբ կառավարության որոշման համաձայն բնակարանային շինարարությունը սկսած 1957 թվականից պետք է կատարվեր միայն տիպային նախագծերով, 1957 թվականին այդպիսի շենքերի տեսակարար կշիռը Երևանում կազմել է 28 տոկոս, իսկ 1958 թվականին՝ 40 տոկոս։ Նախագծային կազմակերպությունները դժվարությամբ են հրաժարվում անհատական նախագծերից, իսկ Շինարարության և ճարտարապետության պետական կոմիտեն և Քաղաքային Սովետի գործկոմի շինարարության ու ճարտարապետության բաժինը փոխանակ արագացնելու շինարարության ասպարեզում պարտիայի և կառավարության որոշումների իրականացումը, ցուցաբերում են պահպանողականություն, իսկ երբեմն էլ օրինականության կոպիտ խախտումներ։ Բերենք մի այսպիսի օրինակ։ Պետշինի և Նախագծային ինստիտուտի կոլեկտիվների համար անցյալ տարվա վերջին Թամանյան փողոցի վրա շահագործման հանձնվեց 1350 քմ. բնակելի տարածությամբ մի շենք։ Այդ բնակելի տունը ոչ միայն չկառուցվեց տիպային նախագծով, այլև շինարարության պրոցեսում կատարվեցին այնպիսի անօրինականություններ, որ նույնիսկ հեղինակը՝ ճարտարապետ Ռ. Հայրապետյանը հրաժարվեց նախագծի տակ ստորագրելուց։ Շինարարության և ճարտարապետության պետական կոմիտեի նախագահի տեղակալ Գ. Մելքումյանի միջամտությամբ ու ակտիվ մասնակցությամբ շենքը փաստորեն կառուցվեց առանց նախագծի, որի հետևանքով նախատեսված 41 բնակարանի փոխարեն շինարարության վերջում մնաց 34 բնակարան։ Այլ կերպ ասած, օրը ցերեկով չքացավ 7 բնակարան։ Բավական է ասել, որ վերոհիշյալ շենքը տիպային նախագծով կառուցելու դեպքում կարելի էր 55—60 ընտանիքի բավարարել բնակարանով (այստեղ մեկ բնակարանի միջին արժեքը կազմել է 78 հազար ռուբլի, իսկ Ծերեթելու փողոցի վրա կառուցած շենքերում՝ 42 հազար։ Եթե հաշվի առ-

նենք նաև այն փաստը, որ կառուցված 34 բնակարանների մի զգալի մասը
հատկացվել է մարդկանց, որոնք մինչ այդ ապահովված են եղել բնակա-
րաններով, ապա հասկանալի կդառնա, թե շինարարության ու բաշխման մեջ
անառողջ երևույթները ինչպիսի լուրջ խոչընդոտ են հանդիսանում քաղաքի
բնակարանային պրոբլեմի լուծմանը։
Նման փաստեր կարելի է շատ բերել։ Օրինակ, վերը հիշատակած մյուս
յոթ կազմակերպությունների բնակելի շենքերի թանկացումը գերազանցապես
պետք է բացատրել բնակարանների բաշխման արատավոր պրակտիկայից
բխող սուբյեկտիվ գործոններով։ Ի հաճույս առանձին մարդկանց, նշված
հիմնարկությունների շենքերում բնակարանները կառուցվել են 25—50 տոկո-
սով ավելի մեծ տարածությամբ ու բարձրությամբ, քան տիպային նախա-
գծերով կառուցված բնակարանները, կատարվել են բնակարանների միացում-
ներ, առանձին հարկերի բարձրությունը հասցվել է 3,5—3,9 մետրի։
Մինչդեռ կառավարության որոշման իրագործումը հնարավորություն կտա
ոչ միայն յուրաքանչյուր ընտանիքին բավարարելու մեկուսացած բնակարա-
նով, այլև աստիճանաբար իրականացնելու ամեն մեկ շնչին առանձին սենյակ
տրամադրելու ծրագիրը։ Օրինակ, 1956 թվականին քաղաքային Սովետին
պատկանող բնակարաններում սենյակի միջին տարածությունը կազմել է 17
քմ., որտեղ միջին հաշվով բնակվել են 2,8 մարդ։ Որպեսզի ամեն մի շնչին
հասնի մեկ սենյակ, հարկավոր է գրեթե եռապատկել այդ տարածությունը։
Բայց բավական է ննջարանային սենյակների չափն իջեցնել մինչև 13 քմ.,
որպեսզի նույն տարածությունը կրկնապատկելու դեպքում ամեն մեկին տրա-
մադրվի մեկ սենյակ։ Հասկանալի է, որ այդ հարցը լուծելիս հաշվի պետք է
առնել Երևանի բնակլիմայական պայմանները։ Սակայն այդ չի նշանակում,
որ առանձին մարդիկ կարող են կառուցել շենքն այնպես, ինչպես իրենք են
կամենում։
Ուշագրավ է Շինարարության մինիստրության օրինակը, որը տվյալ
դեպքում հանդես է եկել թե՛ որպես պատվիրատու և թե՛ որպես կապալառու։
Այդ մինիստրությունն իր գծով անցյալ տարի երկու «ռեկորդ» սահմանեց։
Նախ իր բնակելի շենքերի շահագործման հանձնման պլանը կատարեց 189,2
տոկոսով (2595 քմ.) և ապա ամեն մի քառակուսի մետր բնակելի տարածու-
թյան արժեքը հասցրեց 2520 ռուբլու։ Դա այն դեպքում, երբ Մինիստրու-
թյունը քաղաքային Սովետի բնակելի շենքերի շահագործման հանձնման տա-
րեկան պլանը կատարեց 57,3 տոկոսով, ինչպես նաև խիստ թերակատարեց
մյուս պատվիրատուների բնակարանային շինարարության պլանները։ Միայն
Մինիստրության ու տրեստների ղեկավար աշխատողների անպատասխանա-
տու վերաբերմունքի և նրանց նկատմամբ վերահսկողության թուլության
պատճառով պետք է բացատրել վերոհիշյալ աննորմալ փաստը։ Բայց ցավա-
լին ոչ միայն այն է, որ Մինիստրությունն ուրիշի հաշվին գերակատարել է
իր գծով բնակարանային շինարարության պլանը ու, անխնա շռայլելով պե-
տական միջոցները, 2 անգամ թանկացրել բնակելի տարածության արժեքը,
այլև այն, որ շատ քիչ շինարար բանվորներ են նորակառույց շենքերում
բնակարաններ ստացել։
Կարելի է բերել փաստեր, երբ շինարար բանվորների հաշվին բնակարան
են ստանում շինարարության հետ ոչ մի առնչություն չունեցող կամ շինա-
րարության մեջ բնակարան ստանալու համար աշխատանքի ընդունված պա-



տահական մարդիկ։ Այդ հանգամանքն, անկասկած, բացասաբար է անդրա-դառնում շինարարության մեջ կայուն բանվորական ուժ հավաքագրելու և շինարարության պլանները կատարելու վրա։ Պատահական չէ, որ քաղաքում ազատ աշխատուժի առկայության պայմաններում շինարարական կազմակերպությունները մոտակա և նույնիսկ հեռավոր բնակավայրերից հավաքագրում են բանվորներ և նրանց տեղափոխման համար ծախսում հսկայական գումարներ (անցյալ տարի այդ նպատակով ծախսվել է 10 միլիոն ռուբլի)։ Դա իր հերթին, բնակարանային շինարարությունը թանկացնելուց բացի, նպաստում է նաև քաղաքի բնակչության արհեստական աճին։

Այս հոդվածում մենք նպատակ չենք դրել վերլուծել բնակարանային շինարարության պլանների թերակատարման պատճառները։ Հայտնի է, որ մեզ մոտ շինարարության ինդուստրացման տեմպերը խիստ ետ են մնում բնակարանային շինարարության անընդհատ աճող պլաններից։ Ստեղծվել է նաև որոշակի անհամաչափություն, մի կողմից, շինանյութերի արտադրության ու մատակարարման, բանվորական ուժի ընդգրկման և մյուս կողմից շինարարության ընդլայնման տեմպերի միջև։ Դրանով պետք է հիմնականում բացատրել, որ վերջին հինգ տարվա ընթացքում (1954—1958 թ. թ.) պլանների թերակատարման հետևանքով քաղաքի բնակչությունը չստացավ ավելի քան 100 հազար քմ. բնակելի տարածություն։

Ինչպես բնակարանային շինարարության, այնպես էլ բնակարանների բաշխման մեջ տեղ գտած լուրջ թերությունների պատճառներն ամենից առաջ պետք է որոնել այդ գործի կազմակերպման ու ղեկավարման դրվածքի մեջ։ Մինչև վերջերս մեզ մոտ փաստորեն չէր վերացվել բնակարանային շինարարության ու բաշխման գերատեսչական սկզբունքը։

Խոսք չկա, որ բնակելի տների կառուցման և բաշխման գերատեսչական սկզբունքը դրական դեր է կատարել և կարող է կատարել նոր արդյունաբերական կենտրոններում արտադրական կարևորագույն ձեռնարկությունները սեփական կադրերով ապահովելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և առաջին հերթին գործարանային բանվորներին բնակարաններով բավարարելու խնդրում։

Նույնը վերաբերում է նաև Երևանին։ Նրա խոշորագույն ձեռնարկությունների արտադրական հիմքերի վրա քաղաքի տարբեր մասերում առաջացել են բարեկարգ բանվորական թաղամասեր, որոնք օրգանապես կապված են քաղաքի կենտրոնի հետ։ Միայն Կիրովի անվան և ալյումինի գործարանների բնակելի տների մակերեսը կազմում է ավելի քան 110 հազար քմ.։ Այդ երկու խոշոր գործարանները վերջին չորս տարվա ընթացքում հանձնել են շահագործման 21.500 քմ. բնակելի տարածություն, որի մեծ մասը բաժանվել է բանվորական ընտանիքներին։ Օրինակ, Կիրովի անվան գործարանը անցյալ տարի կառուցել է բնակելի տներ 5633 քմ. բնակելի տարածությամբ, որի 2/3 հատկացվել է բանվորական ընտանիքներին։ Շատ բանվորներ, որ մինչև այդ ապրում էին վատ տներում, ստացել են մեկուսացած 2—3 սենյականոց բնակարաններ։ Գործարանի ընդհանուր ժողովում կազմվել և նախօրոք հաստատվել են բնակարանի կարիք ունեցողների ցուցակները և սահմանվել խիստ հերթականություն։ Յուրաքանչյուր բանվոր արդեն գիտե ցուցակում իր տեղը և բնակարան ստանալու մոտավոր ժամկետը։

Սակայն ոչ բոլոր կազմակերպություններում է, որ ուշադրությամբ

ստուգվում ու վաղօրոք հաստատվում են բնակարանի կարիք զգացող ընտանիքների ցուցակները: Առանձին դեպքում դեռևս թույլ են տրվում հերթականության խախտում, կամայական վերաբերմունք և չարաշահումներ: Բնակարանների բաշխման գործում դեռևս անբավարար են ներգրավվում արհմիութենական կազմակերպությունները: Ինչպես նշված է ՍՄԿՊ Կենտկոմի 1957 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ. «Ձեռնարկություններում և հիմնարկություններում բնակելի տարածության բաշխումը պետք է կատարվի ադմինիստրացիայի և արհմիութենական կոմիտեների համատեղ որոշմամբ»: Մինչդեռ Երևանի արհմիութենական կազմակերպությունները շատ դեպքերում անբավարար են վերահսկում բնակելի ֆոնդի բաշխման գործը: Իսկ մյուս կողմից էլ, տնտեսական առանձին ղեկավարներ հաշվի չեն առնում արհմիութենական կոմիտեների առաջարկներն ու ցուցակները:

Սոցիալիզմից կոմունիզմին անցման ներկա էտապում, երբ ցածր վաստակ ստացող աշխատավորության իրական աշխատավարձի բարձրացման և բնակարանային հարցի լուծման խնդիրն է դրվում, առաջին հերթին խոշորագույն քաղաքներում վերանում է բնակելի տների կառուցման, պահպանման և բաշխման գերատեսչական սկզբունքի անհրաժեշտությունը, քանի որ այն չի օգնում բնակարանային շինարարության համար բաց թողած միջոցների ռացիոնալ ու ժամանակին իրացմանը: Այդ սկզբունքը նպաստում է որոշ կազմակերպությունների՝ բարելավելու իրենց աշխատակիցների արդեն բավարար բնակարանային պայմանները, այն դեպքում, երբ քաղաքի ձեռնարկությունների ու հիմնարկությունների մեծ մասը չունի սեփական բնակարանային ֆոնդ և ստիպված է հույսը կապել քաղսովետի հետ: Մյուս կողմից, որքան շատ հիմնարկ-ձեռնարկություններ են սկսում պետական միջոցներով բնակելի շենքեր կառուցել, այնքան ուժեղանում է լավ բնակարանից լավագույնը թռչկոտելու, սեփական տները սպեկուլյատիվ գներով վաճառելու և պետական բնակարանները տեղափոխվելու հնարավորությունները: Օրինակ, քաղ. Տեր-Ստեփանյանը ապրում էր Մոսկովյան փողոցի № 37 սեփական տանը, որի մի մասը նա վաճառել է: Անցյալ տարի նա բնակարան ստացավ Ջրային տնտեսության մինիստրության նորակառույց բնակելի շենքում: Պարզվում է, որ Տեր-Ստեփանյանը «հերթի մեջ է» եղել նաև քաղաքային Սովետում: Քաղաքացի Գ. Ասատրյանը ունի լրիվ բնակարան Ստալինյան պողոտայի № 20 պետական շենքում: Բայց նա ինչ որ միջոցներով կառուցել է առանձնատուն Բարեկամության փողոցի վրա, որը վաճառել է 150 հազար ռուբլով և միաժամանակ տղայի համար ևս ստացել պետական բնակարան: Քաղաքացի Գ. Իլիկչյանը զբաղեցնում էր բնակարան Հոկտեմբերյան պողոտայի № 63 շենքում, բայց նա ունի նաև սեփական 8 սենյականոց տուն Այգեստանում, որը տրվում է վարձով: Անցյալ տարի Կանազի նորակառույց բնակելի շենքում բնակարան ստացավ ինժեներ Ս. Քերոբյանը: Նա միաժամանակ ունի 7—8 սենյակից բաղկացած սեփական տուն, որի 3 սենյակները զբաղեցնում են մայրը, քույրը և փոքրիկ եղբայրը, իսկ մնացածից ստանում է 1000 ռուբլի ամսական եկամուտ:

Վերոհիշյալ երևույթները կանխելու նպատակով Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը 1957 թվականի դեկտեմբերի 2-ին որոշում ընդունեց «Երևան քաղաքում բնակելի տարածության հաշվառման, բաշխման և կարգավորման» մասին: Որոշման համաձայն 1958 թվականի հունվարի մեկից



քաղաքային Սովետի նորակառույց շենքերի բաշխման ֆունկցիան անցել է շրջանային Սովետների իրավասությանը: Շրջանային Սովետները միաժամանակ պետք է կոորդինացնեն տվյալ տերիտորիայում գտնվող հիմնարկ-ձեռնարկությունների բնակելի շենքերի բաշխման գործը: Նրանք իրավունք ունեն ցուցակները ստուգել և փոփոխություններ մտցնել: Սահմանվում են միասնական օրդերներ, որի բացթողման իրավունքը պատկանում է միայն քաղաքային Սովետին:

Հիշյալ որոշման մեջ խոսվում է պետական բնակելի տներում առաջացած ավելցուկ բնակելի տարածությունները օրենսդրական կարգով շրջանային Սովետներին հանձնելու մասին, ինչպես նաև բնակարաններն ազատել այն վարձակալներից, որոնց աշխատանքի և մշտական բնակության վայրը գտնվում է քաղաքից դուրս: Այդ որոշումից հետո չափազանց մեծացել են շրջանային Սովետների իրավունքները, որոնց գործադիր կոմիտեները դեպուտատների օգնությամբ բավականին աշխատանք են կատարել հաշվառման վերցրած քաղաքացիների հերթականությունը որոշելու և նրանց բնակարաններով բավարարելու գործում: Սակայն հիմա էլ շատ հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ ամեն կերպ ձգտում են հաշվի չնստել շրջանային Սովետների հետ: Վերջիններս հաճախ չեն կարողանում նույնիսկ իրականացնել ազատվող բնակարանները տնօրինելու իրենց իրավունքը, որը մինչ այդ էլ տրվում էր նրանց:

Բնակարանային շինարարության և բաշխման գործն էլ ավելի բարելավելու նպատակով, Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշմամբ, սկսած այս տարվանից բնակելի շենքերի կառուցման հիմնական պատվիրատու պետք է հանդիսանա քաղաքային Սովետը: Եթե անցյալ տարի քաղաքային Սովետին բաժին էր ընկնում քաղաքի պետական բնակարանային շինարարության 20 տոկոսը, ապա այս տարի՝ մոտ 90 տոկոսը: Քաղաքային Սովետի գծով ընթացիկ տարում նախատեսվում է շահագործման հանձնել 127 հազար քմ. բնակելի տարածություն, որը 30 տոկոսով ավելի է, քան անցյալ տարի քաղաքում շահագործման հանձնված ամբողջ բնակելի տարածությունը: Բնակարանային շինարարության կենտրոնացումը քաղաքային Սովետի ձեռքում արդեն դրականապես է անդրադառնում բնակարանային շինարարության պլանների կատարման վրա և նպաստում է վերը հիշատակված բացասական երևույթների վերացմանը:

Անցյալ տարիներին օգտվելով բազմաթիվ պատվիրատուների (ավելի քան 50) առկայությունից, շինարարական կազմակերպությունները սկսում էին մանկրել, ձգձգել բնակելի շենքերի շահագործման ժամկետները, կատարել անորակ աշխատանքներ և թույլ տալ պետական կարգապահության խախտումներ: Այժմ գրեթե բացառվում են այդպիսի փաստերը: Չնայած շինարարական կազմակերպությունները բնակելի տարածությունների շահագործման հանձնման այս տարվա պլանը 6 ամսվա ընթացքում կատարել են 42,9 տոկոսով, բայց անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ նկատելիորեն բարելավել են իրենց աշխատանքները և մոտ 2 անգամ ավելացրել շահագործման հանձնված բնակելի տարածությունը:

Շինարարության լրիվ կենտրոնացումը միաժամանակ հնարավորություն է տալիս կարգավորելու բնակարանների բաշխման գործը: Այժմ առանձին կազմակերպությունների միջև բնակարանները բաշխվում են Հայկական ՍՍՌ

*Մինիստրների Սովետի կողմից նախապես հաստատված լիմիտների համաձայն։ Այսպես, օրինակ, 127 հազար քմ. բնակելի տարածությունից, որը պետք է շահագործման հանձնվի քաղաքային Սովետի գծով, 31,8 հազար քմ. Ժողտնտխորհի միջոցով հատկացվում է արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողներին, 25,5 հազար քմ. պետք է բաշխվի շրջանային Սովետների միջոցով և այլն։ Հատուկ ուշադրություն է դարձվում Հայրենական պատերազմում զոհվածների ու հաշմանդամների ընտանիքների, շինարարների, միլիցիայի աշխատողների, ուսուցիչների և բժիշկների բնակարանային պայմանների բարելավման վրա, որի համար առանձնացվում է 42,4 հազար քմ.։*

*Այս կարևոր միջոցառումներն ավելի հետևողականորեն իրականացնելու և բնակարանային շինարարության տարեկան պլանը կատարելու համար անհրաժեշտ է նախապես որոշել, թե բնակարանի կարիք զգացող որ քաղաքացին որ շենքում պետք է բնակարան ստանա։ Այդ դեպքում բնակարանի կարիք զգացող աշխատողները փոխանակ դիմումներ գրելու, մեծ հաճույքով իրենց ընտանիքների աշխատունակ անդամների օգնությամբ կարող են մասնակցություն ցույց տալ բնակելի շենքերն ավելի արագ կառուցելուն։*

*Վերը շարադրվածով բոլորովին էլ չի սպառվում քաղաքի բնակարանային պրոբլեմի հետ կապված դժվարությունների և նրանց հաղթահարման ուղիների քննարկումը։ Այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են կոոպերատիվ ու անհատական բնակարանային շինարարության և այլ բազմաթիվ հարցերը, արժանի են հատուկ ուշադրության։*

---

## ԱՊԱՀՈՎԵՆՔ ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ

# ԱՆՀԵՏԱՁԳԵԼԻ ԽՆԴԻՐՆԵՐ

*Տեխնիկական առաջադիմության ասպարեզում յոթնամյա պլանի և ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի դրած խնդիրները զգալի չափով լուծվելու են նախագծային կազմակերպությունների աշխատանքը կարգավորելու և շինարարության ու շինանյութերի արդյունաբերության հետագա զարգացման միջոցով։*

*Պետությունը ամեն տարի հսկայական միջոցներ է հատկացնում արդյունաբերական շինարարության համար։ Միայն Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի գծով այս տարի արդյունաբերական շինարարության մեջ ներդրվելու է ավելի քան 700 միլիոն ռուբլի։ Խնդիրն այն է, որ այդ կապիտալ ներդրումները խնայողաբար օգտագործվեն։*

*Շինարարությունը հաջողությամբ իրականացնելու գործում կարևոր դեր է խաղում ամենից առաջ կառույցները ժամանակին տեխնիկական այնպիսի փաստաթղթերով ապահովելը, որոնցում հաշվի են առնված գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, երաշխավորված են ձեռնարկությունների շինարարության արժեքի իջեցումը և աշխատանքի արտադրողականության արագ աճը։*

*Նախագծային կազմակերպությունների և, մասնավորապես, Հայաստանի Ժողտնտխորհին ենթակա ռեսպուբլիկական նախագծային ինստիտուտի (դիրեկտոր ընկ. Մ. Գրիգորյան) և «Գիպրոցվետմետ» նախագծային ինստիտուտի (դիրեկտոր ընկ. Մ. Մալխասյան) էական թերություններից մեկն այն է, որ նոր գործարանների նախագծերում ոչ միշտ են հաշվի առնվում հայրենական և արտասահմանյան գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, հաճախ օգտագործվում են հնացած տեխնոլոգիական պրոցեսներ ու սարքավորում։ Բավականաչափ չի նախատեսվում արտադրության մեքենայացումը, կառավարման և տեխնոլոգիական պրոցեսների վերահսկողության ավտոմատացումը, ինչպես նաև տիպային հավաքովի ու այլ պրոգրեսիվ շինարարական կոնստրուկցիաների կիրառումը։ Զժխտելով, որ որոշ դեպքերում նպատակահարմար է օգտագործել միութենական խոշոր մասնագիտացված նախագծային կազմակերպությունների փորձը, Ժողտնտխորհը բազմիցս նշել է, որ նախագծային աշխատանքների հիմնական մասը անպայման պետք է կատարվի մեզ մոտ։ Դրա համար առաջին հերթին պետք է նախագծային կազմակերպությունները համալրվեն որակյալ տեխնոլոգներով։ Ժողտնտխորհի նախագծային կազմակերպությունների ղեկավարները դեռ վատ են զբաղվում այդ անհետաձգելի հարցով։ Հարկավոր է ստեղծել նաև մասնագիտացված նախագծային ինստիտուտներ։*

*Մեր կարծիքով արդյունաբերական շենքերի նախագծումը պետք է կատարվի հետևյալ ձևով.*

*1. Պետք է ստեղծել տիպային և ունիֆիկացված կոնստրուկցիաներ, քա-*

նի որ ինդուստրիալ շինարարությունը պահանջում է արդյունաբերական շինարարության բոլոր ճյուղերում կիրառել տիպային ունիֆիկացված կոնստրուկցիաներ։

2. Պետք է ավելացնել պրոլյոտների տարածությունը և սյունամեջ տարածությունները, սարքավորումը ազատորեն տեղադրելու համար, միաժամանակ իջեցնելով կոնստրուկցիաների քաշը։

3. Մեկ կորպուսում պետք է միավորել որևէ արտադրության բոլոր ցեխերի լիակատար կոմպլեքսը, այսինքն՝ կոմպլեքսի մեջ պետք է մտցնել ոչ միայն հիմնական արտադրության ցեխերը, այլև օժանդակ, վերանորոգման, մեխանիկական ցեխերը, պահեստները, վարչական և կենցաղային կառուցումները։

4. Պետք է կիրառել բաց ցեխերի նախագծման ու շինարարության պրակտիկան։ Գիտության ու տեխնիկայի զարգացման հետ միասին արդյունաբերական ագրեգատները դառնում են խոշոր գաբարիտի էլեմենտների բարդ սիստեմ, այդ պատճառով շատ մեծ շենքեր ստեղծելը նպատակահարմար չէ, մանավանդ, երբ այժմ դրվում է տեխնոլոգիական պրոցեսի ավտոմատացման հարցը և ձեռնարկությունը կարելի է ղեկավարել առանց մեծաթիվ սպասարկող անձնակազմի։ Բնականաբար դա մեծ խնայողություն է տալիս։ Բայց ցեխերում այլևս կարիք չկա օդափոխության, լուսավորության, ջեռուցման սիստեմ ունենալ։ Վերանում են նաև շենքերի վերանորոգման հետ կապված ծախսերը։ Այդ ձևն ունի նաև շատ այլ առավելություններ։

Սահմանված պլանը հաջողությամբ կատարելու համար հնարավոր է երկու եղանակ։ Առաջինը շինարարական կազմակերպությունների և շինանյութերի արդյունաբերության կարողությունների ավելացումն է, իսկ երկրորդը՝ շինարարության չափի մեկ միավորին ընկնող աշխատանքի ու նյութերի ծախսման կրճատումն է։

Արտադրական բազայի ստեղծման ու ընդլայնման համար կա Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի ծավալուն որոշումը, որի իրագործումը անշուշտ կթեթևացնի շինարարական ծրագրի կատարումը։ Բայց դրա համար ժամանակ է պահանջվում, այդ պատճառով սկզբում պետք է օգտագործել նաև երկրորդ եղանակը։ Այս եղանակը պահանջում է սահմանված շատ հասկացողությունների և շինարարական պրակտիկայի սովորական ձևերի համարձակ վերանայում։

Դրան կարելի է հասնել օգտագործելով նոր տեխնիկայի միջոցները և երկաթբետոնի պատրաստման նոր տեխնոլոգիայի առավելությունները, մասնավորապես գլանվածքային և կասետային եղանակները։ Այնուհետև կարելի է օգտագործել ամրացման արդյունավետ եղանակները, մասնավորապես լիակատար սարքավորումը, ինչպես նաև ընտրել ավելի կատարյալ կոնստրուկցիաներ, ավելի բարձրորակ կառույցների, ինժեներական լուծումների սխեմաներ և ավելի ռացիոնալ կերպով օգտագործել տեղական նյութերը, ելնելով նրանց տեխնիկական ու ֆիզիկական հատկություններից։ Մեր ջանքերը պետք է ընթանան այդ ուղղությամբ։

Կարևոր խնդիր է նաև շինարարական աշխատանքների հիմնական տեսակների կոմպլեքսային մեքենայացումը և շինարարության մեջ նոր մեքենաների կիրառումը։ Այս գործում մեզ մոտ դրությունը մխիթարական չէ։

Մեզ մոտ շինարարական աշխատանքները համասարաչափ մեքենայացված չեն, առանձին շինարարական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման մակարդակը ցածր է և գոյություն ունեցող պարկը բավարար չափով չի օգտագործվում ժամանակի և կարողության տեսակետից։ Մեր շինարարական կազմակերպությունները հատուկ ուշադրություն պետք է նվիրեն մեքենայացման միջոցները բարելավելուն, պետք է ավելացնեն մեքենաների արտադրողականությունը, կրճատեն նրանց պարապուրդները։ Դրա համար որքան կարելի է շատ պետք է կազմակերպել վերանորոգման մեխանիկական ձեռնարկություններ՝ շինարարական մեխանիզմների կապիտալ վերանորոգման համար, իսկ նյութա-տեխնիկական մատակարարման վարչությունը պետք է կազմակերպի պահեստամասերի սիստեմատիկ մատակարարումը, քանի որ պահեստամասերի պահանջը ներկայումս բավարարվում է միայն 30—40 տոկոսով։ Ուշադրության արժանի է Գլավմոստստրոյի փորձը, երբ մաշված հանգույցները փոխվում են առանց մեքենան շահագործումից հանելու։

Այժմ մեր ամբողջ ուշադրությունը պետք է կենտրոնացնենք շինարարության ինդուստրացման ու մեքենայացման վրա։ Ժողտնտխորհի անհետաձգելի խնդիրն է՝ օգտագործել տեղական շինանյութերը և դրանց հիման վրա ստեղծել ավելի կատարյալ կոնստրուկցիաներ։

Հայաստանը ունիկալ շինաքարի և այլ շինանյութերի անսպառ պաշարներ ունի։ Վերջին տարիներս զգալի աշխատանք է կատարված տեղական նյութերը օգտագործելու ասպարեզում։ Անթույլատրելի է, որ ներկայումս շինաքարի պակաս է զգացվում։

Շինարարների առաջ դրված խնդիրները՝ շինարարության արագացումը և շենքերի քաշի իջեցումը չեն իրագործվում։ Օրինակ, հայտնի է, որ քար շարելու այժմյան ձևը («միդիս») հետամնաց ձև է և կյանքը պահանջում է անցնել կանոնավոր ձևի քարերով շարվածքին։ Մենք հնարավորություն ունենք տուֆի մնացորդներից ստեղծել անսահմանափակ քանակությամբ կանոնավոր ձևի արհեստական շինաքարեր։ Արթիկում այդպիսի գործարան արդեն կառուցվում է, բայց կապիտալ ներդրումներն անբավարար են։ Պետք է փոխել կանոնավոր ձևի շինաքարի ձեռնարկություններ ստեղծելու նկատմամբ եղած վերաբերմունքը։ Ինչպես հայտնի է, շինարարական ինդուստրիայի կարևորագույն խնդիրն է թեթևացնել շինարարական կոնստրուկցիաների քաշը։ Այս ասպարեզում Հայաստանը հսկայական հնարավորություններ ունի։ Հայաստանի պեմզան և հրաբխային շլակներն ամենից առաջ բնութագրվում են իրենց թեթևությամբ։ Դրանք բետոնի մեջ կիրառվող լիցքերից 2—3 անգամ թեթև են և իրենց ծակոտկենության շնորհիվ ակտիվ լցանյութ են թեթև տաք բետոնի և պեմզաբետոնի համար։ Զանազան պեմզաների շարքում հատուկ տեղ է գրավում լիթոիդային պեմզան և պեռլիտը։ Լիթոիդային պեմզայի հիման վրա կարելի է ստանալ բարձր տեսակի բետոնե և երկաթբետոնե իրեր և ուրեմն պատրաստել նաև բարձրորակ հավաքովի երկաթբետոնե շինվածքներ ու կոնստրուկցիաներ։

Անհրաժեշտ է ստեղծել խոշոր ձեռնարկություններ՝ շլակներից ու պեմզաներից կոնստրուկցիաներ պատրաստելու համար։ Այդ խնդիրը պետք է շտապ լուծել։ Շինանյութերի արդյունաբերության նեղ տեղը աշխատանքների անբավարար մեքենայացումն է։ Ժողտնտխորհը և Շինանյութերի արդյունաբերության վարչությունը պետք է դրան լուրջ ուշադրություն նվիրեն։

Կանոնավոր ձևի տուֆ արդյունահանելու համար կարևոր խնդիրներից մեկը քար տաշող մեքենաների արմատավորումն է։

Մեծ աշխատանքներ են նախատեսված ավտոմատացման և բլոկավորման գործում։ Նախատեսվում է տեղադրել 30 տեղակայանք՝ Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատում, Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանում, Արզնիի ապակե տարայի գործարանում և այլն։ Կասկած չկա, որ նախագծային, շինարարական կազմակերպությունների և շինանյութերի արդյունաբերության աշխատողները, ամփոփելով դրական նվաճումները, հայտաբերելով ու վերացնելով թերությունները, նոր հաջողություններ ձեռք կբերեն շինարարության գործում և կապահովեն պարտիայի ու կառավարության դրած խնդիրների կատարումը։

Լ. ԵՐԶՆԿՅԱՆ

ՀՍՍՌ ժողտնտխորհի նախագահի տեղակալ

## ԸՆԹԱՆԱԼ ԿՅԱՆՔԻ ՀԵՏ

Հայաստանի ժողտնտխորհի Քիմիայի ինստիտուտն արդեն երկրորդ տարին է ինչ գոյություն ունի։ Նա կազմակերպվեց Գիտությունների ակադեմիայից ժողտնտխորհին անցած գիտական աշխատակիցների կոլեկտիվից և այժմ ունի 70 գիտական աշխատակից, որոնց թիվը մինչև տարվա վերջը զգալիորեն կավելանա։

Ինստիտուտն իր սկզբնական շրջանում ուներ ընդամենը երկու լաբորատորիա, իսկ այժմ՝ ինը, որոնց աշխատանքները տարվում են այն հաշվով, որպեսզի կարողանանք լուծել ռեսպուբլիկայի արդյունաբերության առաջ ծառացած շատ հարցեր։

Քիմիայի ինստիտուտի գիտական կոլեկտիվն աշխատում է, որպեսզի ինստիտուտն արձագանքի Հայաստանում գործող և նախագծվող քիմիական արդյունաբերական օբյեկտների գիտա-տեխնիկական պահանջներին։ Այսպես, օրինակ, նախագծվում են և մոտակա տարիներին կհանձնվեն շահագործման ապակյա թելերի և գործվածքների, ինչպես նաև բյուրեղապակու գործարանները։ Ինստիտուտը տեղական հումքի բազայի վրա մշակում է տարբեր նպատակների համար կիրառվող ապակյա թելերի բաղադրությունները, ստանում է համապատասխան թելեր և ուսումնասիրում նրանց հատկությունները։ Արդեն գործում է ապակյա թելերի ստացման և ուսումնասիրման լաբորատորիան։

Ինստիտուտի կողմից մշակվեց նոր նյութի՝ երևանիտի ստացման տեխնոլոգիան, որն իրականացվեց Ալյումինի գործարանին կից կավահողի փորձնական ցեխում։ Այդ նյութի բազայի վրա Հայաստանում 1963 թվականին պետք է գործի բյուրեղապակու գործարան, տարեկան թողարկելով 40 միլիոն ռուբլու արժողությամբ արտադրանք։ Մշակվեց և կավահողի փորձնական ցեխի կոլեկտիվի հետ միասին արտադրական մասշտաբով արտադրվեց նատրիումի մետասիլիկատ, որը ողջ Միության մասշտաբով հանդիսանում է նոր քիմիական պրոդուկտ և խոշոր չափով օգտագործվում է արդյունաբերության զանազան ճյուղերում և կենցաղային պահանջների համար։

Այժմ Ալյումինի գործարանին կից կավահողի փորձնական ցեխում միջին



հաշվով օրեկան արտադրվում է մի քանի տոննա նատրիումի մետասիլիկատ, որը տրվում է ինչպես մեր ռեսպուբլիկայի, նույնպես և Միության մի շարք գործարաններին։ Այսպես, օրինակ, Լենինականի տեքստիլ կոմբինատը այդ նյութից ամսեկան ստանում է 15—20 տոննա և գործադրում է կտավի և այլ կտորեղենի մշակման նախնական պրոցեսի, ինչպես նաև զանազան ներկերի լուծման համար։ Նատրիումի մետասիլիկատի կիրառմամբ ավելի հեշտանում է արտադրական պրոցեսը և մշակված բամբակյա կտորեղենն ունենում է համեմատաբար ավելի լավ մեխանիկական հատկություն, քան մշակվում էր կաուստիկ սոդայի և հեղուկ ապակու լուծույթներում։ Նատրիումի մետասիլիկատ տրվում է նաև Շահումյանի շրջանի Լենինի անվան մետաքսի կոմբինատին։ Այստեղ արտադրական մասշտաբներով կատարված փորձերը ցույց են տալիս, որ եթե 1000 մետր կերպասի նախապատրաստման համար նախկինում գոյություն ունեցող մեթոդը գործածելիս ծախսվում էր 128 ռ., ապա նատրիումի մետասիլիկատի կիրառումով՝ ծախսը կազմում է 60—70 ռ. և արտադրական պրոցեսը արագանում է մոտ 2—3 անգամ։ Միութենական Պետպլանը որոշել է տեքստիլ արդյունաբերության մի շարք ձեռնարկություններում կիրառել նատրիումի մետասիլիկատը։

Քիմիան կարող է խիստ կերպով օժանդակել տեքստիլ արդյունաբերության պրոգրեսին։ Սովետական Միության համար մեր կողմից առաջադրված նոր քիմիկատը (նատրիումի մետասիլիկատը) անպայման խոշոր խթան կհանդիսանա տեքստիլ արդյունաբերության հետագա զարգացման։

Երևանի ժամացույցի գործարանը նույնպես անցել է նատրիումի մետասիլիկատի կիրառության՝ քրոմապատման և նիկելապատման պրոցեսներին։ Գործարանի կողմից կատարված հաշվումները ցույց են տալիս, որ նախկին եղանակով քրոմապատման և նիկելապատման համար 1000 ժամացույցի վրա ծախսվում էր 2 ռ. 68 կ., իսկ մետասիլիկատ կիրառելիս՝ 1 ռ. 40 կոպ.։ Այդ նյութը գործածելիս խիստ կերպով հեշտանում են նախապատրաստական աշխատանքները։

Նատրիումի մետասիլիկատի բազայի վրա կարելի է կազմակերպել լվացման փոշիների արտադրություն։ Ինչպես հայտնի է, Սովետական Միության մասշտաբով նատրիումի մետասիլիկատի արտադրություն ստեղծվեց Հայաստանում։ Հարց է ծագում, ինչո՞ւ նրա բազայի վրա չկազմակերպել մեծաքանակ լվացման փոշու արտադրություն և բավարարել ինչպես մեր ռեսպուբլիկայի, նույնպես և հարևան ռեսպուբլիկաների պահանջներն այդ պրոդուկտով։ Մեր կողմից արդեն մի քանի անգամ բարձրացվում է այս հարցը, բայց որոշակի արդյունք դեռևս չկա։

Երևանի կաթի գործարանը կաթի վաճառքով զբաղվող խանութներին ստիպում է կաթի դատարկ շշերը վերադարձնել միայն լվացած։ Բայց նույն կաթի գործարանի դիրեկցիան լավ գիտի, որ նատրիումի մետասիլիկատը միանգամայն լավ լվանում է շշերը, որքան էլ կեղտոտ լինեն դրանք։ Հարց է ծագում. ինչո՞ւ կաթի գործարանը չի կիրառում նատրիումի մետասիլիկատ։ Նույնը վերաբերում է նաև բոլոր տեսակի շշերի լվացման պրոցեսին։

Ինստիտուտը Կանազ գործարանի հետ միասին ստեղծել է մի այլ նոր քիմիկատ՝ կալցիումի մետասիլիկատ և բացի այդ, նույն կալցիումի կարբոնիզացրած մետասիլիկատ։ Այս նյութերն ուսումնասիրվել են ինչպես ինստիտուտում, նույնպես և Կիրովականի կոմբինատի հետ միասին՝ արտադրվող

ամոնիում նիտրատի կոշտացման երևույթը վերացնելու համար։ Պետք է ասել, որ գործարանային մասշտաբով արված բոլոր փորձերը տվել են միանգամայն դրական արդյունքներ։ Կատարված աշխատանքները հնարավորություն են տալիս չկառուցել գրանուլյացիոն աշտարակներ, որոնց կառուցման և գործարկման համար անհրաժեշտ է ծախսել ավելի քան 5 միլիոն ռուբլի։ Եթե Կանազի կավահողի ցեխը տարեկան տա մի քանի հարյուր տոննա կալցիումի մետասիլիկատ, լրիվ կբավարարի Կիրովականի քիմկոմբինատի պահանջը։

Այս աշխատանքներից բացի, ինստիտուտն այս տարի մշակեց մեկ այլ կարևոր նյութի ստացման տեխնոլոգիան։ Ինստիտուտը և Կանազը կանեն այն ամենը, որպեսզի մենք կարողանանք Հայաստանում կազմակերպել այդ նոր նյութի արտադրությունը։

Ինչպես հայտնի է, Հայաստանում կան տարբեր հատկություն ունեցող հսկայական քանակությամբ հանքային ջրեր։ Բայց նրանց օգտագործումը խիստ ետ է մնում։ Օրինակ, Հայաստանում ներկայումս արտադրվում է ընդամենը մոտ 15—20 մլն. շիշ, մինչդեռ անհրաժեշտ է ավելի քան 200 միլիոն։ Մասամբ դա հետևանք է նրան, որ առանձին ընկերներ չեն ընդառաջում բարձրացնելու տեղական սիլիկատային մատերիալների կիրառման գործը և նրանց բազայի վրա ընդարձակելու շշերի արտադրությունը։ Օրինակ, Ջերմուկի շրջանում ունենք բազմաթիվ տեսակի ապառներ, որոնք կարելի է օգտագործել շշերի արտադրության համար, բայց գործարանի կառուցման հարցը անընդհատ ձգձգվում է։ Մենք գտնում ենք, որ ժամանակն է, որպեսզի Ժողտնտխորհի Շինանյութերի և Սննդի վարչությունները շշերի արտադրության մեջ կիրառեն մեծ թվով սիլիկատային մատերիալներ և դրանով իսկ ընդարձակեն ապակյա տարաների արտադրությունը։

Մ. ՄԱՆՎԵԼՅԱՆ
Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի Քիմիայի
ինստիտուտի դիրեկտոր

## ԼԱՅՆ ՃԱՆԱՊԱՐՀ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻՆ

Յոթնամյա պլանով նախատեսվում է ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական և սարքաշինական արդյունաբերության էլ ավելի բուռն աճ և զարգացում։ 1959—1965 թվականների ընթացքում միայն Հայէլեկտրագործարանում արտադրանքի ապրանքային և համախառն թողարկումը կավելանա 3,2 անգամ։ Արտադրանքի թողարկման տարեկան միջին աճը կկազմի 46 տոկոս։ Ինչպես երևում է այս թվերից, Հայէլեկտրագործարանի արտադրության աճման տեմպը միջին հաշվով չորս անգամ ավելի է, քան կլինի ՍՍՌՄ-ում ամբողջությամբ վերցրած ծանր ինդուստրիայի աճման ստուգիչ թվերով։

Այդպիսի բուռն աճ ձեռք բերել կարելի է հետագա տեխնիկական պրոգրեսի բազայի հիման վրա, նոր, էլ ավելի կատարելագործված մեքենաների ու ապարատների, ժամանակակից առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների ստեղծման, արտադրության մեջ գիտության նորագույն նվաճումներն ու աշխատանքի առաջավոր մեթոդները ներդնելու միջոցով։



Մեր գործարանում վերջին երեք տարվա ընթացքում թողարկման ավելացումն ու աշխատանքի արտադրողականության աճը ձեռք բերվեցին շնորհիվ այն բանի, որ մի շարք խոշոր միջոցառումներ կենսագործվեցին տեխնոլոգիական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ուղղությամբ, նոր, ժամանակակից կոնստրուկցիայի էներգետիկ սարքավորում ստեղծելու և արտադրության մեջ այն մասսայաբար ներդնելու ուղղությամբ։ Կոլեկտիվը նախագծել, պատրաստել և շահագործման է թողարկել զանազան կոնվեյեր գծեր ավելի քան 2200 մետր ընդհանուր երկարությամբ։

Ներկայումս գործարանում յուրաքանչյուր բանվորին ընկնող կոնվեյեր գծերի երկարությունը կազմում է 0,65 մետր։ Վերջին հինգ տարում բանվորի միջին տեսակարար էներգածանրաբեռնվածությունը աճեց 40 տոկոսով և կազմում է 5,4 կվտ ժամ։ Այդ բոլորը և մի շարք այլ կարևորագույն միջոցառումներ զգալի չափով մեքենայացրել են ծանր և աշխատատար տեխնոլոգիական պրոցեսները, բարձրացրել են աշխատանքի արտադրողականությունը, բարելավել արտադրանքի որակն ու արտադրության կուլտուրան։

Սակայն, յոթնամյա պլանով տրված խնդիրները նկատի ունենալով, ձեռք բերված արդյունքներն ամենևին էլ բավարար չեն։ Պետք է ասել, որ ներկայումս գործարանի կողմից թողարկվող արտադրանքի առանձին տեսակները մշակվել և սերիական թողարկման համար ընդունվել են ավելի քան 10 տարի առաջ և այժմ դրանք բարոյապես հնացած են։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի որոշման լույսի տակ Հայէլեկտրագործարանին կից Գիտահետազոտական ինստիտուտի ֆիլիալի կոլեկտիվի առաջ ծառացած են հետագա էլ ավելի խոր տեխնիկական վերազինման խնդիրներ։ Այդ խնդիրների բովանդակությունը բավականաչափ բարդ է և դրանք պահանջում են ստեղծել նոր կոնստրուկցիաներ, ոչ ստանդարտային սարքավորում, նոր կինեմատիկ և էլեկտրական սխեմաներ, հատուկ գործիքներ ու ապարատներ։ Պետք է կարծել, որ գործարանում արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման հետագա ավարտման պահանջները առանձին դեպքերում առաջ կբերեն արտադրության արմատական վերակառուցում և կհասցնեն այն բանին, որ կստեղծվեն արտադրության նոր տեխնոլոգիական եղանակներ։

Այդ խնդիրների լրջությունը ստիպում է մտածել այն մասին, որ անհրաժեշտ է դրանք լուծել մի շարք գիտահետազոտական կազմակերպությունների ու գործարանների համատեղ ջանքերով, ընդ որում այդ աշխատանքները կոորդինացնելու գործում ղեկավար դերը պետք է պատկանի Պետական գիտա-տեխնիկական կոմիտեին և Ժողովրդական տնտեսության խորհրդին։

Պետք է ասել, որ պլանավորող կազմակերպությունների մեղքով հաճախ նոր արտադրանքների թողարկումը կատարվում է առանց հները հանելու, որպիսի հանգամանքը հասցնում է այն բանին, որ մեծանում է առանց այն էլ մեծ նոմենկլատուրան։ Հին և նոր տեխնիկայի զուգահեռ թողարկումը ստիպում է մանրատել արտադրական տեղամասերը, սահմանափակում է մասնագիտացումը և, հետևապես, տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման հնարավորությունները։

Նոր կոնստրուկցիաների մշակման ու արտադրության մեջ դրանց ներդրման ժամկետների կրճատումը սերտ կախման մեջ է գտնվում լաբորատոր-հետազոտական և փորձա-արտադրական բազաներից։ Ներկայումս ոչ

*միայն Հայէլեկտրագործարանում, այլև ռեսպուբլիկայի մի շարք ձեռնարկություններում ու գիտա-հետազոտական կազմակերպություններում այդ բազան կամ ընդհանրապես բավարար չէ, կամ պահանջվող չափով չի համապատասխանում նոր տեխնիկայի վերաբերյալ հեռանկարային խնդիրների լուծմանը:*

*Նոր տեխնիկայի, մեքենայացման և ավտոմատացման ուղղությամբ այդ խնդիրների կենսագործումը (որոնք կանգնած են գործարանի և ֆիլիալի առջև 1959 թվականին և յոթնամյա պլանով), ներկայումս հանդիպում է մի շարք լուրջ դժվարությունների: Այդ հետևանք է այն բանի, որ գիտա-հետազոտական, փորձա-կոնստրուկտորական աշխատանքների կազմակերպման և պլանավորման մինչև այժմ երկրում գոյություն ունեցող ձևերը չեն համապատասխանում այդ աշխատանքների նոր բովանդակությանը և զարգացման այն արագ տեմպերին, որպիսիք բխում են պարտիայի պահանջներից:*

*Նոր տեխնիկայի գծով առաջադրանքների դիրեկտիվ պլանավորումը մեծ մասամբ կատարվում է նյութա-տեխնիկական բազան հաշվի չառնելով և նրանից բոլորովին կտրված, մի բազա, որն ամբողջապես որոշում է այդ առաջադրանքների կատարումը:*

*Նոր արտադրանքների նյութա-տեխնիկական ապահովումը միանգամայն անբավարար է: Նյութերի, կիսաֆաբրիկատների և կոմպլեկտավորող արտադրանքների հայտերի սիստեմը, որ սահմանված է սերիական արտադրանք թողարկող գործարանների համար, ըստ «ընթացիկ տարում՝ եկող տարվա համար» սկզբունքի, անընդունելի է գիտա-հետազոտական և փորձա-կոնստրուկտորական աշխատանքների համար:*

*Ակնհայտ է, որ նոր կոնստրուկցիաների համար նոր նյութերն ու կոմպլեկտավորումները պետք է շատ կարճ ժամկետում ապահովվեն համապատասխան ֆոնդերով, երբ կլինեն դրանց նկատմամբ տեխնիկապես հիմնավորված պահանջներ, անկախ սերիական արտադրանք թողարկող գործարանների կողմից հայտեր ներկայացնելու համար սահմանված կարգից:*

*Բայց եթե նյութա-տեխնիկական մատակարարման ու նրա պլանավորման գոյություն ունեցող դրությունը հասցնում է փորձնական նմուշների ու արտադրանքների ձախողման, ապա դա պակաս բացասաբար չի անդրադառնում արդեն ավարտված արտադրանքների ներդրման վրա, ինչպես վերջին երկու տարում այդ տեղի ունեցավ մեր գործարանում՝ ֆիլիալի և գործարանի կողմից մշակված նոր ընդհանուր-միութենական սերիայի գեներատորների և տրանսֆորմատորների վերաբերմամբ:*

*Արդյունաբերության մեջ նոր տեխնիկայի ներդրման ժամկետների ձգձգումը զրկում է ժողովրդական տնտեսության մեջ այդ տեխնիկան արագությամբ օգտագործելու հնարավորությունից, ստիպում է արտադրության մեջ կազմակերպել հին ու նոր կոնստրուկցիայի զուգահեռ թողարկում, ոչ շահաբեր է դարձնում այն մեծ ծախսերը, որ կատարվում են նոր կոնստրուկցիաների մշակման վրա, որոնք արագությամբ բարոյապես մաշվում են:*

*Տեխնիկական պրոգրեսի նպատակով ձեռնարկություններին ու գիտահետազոտական կազմակերպություններին ամեն տարի առաջադրանքներ են տալիս՝ Ժողտնտխորհի ճյուղային վարչությունը, Ժողտնտխորհը, ռեսպուբլիկայի Պետպլանը, Ռեսպուբլիկական Պետական գիտա-տեխնիկական կոմիտեն, ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը, ՍՍՌՄ Պետական գիտա-տեխնիկական կոմիտեն և Միության Պետպլանը: Ինչպես երևում է, նոր տեխնիկայի*



*գծով պլանային առաջադրանքներ քննարկող և այդպիսիք տվող ինստանցիաներ բավական շատ են, բայց այդպիսի պլանը և առաջադրանքը ոչ մի ինստանցիայում չի դիտվում այն տեսանկյունով, թե ինչ միջոցով, ինչ նյութա-տեխնիկական բազայի վրա պետք է կատարվեն այդ աշխատանքները:*

*Այստեղից էլ ծագում են մեծ դժվարություններ մեքենաների, մեխանիզմների, գործիքների, ավտոմատացման և մեքենայացման միջոցների ստեղծման, դրանց պատրաստման ու հետազոտման գործում, ձգձգվում է արտադրության մեջ դրանց ներդրումը:*

*Ժողտնտխորհը, Պետական գիտա-տեխնիկական կոմիտեն և Պետպլանը պետք է գտնեն ղեկավարման նոր կազմակերպական ձևեր, մեկ տեղում միավորելով նոր տեխնիկայի ուղղությամբ տարվող աշխատանքների պլանավորման ֆունկցիան և այդ աշխատանքներն անհրաժեշտ նյութա-տեխնիկական միջոցներով ու ֆինանսներով ապահովելու իրավունքը:*

Վ. ՄԻՆԱՍՅԱՆ
Երևանի հայէլեկտրամեքենաշինական
գործարանի դիրեկտոր

## ՀԱՋՈՂ ՔԱՅԼԵՐ

*Հայաստանի քիմիական արդյունաբերությունը նորագույն տեխնիկայով հագեցնելու և նրա տեխնոլոգիական պրոցեսներն ավելի կատարելագործելու համար անհրաժեշտ է ճշգրտել կապիտալ ներդրումների իրացումը: Այժմ մեր գլխավոր խնդիրն այն է, որ արժեքավոր գիտա-տեխնիկական նվաճումները պրակտիկ կերպով օգտագործվեն: Այդ կապակցությամբ մեզ թվում է, որ այնքան էլ ճիշտ չեն ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության զարգացման վերաբերյալ նախատեսված մի քանի միջոցառումները:*

*Կիրովի անվան գործարանի վերակառուցման և ընդլայնման նախագիծը պարունակում է գործարանի տեխնիկայի և մեր օրերի տեխնիկական նվաճումների միջև ճեղքվածքի արհեստական մեծացման տարրեր: Գործարանը կառուցված է ավելի քան 20 տարի առաջ, իսկ նրա վերակառուցումն այսօր նախատեսվում է որոշ դեպքերում հարցերը լուծել քանամյա հնություն ունեցող տեխնիկայի հիման վրա: Արհեստական սառեցումը, որ անհրաժեշտ է գործարանի պրոցեսներում, պետք է ընդարձակվի ավելի քան երկու անգամ: Սակայն տարօրինակ է, երբ նախատեսվում է այն կենսագործել հնացած և նվազ արտադրողական սարքավորման օգնությամբ, թեև Միությունում արդեն մշակված է խոշոր սառցարանային սարքավորման նոր մոդելների թողարկում:*

*Պակաս զարմանք չի առաջացնում այն հանգամանքը, որ Գիպրոկաուչուկի ընդունած որոշմամբ, արդեն սկսվել և լիակատար ընթացքով կատարվում է սառցարանային ցեխի շինարարությունն այդ հնացած սարքավորման հիման վրա, թեև այդ ցեխի ընդլայնած կարողությունը հարկավոր է միայն 1962—1963 թթ.: Դրա հետևանքով ժողովրդական տնտեսության ոլորտից հանվում են այնպիսի սառցարանային մեքենաներ, որոնց կարիքը երկիրը լրջորեն զգում է: Այսպիսով, երեք-չորս տարով կապիտալ ներդրումները մնում են մեռած և, վերջապես, մենք վերակառուցված գործարանի կազմում*

*կունենանք հետամնաց և նվազ արտադրողական տեխնիկա: Եթե գործարանի սառցարանային տնտեսության զարգացման հարցերի լուծումը նախապես մշակվեր մասնագետների կողմից, մենք այդ երևույթին չէինք հանդիպի:*

*Գործարանի սխեմայում կա շատ կարևոր և իր տեխնոլոգիայով շատ նուրբ 1—9 ցեխը, որը բազմաթիվ վերակառուցումների, վերանորոգումների արդյունք է: Տեխնիկայի վիճակը ցեխում ցածր է, արտադրության կուլտուրան հետամնաց: Գիպրոկաուչուկը որոշում է ընդունում կրկին վերակառուցել այդ ցեխը՝ նրա աշխատանքի պրոցեսում, ըստ էության պահպանելով ցեխի տեխնիկայի բոլոր անհարմարությունները: Կիրովականի Քիմիայի գիտա-հետազոտական ինստիտուտի հաշվումները ցույց տվին, որ տեխնիկայի ժամանակակից բոլոր հնարավորությունները նկատի ունենալով, այդ ցեխի սարքավորումը փոխելու և այն մոնտաժի ենթարկելու համար կարելի է 6 միլիոն ռուբլու փոխարեն ներդնել միայն 4 միլիոն ռուբլի, էլ չխոսելով այն հսկայական տնտեսման մասին, որ կստացվի կատարելագործված սարքավորումը շահագործելու հաշվին: Մենք այժմ Ժողտնտխորհ ենք ներկայացնում այդ հարցի լուծման մեր վարիանտը և պնդում ենք այն ընդունել:*

*Գործարանն ունի քլորային ջրածնի սինթեզի կազմակերպման դեռևս չավարտված, բայց հեռանկարային փորձ: Թվում էր, թե 1963—1964 թթ. համար նախատեսված կարողությունների ընդլայնման գործում կարելի կլինի նախագծային առաջադրանքում նախատեսել այդ պրոգրեսիվ փորձը՝ միաժամանակ պլանավորելով նոր կառուցվածքի վառարանների տեխնիկական մշակման ավարտումը: Դրա փոխարեն նախագծվում է տեղադրել հին կառուցվածքի 11 վառարաններ՝ 2—3 նոր վառարանների փոխարեն: Նույնիսկ գործարանը այդ էլ քիչ համարելով պահանջում է տեղադրել 13 վառարան:*

*Այսպիսի օրինակներ կան և Պոլիվինիլացետատ գործարանի ընդլայնման գործում, որի նախագիծը գործնականում պահպանում է տեխնիկայի այն մակարդակը, որն ընդունված էր գործարանի տեղակայումներում դեռ նախապատերազմյան նախագծերով:*

*Մեր ինստիտուտի գիտա-հետազոտական կոլեկտիվն արդեն ծավալել է իր աշխատանքը այս բնագավառում: Այսպես, պոլիմերիզացիայի պրոցեսների լաբորատորիան աշխատանքի կարճ ժամանակամիջոցում հայտաբերեց Պոլիվինիլացետատ գործարանում տեխնիկայի բարելավման, ինչպես նաև պոլիվինիլային սպիրտների հիման վրա նոր արտադրանքների ստեղծման հսկայական հնարավորություններ:*

*Արդեն այժմ ստացված են նպաստավոր արդյունքներ անընդհատ պոլիմերացման գծով, անընդհատ ալկոհոլիզմի գծով: Հաջողությամբ մշակվում է պոլիվինիլային սպիրտի հիման վրա բարձրորակ սինթետիկ մանրաթելի արտադրության տեխնոլոգիան:*

*Ըստ նախնական տվյալների, նոր սինթետիկ մանրաթելի որակական ցուցանիշները շատ լավ են: Հավանաբար մոտ ժամանակում մենք առաջարկություն կմտցնենք Հայաստանում այդ մանրաթելի արտադրություն կազմակերպելու մասին: Կարելի է հուսալ, որ մեր լաբորատորիայի նոր մանրաթելը արժանի տեղ կգրավի ժամանակակից սինթետիկ նյութերի շարքում:*

*Այժմ ինստիտուտն աշխատում է նաև Երևանի ՍԿ գործարանում՝ բնական գազից ստացվելիք ացետիլենի հետագա արտադրության մեջ նախատեսված կապիտալ ներդրումները կրճատելու հարցի վրա:*



*Այսպիսով, ինստիտուտի վաղ ժամանակաշրջանի աշխատանքի օրինակների հիման վրա արդեն այժմ պարզորոշ երևում է Հայաստանում Քիմիայի գիտահետազոտական և նախագծային ինստիտուտի կազմակերպման նպատակահարմարությունը: Կարելի է վստահ ասել, որ ինստիտուտի օգնությամբ, Ժողտնտխորհը հնարավորություն կստանա միլիոններ տնտեսել կապիտալ ներդրումների գործում:*

*Բայց մենք կարո՞ղ ենք արդյոք լիարժեք կերպով փոխարինել կենտրոնական նախագծային հիմնարկություններին և մեր քիմիական կառույցներն ապահովել լիարժեք տեխնիկական դոկումենտացիայով, և ի՞նչ է հարկավոր դրա համար:*

*Մեզ հարկավոր է նախագծային աշխատանքների ծանրաբեռնվածություն 1960 թվականի համար: Մենք առաջարկում ենք ամբողջովին ինստիտուտի վրա դնել գլխավոր կապալային հանձնարարությունները Կիրովի անվան գործարանի և Կիրովականի քիմկոմբինատի վերակառուցման նախագծումները կատարելու համար:*

*Անհրաժեշտ է, որպեսզի Հայկ. ՍՍՌ Պետպլանը և Ժողտնտխորհի համապատասխան բաժինները ճանաչեն ինստիտուտի նախագծային մասի գոյությունը և նրա հնարավորությունները:*

*Ժողովրդական տնտեսության խորհուրդը ինստիտուտի համար կապիտալ շինարարության լավ պլան է հաստատել, սակայն կապիտալ շինարարության վարչությունը վատ է օգնում՝ ինստիտուտի շենքի կառուցման գործում:*

*Ինստիտուտի համար կադրերի հիմնական աղբյուրը Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտն է, որը պատրաստել է ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության բոլոր պրակտիկ կադրերը, տվել է տաղանդավոր և ընդունակ շատ ինժեներներ: Սակայն, այժմ Պոլիտեխնիկ ինստիտուտում ինժեներների պատրաստման որակի նկատմամբ պահանջը պետք է բարձրացվի: Պահանջվում է խորապես բարելավել ռուսաց լեզվի տիրապետումը ինժեներների կողմից:*

*Ինժեներական կադրերի պատրաստման հարցի կապակցությամբ կուզենայի կրկին նշել Պոլիտեխնիկ ինստիտուտի Կիրովականի ֆիլիալ բացելու անհրաժեշտության մասին: Այդ հարցը հասունացել է և դա հեշտությամբ լուծելու համար պայմաններ կան: Կիրովականի երիտասարդությունը, մեր կարծիքով, ուրախությամբ կներգրավվի այդպիսի ֆիլիալում՝ երեկոյան ուսուցման համար:*

*Մեր առջև մեծ ու կարևոր խնդիրներ են ծառացած մեր արդյունաբերության տեխնիկայի մակարդակը նոր բարձրության հասցնելու ուղղությամբ: Այժմ մեր գիտա-տեխնիկական հասարակայնությունը նշանակալիորեն ավելի ուժեղ է և ամուր, քան առաջ: Մեզ մոտ աշխատանքի մեծ փորձ է կուտակվել: Եթե դրան ավելացնենք մեր գիտա-տեխնիկական կազմակերպությունների անհրաժեշտ կազմակերպվածությունն ու հստակ կատարողականությունը, ապա տարակույս չի լինի, որ յոթնամյակի առաջադրանքը, ինչպես արտադրանքի մակարդակի գծով, այնպես էլ տեխնիկայի գծով, որոշակիորեն կգերազանցվի:*

Է. ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ

Կիրովականի Քիմիայի գիտա-հետազոտական նախագծային ինստիտուտի դիրեկտոր

# ՆԵՐՊԱՐՏԻԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ԱՆԽԱԽՏ ՕՐԵՆՔՆ Է

*ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

*Ներպարտիական դեմոկրատիան պարտիայի կազմակերպական կառուցվածքի ղեկավար սկզբունքի՝ դեմոկրատական ցենտրալիզմի անկապտելի մասն է։*

*Պարտիան ամրապնդվում է և նրա կապերը մասսաների հետ բազմապատկվում են, եթե նրանում հետևողականորեն կիրառվում են ներպարտիական դեմոկրատիան, քննադատությունը և ինքնաքննադատությունը։ Ներպարտիական դեմոկրատիան ապահովում է կոմունիստների, պարտիական կազմակերպությունների ակտիվության և նախաձեռնության զարգացումը։*

*Պարտիական մասսաների ակտիվությունը բարձրացնելու նպատակով ՍՄԿՊ Կանոնադրությունը սահմանել է պարտիայի անդամի իրավունքները՝ մասնակցել պարտիական քաղաքականության հարցերի ազատ ու գործարար քննարկմանը պարտիական ժողովներում կամ պարտիական մամուլում, պարտիական ժողովներում քննադատել պարտիական ամեն մի աշխատողի, ընտրել և ընտրվել պարտիական օրգաններում, պահանջել անձնական մասնակցություն այն բոլոր դեպքերում, երբ որոշում է կայացվում նրա գործունեության կամ վարքի մասին։*

*Ներպարտիական դեմոկրատիան նպաստում է պարտիայի Կանոնադրության, պարտիայի ու կառավարության որոշումների հաջող կատարմանը, պարտիայի ներսում երկաթյա, գիտակցական կարգապահության ամրապնդմանը։*

*Պարտիայի XX համագումարը մարքսիստական-լենինյան սկզբունքայնությամբ բացահայտեց մեր աշխատանքի թերությունները ու սխալները, ելնելով մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթներից, քննադատության ենթարկեց անհատի պաշտամունքի հետ կապված սխալները և նշեց պարտիական կյանքի լենինյան նորմաների վերականգնման միջոցառումներ։ Պարտիայի XXI համագումարը նշեց, որ XX համագումարից հետո անցած ժամանակաշրջանում պարտիան հետևողականորեն կիրառել է ներպարտիական դեմոկրատիայի, քննադատության և ինքնաքննադատության ծավալման, պարտիական մասսաների ակտիվության բարձրացման գիծ։ Դա նպաստեց պարտիական կյանքի լենինյան նորմաների, կոլեկտիվ ղեկավարման սկզբունքների վերականգնմանը և հետագա զարգացմանը, պարտիայի գործունեության բարելավմանը, առաջ բերեց քաղաքական և աշխատանքային նոր վերելք։*



## I

*Ներպարտիական դեմոկրատիայի հիմքը, մեր պարտիայի դեմոկրատական կառուցվածքի կարևորագույն սկզբունքը ընտրականությունն ու հաշվետվությունն է։*

*Դեմոկրատիզմը, ասում է Վ. Ի. Լենինը, նշանակում է, որ «...պարտիայի բոլոր գործերը վարում են, ուղղակի կամ ներկայացուցիչների միջոցով, պարտիայի բոլոր անդամները, հավասար իրավունքներով և առանց որևէ բացառության, ընդ որում պարտիայի բոլոր պաշտոնատար անձերը, բոլոր ղեկավար կոլեգիաները, բոլոր հիմնարկները ընտրովի են, հաշվետու, փոփոխելի» (Երկեր, հատ. 11, էջ 546)։*

*Պարտիական հաշվետու-ընտրական ժողովները և պարտիական կոնֆե-*
*րանսները բարձրացնում են կոմունիստների ակտիվությունը, ապահովում են*
*նրանց գործարար մասնակցությունը պարտիական որոշումների մշակմանը,*
*դրանով իսկ բարձրացնում են նրանց պատասխանատվությունն իրենց կազ-*
*մակերպության աշխատանքի համար։ Երևան քաղաքում պարտիական ան-*
*ցած հաշվետու ընտրական ժողովներին մասնակցած բոլոր կոմունիստների*
*ավելի քան 38 տոկոսը հանդես եկավ պարտիական բյուրոների և սկզբնական*
*պարտիական կազմակերպությունների քարտուղարների հաշվետու զեկուցում-*
*ների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը։*

*Ընտրականությունը, առաջադրված թեկնածուների լայն քննարկումը,*
*կոմունիստների կոլեկտիվ կարծիքը հնարավորություն են տալիս պարտիա-*
*կան ղեկավար օրգաններում ընտրել ակտիվ, եռանդուն, նախաձեռնող, քա-*
*ղաքական և գործարար լավ հատկություններով օժտված կոմունիստների։*
*Ներկայումս Երևան քաղաքի սկզբնական պարտկազմակերպությունների և*
*բյուրոների քարտուղարների մոտ 65 տոկոսն ունի բարձրագույն և թերի*
*բարձրագույն կրթություն։*

*Պարտիական կազմակերպությունների ժողովներում կոմունիստները*
*համակողմանիորեն քննարկում են տվյալ ձեռնարկության ու հիմնարկի գոր-*
*ծունեության հետ կապված կենսական հարցեր։ Պարտիական ժողովներում*
*քննարկվող հարցերը նախապատրաստվում են կոմունիստների անմիջական*
*մասնակցությամբ։ Շատ կարևոր է, երբ կոմունիստները վաղօրոք տեղյակ*
*են լինում գործի էությանը, այն ժամանակ նրանք ակտիվ մասնակցություն*
*են ունենում հարցերի քննարկմանը և իրենց առաջարկություններով օգնում*
*են ընդունելու գործարար որոշումներ։*

*Երևանի Սպանդարյան շրջանի շատ սկզբնական պարտիական կազմա-*
*կերպությունների ժողովներում հաղորդումներ են տրվում նախկինում ըն-*
*դունած որոշումների կատարման մասին։ Դա բարձրացնում է հանձնարարու-*
*թյուններ ստացող կոմունիստների պատասխանատվությունը և մարդկանց*
*կարգապահ է դարձնում։*

*Այժմ սկզբնական պարտիական կազմակերպությունները դարձել են ավելի մարտունակ, ընդունակ՝ հաջողությամբ լուծելու իրենց առջև դրված խնդիրները, պարտկազմակերպությունները սկսել են ավելի խոր զբաղվել արտադրության, էկոնոմիկայի հարցերով, իսկ կոմունիստներն իրենց ավելի մեծ չափով են դրսևորում որպես մասսաների կազմակերպիչներ, պետական առաջադրանքների կատարման ու գերակատարման համար մարտնչողներ։*

Ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքը, որ վերապահված է ՍՄԿՊ Կանոնադրությամբ, պարտիական դեմոկրատիայի արտահայտություններից մեկն է։ Օգտվելով այդ իրավունքից, պարտիական կազմակերպությունները բարձրացնում են իրենց մարտունակությունը, խորամուխ են լինում արտադրական հարցերի մեջ, կոլեկտիվներին մոբիլիզացնում են արտադրանքի թողարկումը ավելացնելու, նոր տեխնիկան արմատավորելու համար։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումում խոսելով ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական կազմակերպությունների վերահսկողության ֆունկցիայի մասին, նշեց, որ հասունացել է այդ վերահսկողությանը կազմակերպական ձևեր տալու անհրաժեշտությունը։ Վերջերս ՍՄԿՊ Կենտկոմը սահմանեց այդ ձևերը։ Կենտկոմը նպատակահարմար գտավ արտադրական, տրանսպորտի, շինարարական և առևտրական ձեռնարկությունների, ինչպես նաև ձեռնարկությունների ու կառույցների պատվերները կատարող նախագծային կազմակերպությունների, կոնստրուկտորական բյուրոների և գիտահետազոտական ինստիտուտների սկզբնական պարտիական կազմակերպություններում պարտիայի անդամներից և թեկնածուներից ստեղծել պարտիական կազմակերպությունների կողմից ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքը իրականացնող հանձնաժողովներ։ Այդ հանձնաժողովները կոչված են սիստեմատիկ վերահսկողություն ապահովել ձեռնարկությունների կողմից արտադրական առաջադրանքները, պետական պատվերներն ու մատակարարումները ժամանակին կատարելու նկատմամբ՝ արտադրանքի ամբողջ նոմենկլատուրայի և բարձր որակի հետ միասին։ Նրանք պետք է հետևեն, որ ձեռնարկության բոլոր աշխատողները խստորեն պահպանեն պետական կարգապահությունը, պայքարեն տեղայնության և նեղ գերատեսչական մոտեցման դրսևորումների դեմ, որոնք վնաս են հասցնում համապետական շահերին։ Նրանք կարող են բողոքարկել ադմինիստրացիայի որոշումը, պարտիական ու սովետական օրգաններին զեկուցել ապօրինի, սխալ գործողությունների մասին, այն որոշումների մասին, որոնք հակասում են օրենքներին կամ պարտիայի ու կառավարության որոշումներին։

Այժմ, երբ պարտիական կազմակերպություններն աճել և ավելի ամուր են դարձել կազմակերպական և գաղափարական տեսակետից, ոչ մի վտանգ չկա, թե վերահսկողության հանձնաժողովների ստեղծումը կհանգեցնի ադմինիստրացիային փոխարինելու կամ միանձնյա ղեկավարության խախտումների։ «Իհարկե,— ասաց ընկեր Խրուշչովը,— այդպիսի հանձնաժողովները յուրահատուկ սանձ կլինեն մի քանի «խիստ եռանդուն» աշխատողների համար, որոնք, այսպես ասած, ուզում են քայլել, հաշվի չառնելով ընդհանուր շահերը»։

Երևանի արդյունաբերական և առևտրական ձեռնարկությունների, տրանսպորտի և շինարարական օբյեկտների, նախագծային և գիտահետազոտական ինստիտուտների սկզբնական պարտիական կազմակերպություններում արդեն ստեղծված է այդպիսի ավելի քան 380 հանձնաժողով, որոնցում ընդգրկված են մոտ 1869 պարտիայի անդամ և թեկնածու՝ առավել պատրաստված, սկզբունքային, ակտիվ կոմունիստներ, որոնք ի վիճակի են իսկական վերահսկողություն կազմակերպել պարտիայի և կառավարության դիրեկ-



տիվների կատարման նկատմամբ։ Հանձնաժողովներն ստեղծված են պարտկազմակերպությունների հայեցողությամբ, արտադրության բնույթին համապատասխան։

Ներպարտիական դեմոկրատիայի ծավալման գործում մեծ դեր են խաղում պարտիայի շրջկոմների, քաղկոմների պլենումները։ Դրանք կոլեգիալ ղեկավարության կարևորագույն պայման են։ Պլենումներում կոլեկտիվ կերպով քննարկվում են պարտիայի և կառավարության կարևորագույն որոշումները, տվյալ պարտիական կազմակերպության առաջնահերթ խնդիրները։

Պարտիայի Կանոնադրության համաձայն, պարտիայի ու կառավարության կարևոր որոշումների քննարկման համար քաղաքներում ու շրջանային կենտրոններում գումարվում են քաղաքային ու շրջանային պարտիական կազմակերպությունների ակտիվի ժողովներ, որոնք պարտիայի հասարակական կարծիքի արտահայտիչներն են։ Դա բխում է ՍՄԿՊ Կանոնադրության այն պահանջից, որ պարտիական քաղաքականության հարցերի ազատ ու գործարար քննարկումը պարտիայի յուրաքանչյուր անդամի անկապտելի իրավունքն է, որը բխում է ներպարտիական դեմոկրատիայից։

Դեմոկրատական ցենտրալիզմի ճշգրիտ կիրառումը, պարտիական ժողովների, կոնֆերանսների, համագումարների, պարտիական կոմիտեների պլենումների սիստեմատիկ գումարումը, պարտիական օրգանների անպայման ընտրականությունը, ղեկավար պարտիական օրգանների համար թեկնածուներ առաջադրելու և թեկնածուների դեմ առարկելու իրավունքը, փակ քվեարկությունը, քննադատության և ինքնաքննադատության ազատությունը, այս բոլորը պարտիական մասսաներին հնարավորություն են տալիս ստուգելու պարտիական ղեկավարներին, ապահովելու հսկողություն նրանց նկատմամբ։

## II

Ներպարտիական դեմոկրատիան պահանջում է անշեղորեն կենսագործել կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբունքը, որը մեր պարտիայի կազմակերպական կարևորագույն սկզբունքն է։

Լենինը գտնում էր, որ միայն կոլեկտիվ ղեկավարությունն է համապատասխանում պարտիայի բնույթին և նրան ապահովում լուրջ սխալներից։ Լենինն ինքը կոլեգիալ ղեկավարության օրինակ էր տալիս։ Սկզբունքային հարցերը երբեք չէր լուծում միանձնաբար։ Երբ մի անգամ Լենինին դիմում են համապարտիական նշանակություն ունեցող մի հարցով, նա պատասխանում է. «...ես անձամբ չեմ կարող որոշել պարտիայի փոխարեն կամ նրա անունից» (Երկեր, հատ. 9, էջ 173)։

Ղեկավարության կոլեկտիվության լենինյան սկզբունքի կենսագործման հիանալի օրինակ է տալիս ՍՄԿՊ Կենտկոմը, որի մարքսիստական-լենինյան թեորիայի գիտական հիմքի վրա հենվող կոլեկտիվ փորձը և կոլեկտիվ իմաստնությունը ապահովում են պարտիայի և երկրի ճիշտ ղեկավարումը։ Դա առանձնապես նկատելի է վերջին տարիների ընթացքում. ընդլայնվել է ՍՄԿՊ Կենտկոմի, նրա Նախագահության և Քարտուղարության կազմը։ Այժմ պարբերաբար գումարվում են ՍՄԿՊ Կենտկոմի պլենումները, պարտիայի համագումարները, որոնց ընդունած ամեն մի որոշում, որ գու-

հունակությամբ են ընդունում մեր ամբողջ պարտիան և ժողովուրդը, կոլեկտիվ մտքի, կոլեկտիվ ղեկավարության արգասիք է։

Կոլեգիալ ղեկավարությունը արմատավորվել է նաև տեղական պարտիական օրգաններում։ ՍՄԿՊ Կանոնադրության համաձայն պարբերաբար տեղի են ունենում պարտիայի քաղկոմների, շրջկոմների պլենումներ, շրջանային և քաղաքային պարտիական կոնֆերանսներ։ Շրջկոմների և քաղկոմների բյուրոների նիստերում հարցերը քննարկվում և վճռվում են կոլեկտիվ կերպով։

Բայց ղեկավարման կոլեգիալությունը ամենևին էլ չի նշանակում, թե ոչ ոք ոչ մի բանի համար անձնապես պատասխանատու չէ։ Պահպանելով կոլեգիալության սկզբունքը, Լենինը միաժամանակ հանդես էր գալիս ղեկավար աշխատողների դերը նսեմացնելու դեմ։ Հարցերի կոլեկտիվ քննարկումը և որոշման կոլեկտիվ ընդունումը ոչ թե ժխտում, այլ ենթադրում են անձնական պատասխանատվություն։ Այն բանից հետո, երբ կոլեկտիվ որոշում է ընդունված, կոլեկտիվի ղեկավարը անձնապես պատասխանատու է դրա կենսագործման համար։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ «Կառավարման բոլոր հարցերի կոլեգիալ քննությանն ու վճռմանը սովետական հիմնարկներում պետք է հարակցի սովետական ամեն մի պաշտոնի մեջ գտնվող անձերից յուրաքանչյուրի ամենաճշգրիտ պատասխանատվության սահմանումը, պատասխանատվության պարզ ու աներկմտելի գծված որոշ առաջադրությունների և պրակտիկ աշխատանքների կատարման համար» (Երկեր, հատ. 28, էջ 448)։

Վ. Ի. Լենինը ժամանակին նշել է, որ դեմոկրատիզմը պետք է շաղկապել երկաթյա կարգապահության հետ։ Կարգապահությունը պարտիայի միասնության կարևոր պայմանն է։ Պարտիան միշտ անխնա է եղել նրանց նկատմամբ, ովքեր իրենց գործողություններով նպաստել են պարտիական կարգապահության թուլացմանը։ Մեր պարտիայի Կենտկոմը վերջին տարիներս մի շարք լուրջ միջոցառումներ իրականացրեց պարտիական և պետական կարգապահությունն ըստ ամենայնի ամրապնդելու ուղղությամբ։ Մեր կադրերը խստորեն պահպանում են պարտիական և պետական կարգապահությունը, իրենց բոլոր ուժերը նվիրաբերում են մեր առջև դրված լուրջ և պատասխանատու խնդիրների իրականացմանը։

Սակայն, ցավոք սրտի, դեռ կան աշխատողներ, որոնք խախտում են պարտիական և պետական կարգապահությունը, անտեսում են համապետական շահերը, դուրս են գալիս իրենց իրավունքների և լիազորությունների սահմաններից, չեն կատարում պարտիական ու սովետական օրգանների որոշումները։ Պարտիական և պետական կարգապահության խախտման փաստեր կան հենց մեզ մոտ՝ Երևանում։ Դա իր արտահայտությունն է գտնում տեղայնության դրսևորման, կապիտալ ներդրումներն ու նյութական ռեսուրսները ինքնագլուխ կերպով ոչ իրենց նպատակին օգտագործելու, կոոպերատիվ մատակարարումների պլանները ժամանակին չկատարելու մեջ։ Այսպես. Արզնու հանքային ջրերի գործարանը Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի Սննդի արդյունաբերության վարչության ենթակա ձեռնարկությունների գազի մատակարարման առաջին կիսամյակի պլանը կատարեց 94 տոկոսով, իսկ Ադրբեջանական ՍՍՌ-ինը՝ ընդամենը 43 տոկոսով։ Երևանի կաբելի գործարանը Վ. Ի. Լենինի անվան գործարանին տվել է նույնիսկ նախատեսվածից ավելի կաբել այն ժամանակ, երբ Ուկրաինայի Լուգանսկի տնտեսական վարչական շրջանի առանձին ձեռնարկություններ գրեթե ոչինչ չեն ստացել կոոպերատիվ մատակարարումների պլանի դիմաց։ Դա աններելի է։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմակերպություններից պահանջում է վճռականապես պայքարել պարտիական և պետական կարգապահության խախտումների դեմ՝ ինչ ձևով էլ դրանք դրսևորվեն, կադրերին, բոլոր աշխատողներին դաստիարակել պարտիայի և պետության շահերը խստությամբ պահպանելու, բարձր կարգապահության և պատասխանատվության ոգով։

Գլխավորը կազմակերպական աշխատանքում Լենինը համարում էր մարդկանց ընտրությունը և կատարման ստուգումը, առանց որի ամեն մի՝ նույնիսկ լավ որոշում թղթի վրա մնալու ռիսկի է ենթարկված։ «Մեզ պետք է մարդկանց պիտանիության ստուգումը,— ասում էր Լենինը,— փաստական կատարման ստուգումը... Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը,— ա՛յս է, դարձյալ ա՛յս է, միմիայն ա՛յս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը» (Երկեր, հատ. 33, էջ 264—265)։

Մեր պարտիան միշտ էլ մեծ նշանակություն է տվել կադրերի հարցին։ ՍՄԿՊ XXI համագումարը խնդիր դրեց ղեկավար աշխատանքի առաջ քաշել պատրաստված, գործիմաց, ձեռներեց մարդկանց, այնպիսիներին, որոնք իրենց բոլոր ուժերն ու գիտելիքները նվիրաբերեն ժողովրդի բարօրությանը, աշխատանքում մտցնեն ռևոլյուցիոն ավյուն, բոլշևիկյան կրքոտություն, սկզբունքայնության ոգի, ունենան նորի զգացում։ Պարտիայի XXI համագումարում և ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Հունիսյան պլենումում շատ խոսվեց հին և երիտասարդ կադրերի աշխատանքը ճիշտ զուգակցելու անհրաժեշտության մասին։ Հարկավոր է համարձակորեն առաջ քաշել երիտասարդ կադրերին, նրանց չհակադրելով հին կադրերին։



## III

Ներպարտիական դեմոկրատիան ենթադրում է քննադատության և ինքնաքննադատության լայն զարգացում։ Մարքսիստական պարտիան աներևակայելի է առանց քննադատության և ինքնաքննադատության։ Շատ տարիներ առաջ Վ. Ի. Լենինը գրել է՝ «...Ինքնաքննադատությունն անպայման անհրաժեշտ է ամեն մի կենդանի ու կենսունակ պարտիայի համար» (Երկեր, հատ. 8, էջ 575)։

Պարտիան միշտ քննադատությունը և ինքնաքննադատությունը ծավալելու կոչ է արել։ «Անհրաժեշտ է միշտ և ամենուրեք,— ասաց ընկեր Խրուշչովը ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Հունիսյան պլենումում,— զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, խոզանակը ձեռքին շրջել և մաքրել այնտեղ, որտեղ կուտակվել է փոշի կամ կեղտ, որպեսզի մաքուր և առույգ պահվեն մեր պարտիական օրգանիզմը, մեր սովետական և տնտեսական օրգանները»։

Առանց քննադատության ու ինքնաքննադատության չկա առաջխաղացում, չկա զարգացում։ Այն մշտապես գործող միջոց է, պարտիական աշխատանքի մեթոդ, պարտիայի հզոր զենքը կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։ Պարտիան հաշվի չի առնում այն, որ թշնամիները կարող են չարա-

շահել մեր գործունեության ասպարեզներում տեղ գտած թերություններն ու պակասությունները, որոնք բացահայտվում են իր իսկ պարտիայի կողմից։ Պարտիան միշտ էլ արհամարհել է այդ առթիվ արված թշնամիների չարախնդումները, քաջ գիտակցելով, որ իր առաջընթացի գրավականը՝ սեփական սխալների ու թերությունների հաղթահարումն է։

Մեր պարտիան միշտ ընթացել և ընթանում է քննադատությունը և ինքնաքննադատությունը համարձակորեն ծավալելու ուղիով։ Քննադատությունը բացառիկ մեծ նշանակություն է ստանում սոցիալիզմի հաղթանակի և աստիճանաբար կոմունիզմին անցնելու պայմաններում։ Քննադատությունը և ինքնաքննադատությունը մեր կադրերի, բոլոր կոմունիստների ճիշտ դաստիարակության, կարգապահության բարձրացման հզոր միջոց է։ Պարտիան քննադատության փորձված զենքով պայքարում է մարդկանց գիտակցության մեջ պահպանված կապիտալիզմի մնացուկների դեմ, հասարակական կարծիքի կրակն ուղղում է այն ամենի դեմ, ինչ ապրել է իր դարը, ինչ արգելակում է մեր առաջընթացը։

Կոմունիստական պարտիան մեր երկրի միակ պարտիան է, կառավարող պարտիան և նա չի կարող չքննադատել ինքն իրեն, չուղղել սեփական սխալները։ Փորձը ցույց է տալիս, որ պարտիան դառնում է անպարտելի, եթե նա չի վախենում քննադատությունից և ինքնաքննադատությունից, եթե նա չի կոծկում սխալները, այլ կադրերին սովորեցնում և դաստիարակում է սեփական սխալները ժամանակին և վճռաբար ուղղելու միջոցով։

Մեր պարտիան համարձակորեն բացահայտում է իր աշխատանքի թերությունները։ Ժողովրդից երբեք չի թաքցնում իր գործունեության բացասական կողմերն ու սխալները, ինչպես այդ անում են կապիտալիստական երկրների կառավարող պարտիաները։ Դա մեր ոչ թե թուլության, այլ ուժի նշանն է։ «Մինչև այժմ կործանված բոլոր ռևոլյուցիոն պարտիաները,—նշել է Վ. Ի. Լենինը,—կործանվել են այն բանից, որ մեծամտել են և չեն կարողացել տեսնել, թե ինչո՛ւմ է իրենց ուժը, և վախեցել են խոսել իրենց թուլությունների մասին։ Իսկ մենք չենք կործանվի, որովհետև չենք վախենում խոսել մեր թուլությունների մասին, և կսովորենք հաղթահարել այդ թուլությունները» (Երկեր, հատ. 33, էջ 367)։

Որքան էլ նշանակալից լինեն մեր հաջողությունները, պարտիան կոչ է անում չհանգստանալ ձեռք բերածով, տեսնել, նկատել աշխատանքում եղած սխալները, բացերն ու թերությունները, հաստատակամորեն հաղթահարել դժվարությունները։

Մեր պարտիան, ինչպես վայել է վերընթաց, դեպի հաղթանակ գնացող պարտիային, վեց տարի առաջ բոլշևիկյան շիտակությամբ մեր ժողովրդին ասաց ճշմարտությունը գյուղատնտեսության վիճակի մասին, նշեց նրա ետ մնալը և ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան (1953 թ.) և հետագա պլենումներում, պարտիայի XX և XXI համագումարներում մշակեց և հետևողականորեն իրականացնում է գյուղատնտեսության շեշտակի վերելքի մարտական ծրագիր, որն իր հիանալի արդյունքներն է տալիս։

Բացահայտելով տնտեսության ղեկավարման գործում եղած թերությունները, պարտիան մշտապես բարելավում է աշխատանքի ձևերն ու մեթոդները, կատարելագործում է նրա ոճը։ Եվ հենց այն բանի շնորհիվ, որ մեր պարտիան չի վախենում թերությունների քննադատությունից, բացահայտո-



րեն և ազնվաբար նշում է բացերն ու սխալները՝ հաջողությունից հաջողություն է ընթանում։

Քննադատությունն ու ինքնաքննադատությունը բոլշևիկյան ղեկավարման փորձված մեթոդ է։ Սովետական մարդիկ, որոնք կենսականորեն շահագրգռված են մեր պետության հետագա ամրապնդմամբ, օգտվելով քննադատության մեթոդից, բարձր պահանջկոտությամբ են վերաբերվում իրենց գործունեությանը, անհանդուրժողականություն են ցուցաբերում թերությունների նկատմամբ, պայքարում են մեր առաջընթացն արգելակող երևույթների՝ պահպանողականության, դոգմատիզմի, քարացածության դեմ։

Այնտեղ, որտեղ զարգացած է քննադատությունն ու ինքնաքննադատությունը, այնտեղ բարձր է պարտիական մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը, հանձնարարված գործի նկատմամբ նրանց պատասխանատվությունը։ Ահա թե ինչու ՍՄԿՊ Կանոնադրությունը պարտիայի յուրաքանչյուր անդամի պարտավորեցնում է՝ զարգացնել ինքնաքննադատությունը և ներքևից եկող քննադատությունը, երևան հանել աշխատանքում եղած թերությունները և հասնել դրանց վերացմանը, պայքարել պարադային բարեհաջողության և աշխատանքում ձեռք բերված հաջողություններով արբենալու դեմ։ Քննադատության ճնշումը ծանր չարիք է։ Նա, ով խլացնում է քննադատությունը, այն փոխարինում է պարադայնությամբ և գովերգությամբ, չի կարող գտնվել պարտիայի շարքերում։

Ի՛նչ է անհրաժեշտ քննադատության և ինքնաքննադատության մակարդակի բարձրացման համար։

Անհրաժեշտ է, ամենից առաջ, բոլոր կոմունիստներին, բոլոր աշխատողներին դաստիարակել քննադատության և ինքնաքննադատության, թերությունների նկատմամբ անհանդուրժողական վերաբերմունքի ոգով, ստեղծել քննադատության զարգացմանը նպաստող մթնոլորտ, այնպես որ մարդիկ համարձակորեն հանդես գան, բացահայտեն թերություններն ու սխալները։ «Վերլուծելով երեկվա սխալները,— սովորեցնում է Լենինը,— մենք դրանով իսկ սովորում ենք խուսափել սխալներից այսօր և վաղը» (Երկեր, հատ. 26, էջ՝ 44)։ Կոմունիստն իրավունք չունի պարտիայից թաքցնելու անբարեհաջող դրությունը կազմակերպության մեջ, անտեսելու պարտիայի և պետության շահերին վնաս հասցնող սխալ գործողությունները։ Հարկավոր է, ուրեմն, վճռական պայքար մղել բոլոր նրանց դեմ, ովքեր ոչ ճիշտ վերաբերմունք են հանդես բերում քննադատության նկատմամբ և խոչընդոտում են նրա ծավալմանը, հարկավոր է հետապնդումից պաշտպանել նրանց, ովքեր հանդես են գալիս առողջ, սկզբունքային քննադատությամբ, այնպես, որ արդարացի քննադատությամբ հանդես եկողը իր թիկունքում զգա կոլեկտիվի պաշտպանությունը, նրա կազմակերպված ուժը։

Երևանի խտացված կոշտ կերի կոմբինատի դիրեկտոր ընկ. Գրիգորյանը պարտիական ժողովներում քննադատության ծավալման քիչ կոչեր չի արել. բայց իրականում նա խոչընդոտում է նրա ծավալմանը. բավական է խոսել նրա թերությունների մասին և նա բոլոր միջոցները ձեռք է առնում քննադատությամբ հանդես եկողների դեմ։ Պարտկազմակերպությունում չկա առողջ, սկզբունքային մթնոլորտ և դրանում քիչ մեղք չունի ինքը՝ գործարանի դիրեկտոր, ՍՄԿՊ անդամ ընկ. Գրիգորյանը։

Անհրաժեշտ է, այնուհետև, որ աշխատողները ճիշտ և արդարացի քննադատությունն ընդունեն ոչ հիվանդագին, այլ ընդհակառակը, իրենց մեջ ուժ գտնեն թերությունները վերացնելու համար։ Չի կարելի բանն այնպես պատկերացնել, որ եթե աշխատողը քննադատության է ենթարկվում, ապա նրան անպայման հարկավոր է հանել գրաված պոստից և դուրս մղել ասպարեզից։

Անհրաժեշտ է միատեսակ վերաբերմունք ունենալ այն աշխատողների նկատմամբ, որոնք սխալվել են, հետևաբար, արժանի են դիտողության. այդ դեպքում քննադատության ենթարկվողը կտեսնի, կզգա, որ դա ոչ թե մեկի կամ մի երկուսի, այլ կոլեկտիվի կարծիքն է, և հետևաբար, չի կարող բխել անձնական դրդապատճառներից։ Կոլեկտիվի կարծիքը, կոլեկտիվ վերաբերմունքն աշխատողի նկատմամբ ճիշտ դաստիարակության լավագույն միջոց է։

Բավական չէ միայն քննադատական դիտողությունները ճիշտ համարելը և դրանք ձևականորեն ընդունելը։ Կարևոր է հասնել թերությունների վերացմանը, սխալների ուղղմանը. պայքարել նրանց դեմ, ովքեր խոսքով քննադատության կոչ են անում, իսկ իրականում խլացնում են քննադատությունը։

Հարկավոր է, վերջապես, ծավալել սկզբունքային, առողջ քննադատություն, որի նպատակն է օգնել այն մարդկանց, ովքեր սխալներ են թույլ տալիս, օգնել՝ ուղղվելու և ճիշտ ուղու վրա կանգնելու։ «...Սխալվել կարող է ամեն մարդ,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— պետք է տեսնել ոչ միայն այն, ինչ արել է այդ մարդը երեկ, այլև այն, ինչ ընդունակ է անելու վաղը, և դա է գլխավորը, մենք պետք է օգնենք այդպիսի մարդուն՝ հասկանալու և արագ վերացնելու թերությունները և ուղղելու սխալները»։ Հետևաբար չի կարելի թույլ տալ, որ սխալ գործած ազնիվ աշխատողները անձնական խմբծանքի, կամայականության և դեմագոգիայի զոհեր դառնան։

Լենինը վճռականորեն հանդես գալով այնպիսի քննադատության դեմ, որը չի հետապնդում սխալը շտկելու, թերությունը վերացնելու նպատակ, կոմունիստներին նախազգուշացնում էր. «...երբ դուք լսեք այդպիսի քննադատություն, անբովանդակ քննադատություն, քննադատություն քննադատության համար,— զգա՛ստ եղեք, տեսե՛ք, գուցե քննադատող ընկերոջ ինքնասիրությունը որևէ բանով խոցված է, գուցե նա անձամբ վիրավորված կամ գրգռված է...» (Երկեր, հատ. 31, էջ 549)։

Չի կարելի թույլ տալ ներպարտիական դեմոկրատիան օգտագործել ի վնաս պարտիայի։ «Մենք դիսկուսիոն ակումբ չենք»,— ասում էր Լենինը և պահանջում էր՝— «...քննադատել և ուղղել, առանց հակասելու պարտիայի սկզբունքներին»։ Այն բանից հետո, երբ պարտիայի վերադաս օրգանների՝ համագումարների, պլենումների կողմից քննարկվում են հարցերը և ընդունվում համապատասխան որոշումներ, ոչ ոքի թույլ չի տրվում արդեն որոշված հարցերը դարձնելու դիսկուսիայի առարկա։ Որոշումներին պետք է հաջորդեն պրակտիկ գործերը։

Լենինը դատապարտում էր անպատասխանատու կերպով խոսքեր շպրտող մարդկանց և հայտարարում էր՝ «...ես երբեք չեմ հոգնի կրկնելուց, որ դեմագոգները բանվոր դասակարգի ամենավատթար թշնամիներն են» (Երկեր, հատ. 5, էջ 616)։

Մեր սոցիալիստական հասարակարգում, ասում է ընկ. Խրուշչովը, որտեղ չկան թշնամի դասակարգեր ու խմբեր, որտեղ ամբողջ կյանքը կառուցված է ընկերականության և բարեկամության սկզբունքներով, հարկավոր է



մարդկանց ավելի զգայուն վերաբերմունք ցույց տալ, հավատալ մարդուն, դաստիարակել և վերադաստիարակել նրան։

Լենինը խնդիր դնելով պարտիայում ըստ ամենայնի ծավալել քննադատությունն ու հարցերի ազատ քննարկումը, միաժամանակ զգուշացնում է, որ պարտիայի թշնամիները, հակապարտիական տարրերը ամեն կերպ կաշխատեն «քննադատության ազատության» լոզունգը օգտագործել իրենց նպատակների, պարտիայի շարքերի միասնությունը խարխլելու համար։

Մեր պարտիան իր սեփական նախաձեռնությամբ XX համագումարում ծավալեց Ի. Վ. Ստալինի սխալների, անհատի պաշտամունքի քննադատությունը, որպես մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ բան։ Պարտիան այդ արեց, որպեսզի ամրապնդի իր դիրքերը, ամրապնդի սոցիալիստական կարգերը, որպեսզի երբեք այսուհետև թույլ չտրվի այդ կարգի երևույթներ։ Սակայն եղան այնպիսիները, որոնք փորձեցին անհատի պաշտամունքի քննադատությունն օգտագործել մեր կարգերի, մեր պարտիայի վրա հարձակումներ գործելու, պարտիային զրպարտելու, նրա գլխավոր գիծը ռևիզիայի ենթարկելու համար։ Որոշ «քննադատներ» ոչ ճիշտ, խեղաթյուրված կերպով են պատկերում և ամեն կերպ փորձում են արատավորել մեր պարտիայի գործունեության այն ամբողջ պատմական ժամանակաշրջանը, երբ Կենտրոնական Կոմիտեի գլուխ կանգնած էր Ի. Վ. Ստալինը։ «Այդ կարգի «քննադատները»,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— կամ մոլի զրպարտիչներ են, կամ այնպիսի մարդիկ, որոնք սահում են դեպի ռևիզիոնիզմի նեխած դիրքերը, ճգնելով «ստալինիզմի» վերաբերյալ ճիչերով քողարկել իրենց նահանջը մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներից»։

Իսկական պարտիական քննադատությունն ու ինքնաքննադատությունը կոչված է ուղղելու մեր սխալները, բարելավելու մեր աշխատանքը, բարձրացնելու պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, պարտիական շարքերի միասնությունն ու համախմբվածությունը։

Քննադատության ծավալման գործում մեծ դեր է խաղում մեր մամուլը. այն հասարակական կարծիքի տրիբունա է, նորի, առաջավորի, պրոպագանդիստ։ Մամուլը օգնում է պարտիային՝ աշխատավորական մասսաներին լայնորեն ներգրավելու կոմունիստական շինարարության մեջ, զարգացնելու նրա ստեղծագործական նախաձեռնությունն ու ձեռներեցությունը։ Մամուլի քննադատությունն ամենաուժեղ քննադատությունն է։

## IV

Ներպարտիական դեմոկրատիայի ծավալումն աներևակայելի է, առանց այն անխզելի կապի, որ ունի պարտիան միլիոնավոր մասսաների հետ։

Կոմունիստական պարտիան չէր կարող հասնել պատմական հաղթանակների, եթե չլիներ անխզելի կապ, զոդում պարտիայի և ժողովրդի միջև։ Պարտիան չէր կարող կառավարել, չէր կարող նվաճել դասակարգի վստահությունն ու օժանդակությունը, եթե նա ճշտորեն չարտահայտի այն, ինչ ժողովուրդը գիտակցում է։

«Որպեսզի սոցիալ-դեմոկրատական պարտիա լինենք,—գրել է Լենինը, —պետք է ձեռք բերենք հենց դասակարգի օժանդակությունը»։ Առանց դրան,

*առանց իր դասակարգի միլիոնավոր մասսաների վստահությունն ու աջակցությունը նվաճելու, պարտիան չի կարող ապրել և զարգանալ։*

*Ահա թե ինչու ՍՄԿՊ Կանոնադրությունը պարտիայի անդամին պարտավորեցնում է օրավուր ամրապնդել կապը մասսաների հետ, ժամանակին արձագանքել աշխատավորների պահանջներին ու կարիքներին, անպարտիական մասսաներին պարզաբանել պարտիայի քաղաքականության և որոշումների իմաստը, հիշելով, որ պարտիայի ուժն ու անպարտելիությունը ժողովրդի հետ ունեցած նրա կենսական ու անխզելի կապի մեջ է։*

*Պարտիան յուրաքանչյուր աշխատողից պահանջում է միշտ գտնվել մասսաների խորքում, լայն աշխատանք կատարել նրանց մեջ, սիստեմատիկաբար քաղաքական զեկուցումներով հանդես գալ բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի առջև, նրանց պարզաբանել երկրի ներքին և միջազգային կյանքի իրադարձությունների իմաստը։ Պարտիական աշխատանքը, քաղաքական աշխատանքը՝ աշխատանքն է մարդկանց հետ։ Պարտիան պահանջում է ունկնդրել մասսաների ձայնին, արձագանքել նրանց պահանջներին ու կարիքներին, ուսումնասիրել նրանց հարուստ փորձը, տոն և ուղղություն տալ նրանց քաղաքական և աշխատանքային ակտիվությանը, այն լայնորեն ի սպաս դնել կոմունիստական շինարարության խնդիրների կատարմանը։*

*Հավատարիմ լենինյան ցուցումներին, Կոմունիստական պարտիան մշտապես ընդլայնել և ամրապնդել է կապերը աշխատավորական լայն մասսաների հետ, նրանց բարձրացրել գիտակցական ստեղծագործության։ Պարտիայի ամբողջ գործունեությունը թափանցված է ժողովրդի, աշխատավորների ռևոլյուցիոն էներգիայի նկատմամբ ունեցած խոր հավատով։ Ժողովուրդն էլ մեծագույն վստահություն է տածում դեպի Կոմունիստական պարտիան, հավատում է նրա կոլեկտիվ մտքին և պատրաստ է ամբողջ ուժով պաշտպանել նրա ամեն մի միջոցառում։*

*Մեծ Լենինը խոսելով պրոլետարական պարտիայի ուժի աղբյուրների մասին, գրել է, որ պարտիան անպարտելի է, եթե նա օժտված է «...աշխատավորների ամենալայն մասսայի, առաջին հերթին պրոլետարական, բայց նաև ոչ պրոլետարական աշխատավոր մասսայի հետ կապվելու, մերձենալու, որոշ չափով, եթե կուզեք, ձուլվելու հմտությամբ» (Երկեր, հատ. 31, էջ 9—10)։ Մասսաների հետ պարտիայի կապերի, նրա նկատմամբ ժողովրդի անսահման վստահության վառ վկայություն է պարտիայի շարքերի աճը, անպարտիական մասսաների բուռն ցանկությունը՝ լինել պարտիայի շարքերում, պայքարել նրա մեծ գործի համար։ 1917 թվականի 240 հազար անդամի փոխարեն ներկայումս Սովետական Միության Կոմունիստական պարտիայի մեջ են գտնվում 8 միլիոն մարդ։ Պարտիայի շարքերի աճը մասսաների հետ նրա սերտ կապի, ժողովրդի մեջ ունեցած հսկայական հեղինակության վառ ապացույց է։*

*Պարտիան իր գործունեության ընթացքում լայնորեն հենվում է աշխատավորական մասսաների վրա, ուշադրությամբ ունկնդրում է նրանց, համաժողովրդական քննարկման է դնում կոմունիստական շինարարության առավել կարևոր հասունացած հարցերը։ Հայտնի է, օրինակ, թե ինչպես մեր երկրի աշխատավորները լայն քննարկման ենթարկեցին արդյունաբերության և*



*շինարարության կառավարումը վերակառուցելու, կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և ՄՏ կայանները վերակազմելու հարցերը։*

*Հսկայական ոգևորությամբ անցավ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. կոնտրոլ թվերի համաժողովրդական քննարկումը։ Ամբողջ երկրում տեղի ունեցան թեզիսների քննարկմանը նվիրված 968 հազար ժողով, որոնց ներկա է եղել ավելի քան 70 միլիոն մարդ։ Այդ ժողովներում դիտողություններով, լրացումներով և առաջարկներով հանդես են եկել 4 միլիոն 672 հազար ընկերներ։ Մեր ռեսպուբլիկայում այդ հարցի համաժողովրդական քննարկման ժամանակ կոնկրետ առաջարկություններով հանդես, եկան տասնյակ հազարավոր մարդիկ։*

*Սովետական ժողովուրդը հսկայական ոգևորությամբ ընդունեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը՝ մեր երկրում կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը, որն իր մասշտաբներով հավասարը չունի պատմության մեջ։*

*Պարտիայի XXI համագումարը հաստատ վստահություն հայտնեց, որ մեր երկրի բանվորները, կոլտնտեսականները, սովետական ինտելիգենցիան կանեն ամեն ինչ, որպեսզի էլ ավելի ամրապնդեն մեր սոցիալիստական տնտեսության հզորությունը, կենսագործեն մարքսիզմ-լենինիզմի հաղթական դրոշի վրա գրված կոմունիստական իդեալները։*



*Ներկայումս, երբ պարտիան լուծում է կոմունիստական շինարարության բազմազան ու բարդ խնդիրներ, ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում ներպարտիական դեմոկրատիայի հետևողական կիրառումը, քննադատության և ինքնաքննադատության ծավալումը՝ որպես մեր թերությունները վերացնելու և առաջ շարժվելու հզոր միջոցի։ Որքան լայնորեն ծավալվի ներպարտիական դեմոկրատիան, այնքան պարտիական օրգանները, բոլոր կոմունիստներն ավելի ակտիվորեն կպայքարեն մեր պարտիայի կողմից մշակված տնտեսական և կուլտուրական շինարարության վիթխարի պլանների կենսագործման համար։ Հարկավոր է կազմակերպական աշխատանքը, ներպարտիական աշխատանքը հասցնել նոր խնդիրների մակարդակին, է՛լ ավելի բարձրացնել պարտիայի ու նրա տեղական կազմակերպությունների մարտունակությունը, բարձրացնել պարտիական ու տնտեսական գործունեության ղեկավարման մակարդակը։*

*Մեր պարտիական աշխատանքը պետք է կապված լինի կյանքի հետ, կոնկրետ և նպատակասլաց լինի. այն պետք է ի սպաս դրվի արտադրության տեխնիկական պրոգրեսին, յոթնամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարին։*

---

# ԸՆԴՀԱՆՐԱՑՆԵԼ ԵՎ ՏԱՐԱԾԵԼ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

**Խ. ԽԱՉԽԱՅԱՆ**

Սկզբնական պարտիական կազմակերպությունները, պարտիայի շրջանային և քաղաքային կոմիտեները բազմակողմանի աշխատանք են կատարում կոմունիստական շինարարության վիթխարի պլանները կենսագործելու համար բանվորների, կոլտնտեսականների, սովետական ինտելիգենցիայի ջանքերը մոբիլիզացնելու, նրանց կոմունիստական ոգով դաստիարակելու ուղղությամբ։ Պարտիական կազմակերպությունների կատարած այս ամենօրյա աշխատանքը ապահովում է միլիոնավոր մարդկանց բարձր ստեղծագործական ակտիվությունը և մեր տնտեսական պլանների հաջող կատարումը։

Պարտիայի քաղաքականությունը կենսագործելու համար պահանջվում է մեծապես լարել ուժերը, կարողանալ հաղթահարել դժվարությունները։ Պրակտիկ գործունեության պրոցեսում աճում և հասունանում են պարտիական կադրերը, ձեռք է բերվում պարտիական աշխատանքի փորձ։

Կոմունիստական պարտիայի ճիշտ կուրսը որոշվում է այն բանով, որ նա իր գործունեության ընթացքում ղեկավարվում է մարքսիստական-լենինյան թեորիայով, որը լուսավորում է կոմունիզմի ուղին։ Բայց մարքսիստական-լենինյան թեորիան կոնկրետ իրադրության մեջ կիրառելը չափազանց դժվար գործ է, պահանջում է թեորիական պատրաստականություն և պրակտիկ կենսափորձ։ Ահա թե ինչու պարտիական աշխատանքը, ինչպես գործունեության ոչ մի այլ բնագավառ, չի հանդուրժում շաբլոն, տրաֆարետ, ֆորմալիզմ։ Պարտիական աշխատանքում հատկապես ստեղծագործական մոտեցում է պետք։

Որքան ավելի ընդհանրացվի և հանրագումարի բերվի պարտիական կազմակերպությունների աշխատանքը, այնքան ակներև կդառնա մեր նվաճումների էությունը, պարզ կլինեն հեռանկարները։

Սեփական աշխատանքի արդյունքների իմաստավորումը հնարավորություն է տալիս առավել ընդունելի ձևեր գտնել ամեն մի կոնկրետ դեպքում։ Առաջին անգամ պարտիական աշխատանքի եկած երիտասարդ կադրերը դրական օրինակների վրա արագ կերպով յուրացնում են պարտիական աշխատանքի մեթոդները, քիչ են թույլ տալիս սխալներ։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ անհրաժեշտ է ավելի շատ ուշադրություն դարձնել կոմունիստական շինարարության ամենահասարակ, բայց կենդանի, կյանքից վերցված, կյանքով ստուգված փաստերի վրա։

Եթե խոսելու լինենք ավելի ընդհանուր ձևով, ապա մեր պարտիական աշխատանքում մշակվել է և ամենից շատ կիրառվում է ղեկավարության երկու մեթոդ. դրական փորձի ընդհանրացման և տարածման մեթոդը, երբ ոմանց նախաձեռնությունը դառնում է բոլորի սեփականությունը և այդ օրինակի վրա մոբիլիզացվում են բոլոր պարտիական կազմակերպությունները, և թերությունների բացահայտման ու լավագույն արդյունքներ ստանալու համար այդ թերությունների վերացման միջոցների որոնման մեթոդը։ Կյանքում, պրակտիկ գործունեության ընթացքում հաճախ այդ երկու մեթոդն էլ հանդես են գալիս համատեղ, փոխադարձաբար լրացնում են իրար։ Բայց այդ երկուսն էլ կիրառվում են միևնույն հաջողությամբ։ Նայած կոնկրետ իրադրության պայմաններին, այս կամ այն մեթոդի կիրառումը տալիս է մեծ արդյունքներ։



ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները վիթխարի ստեղծագործական եռանդ առաջացրին պարտիական կազմակերպություններում, ամբողջ սովետական ժողովրդի մեջ։ Յոթնամյա պլանի հաջող իրականացման համար պարտիական կազմակերպությունները որոնում և գտնում են նորանոր ռեզերվներ։ Սովետական ժողովրդի աճող ակտիվության հիման վրա առաջ եկան կոմունիստական աշխատանքի բրիգադներ։ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների հաջող կենսագործման համար մղվող պայքարում ծնունդ առավ ամբողջ մարզերի պարտիական կազմակերպությունների հիանալի նախաձեռնությունը՝ յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Պարտիական կազմակերպությունների ակտիվության նման հզոր վերելքի պայմաններում պարտիական աշխատանքի դրական փորձի ընդհանրացումն ու տարածումը մեծ նշանակություն է ձեռք բերում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն ցույց է տալիս պարտիական աշխատանքի դրական փորձի ընդհանրացման օրինակ։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումներում կենտրոնացված է մեր պարտիայի կոլեկտիվ իմաստնությունը, ընդհանրացված է նոր կյանք ստեղծող միլիոնավոր մարդկանց փորձը։ Ահա թե ինչու ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումները ունեն համոզելու վիթխարի ուժ և հսկայական մոբիլիզացնող նշանակություն։

Ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Հայկական ՍՍՌ-ում լայն արձագանք գտավ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի մայիսի 25-ի որոշումը «Գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման հաշվին արտադրանքի թողարկումը ավելացնելու գործում ՍՄԿՊ Վլադիմիրի մարզկոմի և Ժողտնտխորհի նախաձեռնության մասին»։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի այդ որոշման մեջ բացառիկ համոզիչ կերպով ցույց է տրված Վլադիմիրի մարզի պարտիական կազմակերպությունների նախաձեռնության ժողովրդատնտեսական հսկայական նշանակությունը։ Այդ նախաձեռնության արժեքն այն է, որ զգալի քանակությամբ ավել արտադրանքներ թողարկվում են առանց նոր կապիտալ ներդրումների՝ գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդարձակման ճանապարհով։ Եթե ամբողջ երկրում նման միջոցառումներ իրականացվեն, ապա անհրաժեշտ չի լինի շատ նոր ֆաբրիկաներ ու ձեռնարկություններ կառուցել, ազատ մնացող միջոցները կարելի կլինի օգտագործել ժողովրդատնտեսական այն ճյուղերի զարգացման վրա, որոնք յոթնամյա պլանով նախատեսված չեն։ Սա հնարավորություն կտա էլ ավելի բարելավել ժողովրդի նյութական բարեկեցությունը։

Ժողովրդա-տնտեսական և քաղաքական մեծ նշանակություն ունեն նաև

# ԸՆԴՀԱՆՐԱՑՆԵԼ ԵՎ ՏԱՐԱԾԵԼ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

**Խ. ԽԱՇԽԱՅԱՆ**

Սկզբնական պարտիական կազմակերպությունները, պարտիայի շրջանային և քաղաքային կոմիտեները բազմակողմանի աշխատանք են կատարում կոմունիստական շինարարության վիթխարի պլանները կենսագործելու համար բանվորների, կոլտնտեսականների, սովետական ինտելիգենցիայի ջանքերը մոբիլիզացնելու, նրանց կոմունիստական ոգով դաստիարակելու ուղղությամբ։ Պարտիական կազմակերպությունների կատարած այս ամենօրյա աշխատանքը ապահովում է միլիոնավոր մարդկանց բարձր ստեղծագործական ակտիվությունը և մեր տնտեսական պլանների հաջող կատարումը։

Պարտիայի քաղաքականությունը կենսագործելու համար պահանջվում է մեծապես լարել ուժերը, կարողանալ հաղթահարել դժվարությունները։ Պրակտիկ գործունեության պրոցեսում աճում և հասունանում են պարտիական կադրերը, ձեռք է բերվում պարտիական աշխատանքի փորձ։

Կոմունիստական պարտիայի ճիշտ կուրսը որոշվում է այն բանով, որ նա իր գործունեության ընթացքում ղեկավարվում է մարքսիստական-լենինյան թեորիայով, որը լուսավորում է կոմունիզմի ուղին։ Բայց մարքսիստական-լենինյան թեորիան կոնկրետ իրադրության մեջ կիրառելը չափազանց դժվար գործ է, պահանջում է թեորիական պատրաստականություն և պրակտիկ կենսափորձ։ Ահա թե ինչու պարտիական աշխատանքը, ինչպես գործունեության ոչ մի այլ բնագավառ, չի հանդուրժում շաբլոն, տրաֆարետ, ֆորմալիզմ։ Պարտիական աշխատանքում հատկապես ստեղծագործական մոտեցում է պետք։

Որքան ավելի ընդհանրացվի և հանրագումարի բերվի պարտիական կազմակերպությունների աշխատանքը, այնքան ակներև կդառնա մեր նվաճումների էությունը, պարզ կլինեն հեռանկարները։

Սեփական աշխատանքի արդյունքների իմաստավորումը հնարավորություն է տալիս առավել ընդունելի ձևեր գտնել ամեն մի կոնկրետ դեպքում։ Առաջին անգամ պարտիական աշխատանքի եկած երիտասարդ կադրերը դրական օրինակների վրա արագ կերպով յուրացնում են պարտիական աշխատանքի մեթոդները, քիչ են թույլ տալիս սխալներ։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ անհրաժեշտ է ավելի շատ ուշադրություն դարձնել կոմունիստական շինարարության ամենահասարակ, բայց կենդանի, կյանքից վերցված, կյանքով ստուգված փաստերի վրա։

Եթե խոսելու լինենք ավելի ընդհանուր ձևով, ապա մեր պարտիական աշխատանքում մշակվել է և ամենից շատ կիրառվում է ղեկավարության երկու մեթոդ. դրական փորձի ընդհանրացման և տարածման մեթոդը, երբ ոմանց նախաձեռնությունը դառնում է բոլորի սեփականությունը և այդ օրինակի վրա մոբիլիզացվում են բոլոր պարտիական կազմակերպությունները, և թերությունների բացահայտման ու լավագույն արդյունքներ ստանալու համար այդ թերությունների վերացման միջոցների որոնման մեթոդը։ Կյանքում, պրակտիկ գործունեության ընթացքում հաճախ այդ երկու մեթոդն էլ հանդես են գալիս համատեղ, փոխադարձաբար լրացնում են իրար։ Բայց այդ երկուսն էլ կիրառվում են միևնույն հաջողությամբ։ Նայած կոնկրետ իրադրության պայմաններին, այս կամ այն մեթոդի կիրառումը տալիս է մեծ արդյունքներ։



ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները վիթխարի ստեղծագործական եռանդ առաջացրին պարտիական կազմակերպություններում, ամբողջ սովետական ժողովրդի մեջ։ Յոթնամյա պլանի հաջող իրականացման համար պարտիական կազմակերպությունները որոնում և գտնում են նորանոր ռեզերվներ։ Սովետական ժողովրդի աճող ակտիվության հիման վրա առաջ եկան կոմունիստական աշխատանքի բրիգադներ։ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների հաջող կենսագործման համար մղվող պայքարում ծնունդ առավ ամբողջ մարզերի պարտիական կազմակերպությունների հիանալի նախաձեռնությունը՝ յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Պարտիական կազմակերպությունների ակտիվության նման հզոր վերելքի պայմաններում պարտիական աշխատանքի դրական փորձի ընդհանրացումն ու տարածումը մեծ նշանակություն է ձեռք բերում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն ցույց է տալիս պարտիական աշխատանքի դրական փորձի ընդհանրացման օրինակ։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումներում կենտրոնացված է մեր պարտիայի կոլեկտիվ իմաստնությունը, ընդհանրացված է նոր կյանք ստեղծող միլիոնավոր մարդկանց փորձը։ Ահա թե ինչու ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումները ունեն համոզելու վիթխարի ուժ և հսկայական մոբիլիզացնող նշանակություն։

Ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Հայկական ՍՍՌ-ում լայն արձագանք գտավ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի մայիսի 25-ի որոշումը «Գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման հաշվին արտադրանքի թողարկումը ավելացնելու գործում ՍՄԿՊ Վլադիմիրի մարզկոմի և Ժողտնտխորհի նախաձեռնության մասին»։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի այդ որոշման մեջ բացառիկ համոզիչ կերպով ցույց է տրված Վլադիմիրի մարզի պարտիական կազմակերպությունների նախաձեռնության ժողովրդատնտեսական հսկայական նշանակությունը։ Այդ նախաձեռնության արժեքն այն է, որ զգալի քանակությամբ ավել արտադրանքներ թողարկվում են առանց նոր կապիտալ ներդրումների՝ գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդարձակման ճանապարհով։ Եթե ամբողջ երկրում նման միջոցառումներ իրականացվեն, ապա անհրաժեշտ չի լինի շատ նոր ֆաբրիկաներ ու ձեռնարկություններ կառուցել, ազատ մնացող միջոցները կարելի կլինի օգտագործել ժողովրդատնտեսական այն ճյուղերի զարգացման վրա, որոնք յոթնամյա պլանով նախատեսված չեն։ Սա հնարավորություն կտա էլ ավելի բարելավել ժողովրդի նյութական բարեկեցությունը։

Ժողովրդա-տնտեսական և քաղաքական մեծ նշանակություն ունեն նաև

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումները Սվերդլովի, Մոսկվայի (քաղաքային), Լենինգրադի, Մոսկվայի (մարզային), Գորկու և մյուս վարչատնտեսական շրջանների ձեռնարկությունների և կառույցների աշխատավորների սոցիալիստական պարտավորությունների մասին։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի այդ որոշումներում ընդհանրացվում է արտադրական կարողությունների լավագույն օգտագործման, յոթնամյա պլանով նախատեսված ձեռնարկությունների կառուցման ժամկետների կրճատման, յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար ներքին ռեզերվներ գտնելու գործում պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձը։

Միանգամայն բնական է, որ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի այդ որոշումները մոբիլիզացրին պարտիական կազմակերպությունները։ Ամեն մի գործարանի, ամեն մի ֆաբրիկայի կոլեկտիվ հնարավորություններ է որոնում առանց կապիտալ ներդրումների կամ աննշան ծախսերով արտադրանքի թողարկումն ավելացնելու համար։ Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ Հայկական ՍՍՌ քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները նույնպես տեխնիկական միջոցառումներ են մշակել այն գործարանների և ցեխերի վերակառուցման ուղղությամբ, որոնք կապիտալ ներդրումների մի փոքր աճի պայմաններում ապահովում են 1.300 միլիոն ռուբլուց ավելի արտադրանքների թողարկում։ Ավելի քան 800 միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք կտան ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկությունները։ Արդյունաբերության մյուս բնագավառների կոլեկտիվները նույնպես ռեզերվներ են որոնում յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ գլխավորել այդ հայրենասիրական շարժումը, լայնորեն տարածել այդ արժեքավոր նախաձեռնությունը և 1964 թվականին հասնել արդյունաբերական արտադրանքի արտադրության այն մակարդակին, որ նախատեսված է 1965 թվականի համար։

Վլադիմիրի և մյուս մարզերի պարտիական կազմակերպությունների դրական փորձի կարևոր կողմն այն է, որ կրում է համաժողովրդական բնույթ, այն կարելի է կիրառել ամենուրեք, ամեն մի ռեսպուբլիկայում, ամեն մի շրջանում։ Հետևաբար դրական փորձը արժեք ունի և արժանի է ուշադրության այն ժամանակ, երբ այն կրում է ընդհանուր, և ոչ թե մասնավոր, տեղական բնույթ։

Այս տեսակետից ռեսպուբլիկայի համար մեծ նշանակություն ունի առանձին կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունների նախաձեռնությունը, որոնք մրցություն են ծավալել իրենց շրջանի առաջավոր կոլտնտեսությունների մակարդակով գյուղատնտեսական մթերքներ արտադրելու համար։ Պարտիական կազմակերպությունների այդ նախաձեռնության մասին Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX համագումարում խոսեց Կենտրոնական Կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Ս. Հ. Թովմասյանը։

Այն խնդիրները, որ կոլտնտեսականներն այդ մրցության մեջ դնում են իրենց առջև, միանգամայն ռեալ, բոլորին հայտնի խնդիրներ են. ուստի սոցիալիստական մրցության այդ փորձը կարող է լայն տարածում ստանալ։ Ամենամոտավոր հաշվումներն անգամ ցույց են տալիս, որ եթե բոլոր կոլտնտեսությունները գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ հասնեն



իրենց շրջանի առաջավոր կոլտնտեսությունների արտադրանքի մակարդակին, ապա ռեսպուբլիկայի մասշտաբով կարելի է երկու անգամ ավելի միս, կաթ և ձու ստանալ։ Այդ մրցության մեջ դրված է բոլորին ծանոթ և յուրաքանչյուրի սրտին մոտիկ մի գաղափար՝ յուրաքանչյուր շրջանի կոլտնտեսություններում եղած վիթխարի ռեզերվների օգտագործումը։ Որպեսզի ամեն մի դրական փորձ լայն տարածում ստանա, անհրաժեշտ է, հետևաբար, որ նրանում մարմնացած գաղափարը մասսայականություն ունենա։ Առավել մասսայական դրական օրինակները, որոնք կայծակի արագությամբ տարածվում են, ունեն այն առանձնահատկությունը, որ ամեն ոք լսելով նրա մասին կասի. «Ես էլ չէի այդ մասին մտածում»։

Պարտիական ղեկավարության արվեստն այն է, որ կարողանա պարտիական աշխատանքի բազմազան ձևերից ու մեթոդներից ընտրել այնպիսիները, որոնք ավելի մեծ տնտեսական արդյունք են տալիս, մատչելի են մասսաներին և տեխնիկապես լայնորեն կիրառելի են։

Պարտիական աշխատանքի փորձը կարող է մասսայական լինել այն դեպքում, եթե այն վերցված է կյանքից, ամենօրյա պրակտիկայից։ Պարտիական աշխատանքի պրակտիկայում կիրառվում են ամենաբազմազան ձևեր ու մեթոդներ, որոնք արժանի են լայն տարածման։ Նոր ձևեր չպետք է հնարել, այլ անհրաժեշտ է դրանք քաղել կյանքից։ Կյանքն ամեն օր նոր պահանջներ, նոր հարցեր է հարուցում, որոնց անհրաժեշտ է պատասխան տալ։ Այն փորձը, որ պարտիական կազմակերպություններն ուզում են տարածման համար առաջադրել որպես դրական օրինակ, պետք է բավարարի կյանքի պահանջմունքներին։ Վ. Ի. Լենինը գրել է, որ մասսաները կհասկանան և կգնահատեն միայն գործարար, դրական աշխատանքը, պրակտիկ հաջողությունը տնտեսական և կուլտուրական աշխատանքում։

Երբ խոսում ենք տնտեսական էֆեկտի մասին, ապա չպետք է հասկանալ միայն միջոցների ուղղակի խնայում։ Այդ էֆեկտը կարող է շատ հաճախ երևան գալ անուղղակի։ Օրինակ, քաղաքական-մասսայական աշխատանքի բարելավումը, իբրև կանոն, բարձրացնում է արտադրական ցուցանիշները։ Ուստի պարտիական կազմակերպության մասսայական-քաղաքական, պրոպագանդիստական աշխատանքի դրական փորձի ընդհանրացումն ու տարածումը կարևոր նշանակություն ունի։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի «Ստալինյան մարզի աշխատավորների հետ տարվող մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակի և բարելավման միջոցառումների մասին» որոշման մեջ բացառիկ համոզչությամբ ցույց է տրված դրական այն ամենը, որ կիրառվում է Սովետական Ուկրաինայի այդ առաջավոր ինդուստրիալ մարզում։ Որոշման մեջ հատուկ ուժով ընդգծվում է, որ այն հսկայական ստեղծագործական ակտիվությունը, որ առաջ բերեցին ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները, մարզային պարտիական կազմակերպությանն օգնեցին լուծել կարևոր արտադրական հարցեր։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշման մեջ գնահատված են քաղաքական աշխատանքի այն նոր ձևերը, որոնք ստուգված են շատ պարտիական կազմակերպությունների պրակտիկայով և տալիս են դրական արդյունքներ, օգնում են առավել հաջող լուսաբանել ու կիրառել կոմունիզմի մեծ գաղափարները։

Աշխատավորների աշխատանքային ակտիվության բարձրացմանը նպաստում է աշխատանքի այնպիսի ձևերի ու մեթոդների կիրառումը, ինչպիսիք

են՝ մասսայական հասարակական դիտումները և աշխատանքի կազմակերպման ստուգման ռեյդերը, բանվորական տեղի դրությունը, տեխնիկայի օգտագործումը ստուգող ռեյդերը, մշտապես գործող արտադրական խորհրդակցությունները, տնտեսական և արտադրա-տեխնիկական կոնֆերանսները, սոցիալիստական պարտավորությունների փոխադարձ ստուգումները:

Պարտիական աշխատանքի պրակտիկայում կարևոր տեղ են գրավում պարտիական կոմիտեների պլենումները, պարտիական ժողովները: Այդ ժողովներում կոլեկտիվ կերպով քննարկվում և լուծվում են քաղաքի, շրջանի, ձեռնարկության կյանքի կարևորագույն հարցերը: Այդ ժողովների անցկացման փորձը ցույց է տալիս, որ կարևոր նշանակություն ունի քննարկման դրվող հարցերի ճիշտ ընտրությունը: Եթե պլենումի, պարտիական կազմակերպության ժողովի քննարկմանն է դրվում մի հարց, որը հասունացել է, լուծում է պահանջում, ապա և ակտիվությունը բարձր կլինի, և կոլեկտիվ միտքը շատ ուղիներ կթելադրի այդ հարցի հաջող լուծման համար:

Պարտիայի շրջկոմի պլենումում քննարկելու համար ճիշտ ընտրված հարցի բազմաթիվ օրինակներից բերենք միայն մեկը: 1959 թվականի մարտին Հայաստանի ԿՊ Արտաշատի շրջկոմի պլենումում դրված էր աշխատանքի արտադրողականության բարձրացման և գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման միջոցառումների հարցը, որը մեծ հետաքրքրություն առաջացրեց պարտիայի շրջկոմի անդամների մոտ: Եվ դա միանգամայն բնական է:

Վերջին տարիներին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի անցկացրած միջոցառումները լուծեցին կոլտնտեսային կյանքի շատ հարցեր, հնարավորություն տվեցին խոշոր չափով զարգացնել գյուղատնտեսությունը: Այժմ կյանքը պահանջում է, որպեսզի կոլտնտեսություններում քիչ աշխատանք ծախսելով ավելի շատ էժան արտադրանք ստացվի:

Արտաշատի շրջկոմի պլենումում պարզվեց, որ շրջանի կոլտնտեսությունների որոշ ղեկավարներ քիչ ուշադրություն են դարձրել կոլտնտեսային արտադրության վրա, ձգտել են կոլտնտեսությունների եկամուտներն ավելացնել մթերքները մասնավոր շուկայում բարձր գներով վաճառելու հաշվին: Շրջկոմի պլենումը կոլտնտեսությունների և պարտիական կազմակերպությունների ղեկավարների ուշադրությունը հրավիրեց տնտեսությունը ռացիոնալ վարելու և ներքին ռեզերվների հաշվին կոլտնտեսությունների եկամուտներն ավելացնելու հարցերի վրա:

Պարտիական կազմակերպությունները ձեռք են բերել դաստիարակչական աշխատանքի մեծ փորձ, որը նույնպես անհրաժեշտ է ընդհանրացնել և տարածել: Աշխատավորների դաստիարակության գործում մեծ նշանակություն ունի հասարակական ներգործությունը սոցիալիստական վարքի կանոնները խախտողների վրա: Այսպես, օրինակ, Հոկտեմբերյանի շրջանում երիտասարդներից ոմանք չէին մասնակցում կոլտնտեսային արտադրությանը: Միջնակարգ կրթություն ստանալով, ընտանիքում նյութական կարիք չունենալով, նրանք պարապ ապրելակերպ ունեին: Այդ հարցում բացասական դեր էին կատարում որոշ ծնողներ: Նրանք լավ էին աշխատում կոլտնտեսությունում, մեծ եկամուտներ էին ստանում աշխօրի դիմաց և իրենց երեխաներին ֆիզիկական աշխատանքի չէին ընտելացրել:

Պարտիայի շրջկոմը և կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունները, իհարկե, այդ երևույթի կողքով անցնել չէին կարող: Խորհրդակցելով սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների հետ, պարտիայի շրջկոմը որոշեց խորհուրդ տալ նրանց՝ անցկացնել պարտիական դռնբաց ժողով, կամ կոլտնտեսականների ժողով, որտեղ հրավիրել ֆիզիկական աշխատանքից խուսափող աղջիկներին և պատանիներին ու նրանց ծնողներին:

Այդ ժողովներում կոմունիստներն ու անպարտիականները, գյուղի հեղինակավոր մարդիկ խոսում էին առաջիկա տարիներին կոլտնտեսությունների առջև կանգնած մեծ խնդիրների մասին, ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի, սովետական մարդու բարոյական կերպարի մասին: Բնական է, որ այդ ժողովներում առանց այդ երիտասարդների անունները տալու, առանց նրանց դատապարտելի վարքագիծը նշելու, գործն առաջ գնալ չէր կարող:

Իհարկե, յուրաքանչյուր պարտիական կազմակերպությունում տարբեր ձևով անցան այդ ժողովները: Տարբեր ձևով իրենց պահեցին նաև ժողովների մասնակիցները: Ժողովների մի մասում այդ երիտասարդների ծնողները մասնակցեցին և ելույթ ունեցան, իսկ մյուսներում դրանք չկային: Նրանք գերադասեցին նստել տանը և սպասել, թե դրանից ինչ դուրս կգա: Այդ երիտասարդներից ոմանք փորձեցին արդարանալ, ուրիշները խոստովանեցին իրենց վարքի անճշտությունը, խոստացան ուղղվել, երրորդները լուռ հեռացան ժողովներից և հաջորդ օրը գնացին աշխատանքի: Բայց ամենուրեք արդյունքները բացառիկ լավ էին:

Կիրառելի՞ է արդյոք այս դրական փորձը մյուս կազմակերպություններում: Կիրառելի է, իհարկե: Բայց ամենայն հավանականությամբ, ամեն տեղ պարտադիր չէ այն ձևով անել, ինչպես Հոկտեմբերյանի շրջանում արեցին: Այդ փորձի նշանակությունը հասարակական կյանքի նորմանները խախտողների վրա հասարակական ներգործությունն է: Այդ հարցը կարելի է քննարկել կոլտնտեսության երիտասարդների, կոլտնտեսականների ժողովներում կամ այլ եղանակով հասարակական ներգործություն ունենալ, դրանից գործի էությունը չի փոխվում: Ամեն ինչ կախված է այն բանից, թե որտեղ ինչ ձևով են արտահայտվում նման երևույթները:

Այստեղ մենք գործ ունենք դրական փորձի կիրառման փաստի հետ: Ամեն մի դրական փորձ ծնունդ է առնում որոշ կոնկրետ պայմաններում, իր վրա կրում է այն իրադրության կնիքը, որտեղ ծագել է: Ուստի դրական փորձը պետք է կիրառել ստեղծագործաբար, հաշվի առնելով տեղի պայմանները:

Պարտիական կազմակերպությունների տրամադրության տակ շատ միջոցներ ու եղանակներ կան պարտիական աշխատանքի դրական փորձը ընդհանրացնելու և տարածելու համար: Մինչդեռ պրակտիկայում պարտիական կազմակերպությունները անբավարար են օգտագործում ղեկավարման այդ մեթոդի առավելությունները: Հաճախ պարտիական աշխատանքի դրական փորձը ընդհանրացվում և կոմունիստների սեփականությունն է դառնում պարտիական ժողովներում և կոնֆերանսներում լսվող զեկուցումներում: Բայց միշտ չէ, որ դա արվում է հմտորեն: Երբեմն դրական փորձի տարածման փոխարեն զբաղվում են առանձին կազմակերպությունների և նրանց ղեկավարների անտեղի գովերգությամբ: Ինչ խոսք, որ նման մոտեցումը ընդհանուր ոչինչ չունի դրական փորձի տարածման պրակտիկայի ըմբռնման հետ: Իսկ երբեմն էլ բավարարվում են այս կամ այն աշխատանքի արդյունքները հրա-

պարակելով, չվերլուծելով այդ արդյունքներին հասնելու պրոցեսը, մեթոդը:

Մի կազմակերպության փորձը մի այլ տեղում կիրառելու համար պետք է գիտենալ դրական արդյունքների հասնելու եղանակը: Ուստի անհրաժեշտ է, որ դրական փորձը ընդհանրացնելիս շարադրվեր, թե ինչ ճանապարհով, միջոցներով են ձեռք բերվել այդ արդյունքները: Կարևոր է նշել, թե ինչպես են գործել մարդիկ, ինչ դժվարությունների են հանդիպել:

Պարտիական կազմակերպությունների որոշումներում նույնպես նշվում է կատարված դրական աշխատանքը: Այս դեպքում անհրաժեշտ է մի քանի նախադասությամբ շարադրել դրական փորձի էությունը: Տվյալ դեպքում պարտիական աշխատողի արվեստն այն է, որ կարողանա խիստ սեղմ, հասկանալի և պարտիական կրքոտությամբ ձևակերպել այն:

Պարտիական աշխատանքի ընդհանրացման և դրական փորձի տարածման գործում կոչված է մեծ դեր խաղալու մամուլը: Այդ տեսակետից մամուլի աշխատողների հնարավորությունները շատ սահմանափակ չեն, բայց նրանց մոտ երբեմն պակասում է դրական փորձի էականն ընդգրկելու կարողությունը:

Կյանքում ծնունդ առնող ամեն նոր բան իր գոյության սկզբին պահանջում է ուշադրություն և աջակցություն: Այդպես էլ ամեն մի դրական օրինակ, ծնունդ առնելով պարտիական կազմակերպությունների կյանքում, սիստեմատիկ խրախուսանքի և աճեցման կարիք ունի:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները բավական փորձ և ուժեր ունեն, որպեսզի ոչ միայն պաշտպանեն և տարածեն մյուս պարտիական կազմակերպությունների դրական փորձը, այլև դրանք գտնեն իրենց մոտ և այդ հիման վրա էլ ավելի բարձրացնեն աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը և ապահովեն երկրի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարումը:

---

# ՊԵՏԱԿԱՆ ԱՊԱՐԱՏԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՀԱՄԱՐ


## Ս. ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆ

ՀԿՊ Երևանի Սպանդարյանի շրջկոմի քարտուղար


Ներկայումս մեր երկիրն ուժգին տեմպերով ընթանում է դեպի կոմունիզմ: Կոմունիզմի ծավալուն շինարարության հոյակապ ծրագրի կենսագործման կարևորագույն պայմաններից մեկն էլ պետական կառավարչական ապարատի գործունեության բարելավումն է: Հենց այդ նպատակով էլ արտադրության կազմակերպման ձևերի, ժողովրդական տնտեսության կառավարման և, ամբողջությամբ վերցրած, կառավարչական օրգանների աշխատանքի մշտական կատարելագործման հարցերը պետք է միշտ գտնվեն պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

Երևան քաղաքի Սպանդարյան շրջանի սկզբնական պարտիական կազմակերպությունները վերջին տարիներս որոշակի արդյունքների են հասել պետական ապարատի օպերատիվ աշխատանքն ապահովելու գործում: Նկատելիորեն նվազել են գրագրությունները ու թղթային քաշքշուկը, պետական ապարատի աշխատողները սկսել են ավելի կոնկրետ ղեկավարել իրենց գերատեսչությանը ենթակա ձեռնարկությունների ու կառույցները: Զգալիորեն կրճատվել են վարչա-կառավարչական ծախսերը, վերացվել են կառավարման ավելորդ օղակները, զուգահեռականությունն ու միջկառավարչական խոչընդոտները:

Շրջանի տերիտորիայում գտնվող պետական հիմնարկների շատ պարտիական կազմակերպություններ, դրանց թվում Հայկական ՍՍՌ Կապի և Ֆինանսների մինիստրությունների, Ժողտնտխորհի Քիմիական, Թեթև արդյունաբերության ու էներգետիկ վարչությունների և այլ պարտիական կազմակերպություններ ակտիվ կերպով ներգործում են ապարատի կյանքի բոլոր կողմերի վրա, ձգտում են հասնել նրա գործունեության արմատական բարելավմանը:

Նշված հիմնարկների ղեկավարներն ու պարտիական կազմակերպությունների բյուրոները զբաղվում են ապարատի կառուցվածքի էժանացման և կատարելագործման, պարտիայի և կառավարության դիրեկտիվների, ինչպես նաև սեփական որոշումների կատարման հարցերով:

Պարտիան մեզ սովորեցնում է, որ մինիստրությունների ու գերատեսչությունների կազմակերպական կառուցվածքի վերակառուցման, հաշվառման, հաշվետվությունների ու պլանավորման կարգավորման, վարչա-կառավարչական անձնակազմի կրճատման ուղղությամբ միջոցառումների կենսագործումը միայն առաջին քայլն է պետական ապարատի աշխատանքի արմատա-

կան բարելավումն ապահովելու գործում։ Սովետական հիմնարկներին կյանքն ավելի բարձր պահանջներ է ներկայացնում։ Անհրաժեշտ է ավելի կատարելագործել աշխատանքի ոճն ու մեթոդները, տնտեսության զարգացման հարցերը լուծել արագ ու ժամանակին։ Երբ այդ տեսակետից դիտում ենք մի շարք մինիստրությունների և վարչությունների ապարատի գործունեությունը, պարզվում է, որ ոչ բոլոր հիմնարկների ղեկավարներն ու պարտիական կազմակերպություններն են ըմբռնում ժամանակի պահանջների համաձայն։

Առանձին պարտիական կազմակերպություններ (Հայկական ՍՍՌ Պետպլանի, նախկին քարտուղար Ա. Ղազարյան, Գյուղատնտեսության մինիստրության, քարտուղար Ա. Արշակյան, Հայկոոպ, քարտուղար Հ. Զախարյան և այլն) քիչ աշխատանք են կատարել ապարատի գործունեությունը բարելավելու ուղղությամբ։ Նշված հիմնարկների առանձին աշխատողներ այս կամ այն կարևոր հարցը լուծելիս իրենց աշխատանքում օպերատիվություն չեն ցուցաբերում։ Այսպես, Հայաստանի ԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի 1959 թվականի փետրվարի 27-ի որոշմամբ Պետպլանին հանձնարարվեց Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի հետ միասին կարճ ժամկետում Մինիստրների Սովետ առաջարկություն ներկայացնել՝ վիտամինների արտադրությունն անհրաժեշտ տեխնիկական սարքավորումով ապահովելու վերաբերյալ։ Բայց անցել էր ավելի քան երեք ու կես ամիս, իսկ հանձնարարությունը մնում է անկատար։ Գյուղատնտեսության մինիստրության ոչ ճկուն աշխատանքի պատճառով ձգձգվեց անցյալ տարվա գյուղատնտեսության զարգացման ամփոփիչ պլանի կազմումը կոլտնտեսությունների գծով։ Մեծ ուշացումով Ժողտնտխորհը ներկայացրեց ռեսպուբլիկայի սովխոզների գծով գյուղատնտեսության զարգացման 1959 թվականի ամփոփիչ պլանը։

Հայաստանի ԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի 1958 թվականի սեպտեմբերի 18-ի որոշմամբ Առողջապահության մինիստրությանը հանձնարարված էր տասը գյուղական շրջաններում լրացուցիչ կերպով կազմակերպել մանկական կոնսուլտացիաներ, սակայն կոնսուլտացիաներ կազմակերպել են միայն երկու շրջանում։ Այստեղ անհրաժեշտ էր Առողջապահության մինիստր ընկ. Ա. Խրիմլյանի, ինչպես և ՀՍՍՌ Մինիստրների Սովետի կուլտուրայի և առողջապահության բաժնի վարիչ ընկ. Լ. Միրզոյանի հետևողականությունը որոշման կատարման գործում։

Այս հանձնարարությունների կատարման հարցը քննարկվել է պարտիական կազմակերպություններում։ Բայց քննարկումը, որոշում ընդունելը դեռևս հեռու է գործի վերածվելուց, եթե չի կազմակերպվում նրա կատարումը։ Բանն ամենևին էլ միայն նրանում չէ, թե քանի անգամ են քննարկել կատարման ընթացքը։ Որոշումների կատարման հսկողությունն ու կատարման կազմակերպումը չպետք է անջատել միմյանցից։ Դրանք տարբեր բաներ չեն, այլ մի միասնական պրոցես։ Պետական հիմնարկների պարտիական կազմակերպությունների աշխատանքում կարևոր տեղ պետք է գրավի պարտիայի և կառավարության դիրեկտիվների կատարման ստուգումը։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ կադրերի ընտրության հետ միասին կատարման ստուգումը ամբողջ կազմակերպական աշխատանքի հիմքն է. «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը,— ասել է Վ. Ի. Լենինը,— դրանում, դարձյալ դրանում է, միայն դրանում է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը»։



Պետական ապարատի հետագա կատարելագործման համար կարևոր նշանակություն ունի կադրերի ընտրության և դաստիարակության լենինյան սկզբունքի ճշգրիտ պահպանումը։ Թեև շրջանի պետական հիմնարկներում կադրերը հիմնականում ընտրված են ճիշտ՝ ըստ նրանց քաղաքական և գործնական հատկանիշների, սակայն առանձին կազմակերպություններում, առանձին աշխատողների մոտ դեռևս բացակայում է պատասխանատվության զգացումը հանձնարարված գործի հանդեպ։

Ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի Մեքենաշինության ու հաստոցաշինության վարչությունում (վարչության պետ ընկ. Խ. Սոչինսկի, պարտիական կազմակերպության քարտուղար ընկ. Տ. Զաքեյան) գրավոր ահազանգումներ են ստացվում այն մասին, որ Երևան քաղաքի կոմպրեսորի գործարանում տեղի են ունենում պետական կարգապահության կոպիտ խախտման դեպքեր, որոնք արտահայտվում են պլանների կատարումը հավելագրելու, իսկ առանձին ամիսների պետական պլանների գերակատարումները թաքցնելու մեջ, որ գործարանում բացակայում է ապրանքա-նյութական արժեքների ստույգ հաշվառումը, տեղի են ունենում սոցիալիստական սեփականության հափշտակության դեպքեր։ Ստացված ահազանգումների ճշտությունն ստուգելու համար վարչության ղեկավարությունը առանձնացնում է ապարատի երեք աշխատողներից բաղկացած մի հանձնաժողով, որը ս/թ. հունվար-փետրվար ամիսների ընթացքում երկու անգամ ստուգում է եղած ահազանգումների ճշտությունը և գտնում, որ նրանք իրականությանը չեն համապատասխանում։ Հետագայում Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Սովետական վերահսկողության հանձնաժողովի կողմից կատարված ստուգմամբ պարզվում է, որ ահազանգումների մեջ բերված փաստերը լիովին համապատասխանում են իրականության։ Եվ, չնայած դրան, վարչության ղեկավարությունն ու պարտիական կազմակերպությունը, չգիտես ինչու, լռությամբ են անցնում այդ երևույթի կողքով և չեն դնում հանձնաժողովի կազմի մեջ մտնող այն աշխատողներին պատասխանատվության ենթարկելու հարցը, որոնք իրենց հանձնարարված առաջադրանքը կատարելիս դրսևորել են բարեհոգություն և անպատասխանատվություն։

Պետական ապարատի հստակ աշխատանքն ապահովելու նպատակով պարտիական կազմակերպությունները պետք է խորամուխ լինեն յուրաքանչյուր վարչության, բաժնի աշխատանքի մեջ, օգնեն ապարատի աշխատողներին, ժամանակին հայտաբերեն թերությունները, սիստեմատիկորեն կոմունիստների քննարկմանը դնեն ինչպես պարտիայի և կառավարության որոշումների կատարման ընթացքը, նույնպես և այն կարևոր ու ակտուալ հարցերը, որոնք բխում են ապարատի առջև դրված հիմնական խնդիրներից։

Կառավարչական ապարատի գործունեության բարելավման և հետագա կատարելագործման հարցում կարևոր տեղ է գրավում պարտիական կազմակերպության ահազանգման ֆունկցիայի ճիշտ կենսագործումը։

Պարտիական կազմակերպությունների առանձին քարտուղարներ և բյուրոներ, չգիտես ինչու, երբեմն երկչոտություն են դրսևորում ապարատի գործունեությանը վերաբերող սկզբունքային հարցերի լուծման գործում։ Հայաստանի Արհմիությունների խորհրդի սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոն (քարտուղար ընկ. Պ. Ղազարյան) գրեթե պարտիական ժողովի քննարկմանը չի դրել ապարատի գործունեությանը վերաբերող և ոչ մի հարց։

Ապարատի գործունեությանն ակտիվորեն չմիջամտելու պատճառը, ՍՄԿՊ Կանոնադրությամբ պետական հիմնարկների սկզբնական պարտիական կազմակերպությունների վրա դրված պարտականությունների սխալ ըմբռնումն է։ Ինչպես հայտնի է, մինիստրությունների պարտիական կազմակերպությունները վերահսկողության իրավունքից չեն օգտվում՝ սովետական հիմնարկների աշխատանքի յուրահատուկ պայմանների շնորհիվ։ Մինիստրության պարտիական կազմակերպությունը չի կարող պատասխանատվություն կրել այն ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների և այլ օբյեկտների գործերի վիճակի համար, որոնց ղեկավարում է տվյալ հիմնարկը։ Սակայն ապարատի աշխատանքի որակի համար պարտիական կազմակերպությունը կրում է ուղղակի պատասխանատվություն։ Հաշվի չառնելով այդ, պետական հիմնարկների պարտիական կազմակերպությունների որոշ քարտուղարներ գտնում են, թե բաժնի պետի ղեկուցումը լսելը սխալ է. մինչդեռ կարելի է նրա հաշվետվությունը լսել որպես պարտկազմակերպության անդամի։

Բազմազան են պետական հիմնարկների պարտիական կազմակերպությունների աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Գլխավորն այն է, որ խելացիորեն կիրառելով այդ ձևերն ու մեթոդները, պարտիական կազմակերպությունները խորանան ապարատի աշխատանքի էության մեջ, գտնեն հիմնական օղակը և ղեկավարությանն օգնեն վերացնելու թերությունները։ Հարկավոր է միշտ հիշել, որ մեր պարտիան կառավարող պարտիա է և որ նա է ուղղություն տալիս բոլոր հիմնարկների, կազմակերպությունների գործունեությանը։

Այս տեսակետից ուշադրության արժանի է Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի էներգետիկ վարչության պարտիական կազմակերպության աշխատանքը (քարտուղար Զ. Խոջամիրյան)։ Այդ կազմակերպությունը լուրջ կերպով զբաղվում է ապարատի գործունեության բարելավմամբ, աշխատողներին մոբիլիզացնում է՝ հաջողությամբ կատարելու վարչության առջև դըրված խնդիրները, ճշտորեն պահպանելով պարտիական և պետական կարգապահությունը։ Պարտիական կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքի հմուտ զուգակցումը վարչության առաջ դրված խնդիրների հետ, հնարավորություն է տվել ձեռք բերելու տնտեսական լավ ցուցանիշներ։

Հանձնարարված գործի նկատմամբ յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը բարձրացնելու գործում չափազանց կարևոր է նրանց գաղափարապես կոփելը։ Չէ՛ որ որքան բարձր է սովետական ծառայողների գիտակցությունը, գաղափարական կայունությունը, այնքան նրանք ավելի լավ են կատարում իրենց պարտքը, այնքան ավելի հաջողությամբ են լուծում այն խնդիրները, որոնք կանգնած են հիմնարկների առջև։

Անհրաժեշտ է, որ ապարատում կատարվող ամբողջ պարտիական-քաղաքական աշխատանքի մեջ իրենց արտացոլումն ու գնահատումը գտնեն տվյալ հիմնարկի կյանքին վերաբերող փաստերը, պարզաբանվի հիմնարկի և նրա ծառայողների վրա դրված պարտականությունների պետական նշանակությունը։

Պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն ամենօրյա օգնությունն ու ղեկավարությունը արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների նկատմամբ, բարձրացնեն նրանց դերը ապարատի աշխատանքի բարելավման գործում։ Չի կարելի նորմալ համարել, երբ շատ մինիստրություններում հազվագյուտ են հրավիրվում արտադրական խորհրդակցություններ, արհմիութենական ժողովներ։



Պետական ապարատի առանձին օղակների թերությունները հայտաբերելու, նրանց գործունեությունը կատարելագործելու կարևոր միջոցներից մեկը քննադատությունն ու ինքնաքննադատությունն է։ Սակայն որոշ կազմակերպություններում (Հայարդխորհուրդ, Հայկոոպ, «Արարատ» տրեստ, Ճաշարանների տրեստ և այլն) քննադատությունն ու ինքնաքննադատությունը թույլ է ծավալվում։ Պետական հիմնարկների առանձին ղեկավարներ ու պարտիական կազմակերպություններ անբավարար են արձագանքում կոմունիստների կողմից նրանց հասցեին արված քննադատական դիտողություններին ու առաջարկություններին։ Դա հատկապես վերաբերվում է Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրությանը (մինիստր ընկ. Ա. Շահինյան, պարտկազմակերպության քարտուղար ընկ. Մ. Գեղամյան)։ Չնայած պարտիական շրջանային կոնֆերանսում, շրջկոմի պլենումում, մամուլում, № 1 տպարանի պարտիական կազմակերպության ժողովներում նրա հասցեին բազմիցս արված քննադատական դիտողություններին, համապատասխան միջոցներ չի առանձնացրել տպարանի կազմարարական ցեխի վերանորոգման համար, թեև այդ հարցը բարձրացվել է դեռևս 1953 թվականին, երբ մինիստրությունը կազմել ու հաստատել էր ցեխի վերանորոգման նախահաշիվը, իսկ սկսած 1954 թվականից կոլեկտիվ պայմանագրում սիստեմատիկաբար կետ է մըտցըվել ցեխի վերանորոգման մասին։ Կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների նկատմամբ ոչ զգայուն վերաբերմունքի մասին կարելի է բերել ուրիշ օրինակներ ևս։ Պետական հիմնարկների պարտիական կազմակերպությունները սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը պետք է օգտագործեն որպես թերությունների դեմ մղվող պայքարի գործուն զենք, ապահովելով թերությունների իսպառ վերացումը։

Պարտիայի Սպանդարյան շրջկոմը որոշ աշխատանք է կատարել պետական հիմնարկների պարտիական կազմակերպությունների գործունեությունը բարելավելու ուղղությամբ։ Պարտիայի շրջկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում սիստեմատիկորեն քննարկվել են պետական հիմնարկների պարտիական կազմակերպությունների աշխատանքի վերաբերյալ հարցեր, քարտուղարների ու նրանց տեղակալների համար անց են կացվել սեմինար պարապմունքներ, կատարվում է պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձի փոխանակում։ Սակայն այդ ամենը դեռ բավական չէ։ Պարտիայի շրջկոմը միջոցներ է ձեռնարկում պետական հիմնարկների պարտիական կազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու ուղղությամբ։

Պետական հիմնարկների պարտիական կազմակերպությունները պետք է հիշեն, որ ապարատի առավելագույն պարզեցումն ու էժանացումը, նրա աշխատանքի բարելավումը ժամանակավոր կամպանիա չէ, այլ պարտիական կազմակերպությունների մշտական խնդիրը։

«Անհրաժեշտ է միջոցառումներ ձեռնարկել ետ մնացող կոլ-
տնտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր
շրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հաս-
ցնելու համար»:

ՀԿՊ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

# ՈԳԵՎՈՐԻՉ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ

*Համեմատաբար կարճ ճանապարհ է անցել Շահումյան շրջանի Ներքին
Ջարբախ գյուղի Լենինի անվան կոլտնտեսությունը, բայց ինչքա՜ն շատ բան
է արված այդ ժամանակամիջոցում:*

*1924 թվականին անբնակ, ամայի վայրերը եկան Ն. Ջարբախի այժմյան
բնակիչները և մշտական բնակություն հաստատեցին այնտեղ: 1930 թվա-
կանին նրանք կազմակերպեցին իրենց կոլտնտեսությունը: Սկզբում այդ մի
քանի տնտեսությունների միավորում էր, տնտեսություններ, որոնք ունեին
ոչ մեծ հողակտոր, պրիմիտիվ գյուղատնտեսական ինվենտար և մի քանի եզ:*

*Առաջին կոլտնտեսականները, Կոմունիստական պարտիայի նշած ուղու
ճշտության նկատմամբ հավատով լի մեծագույն խանդավառությամբ գործի
անցան: Նրանց թվումն էին Վարդան Հովսեփյանը, որն այժմ առաջավոր
բրիգադայի բրիգադավար է, փորձված այգեգործ Հակոբ Ղամբարյանը, որին
համագյուղացիներն ընտրել են գյուղական Սովետի դեպուտատ, Հովհաննես
Ափոյանը և շատ ուրիշներ:*

*Սովորելով և բարձրացնելով իրենց գիտելիքները, կազմակերպական
փորձ ձեռք բերելով, կոլտնտեսականները քայլ առ քայլ նորանոր հաջողու-
թյունների հասան հողագործության կուլտուրայի բարձրացման, անասնաբու-
ծության, տնտեսությունը ղեկավարելու բնագավառներում: Կոլտնտեսական-
ները լավ են հիշում այն ժամանակները, երբ տաք վեճերի մեջ քննարկվում,
ծնվում էին կոլտնտեսության էկոնոմիկայի ամրապնդման պլաններ: Այդ
պլաններն այժմ դարձել են ռեալ իրականություն:*

*Ներկայումս Ն. Ջարբախ գյուղի Լենինի անվան կոլտնտեսությունը բազ-
մաճյուղ, լավ զարգացած, ամուր տնտեսություն է և քայլում է ռեսպուբլի-
կայի առաջավոր կոլտնտեսությունների շարքում:*

*Կոլտնտեսության հողատարածությունը համեմատաբար մեծ չէ, բայց
նրա ճիշտ, ինտենսիվ օգտագործումը տնտեսությանը լավ եկամուտներ է բե-
րում: Պլանավորման նոր կարգը լայն ճանապարհ բացեց կոլտնտեսականնե-
րի նախաձեռնության համար, նրանց իրավունք տվեց մշակելու արտադրու-
թյան զարգացման պլանները՝ հաշվի առնելով հողատարածությունների և
ձեռք բերած տեխնիկայի լավագույն ձևով օգտագործումը, հասնելով այն բա-
նին, որ յուրաքանչյուր հեկտար հողից ստացվի առավել քանակությամբ ար-
տադրանք:*

*Հողային հիմնական տարածությունը՝ 153 հեկտարը, հատկացված է խա-*



*ղողի և պտղատու այգիներին, 40 հեկտարը զբաղեցնում է առվույտը, 40 հեկ-
տարը՝ բանջարային կուլտուրաներ են, 30 հեկտարը՝ հացահատիկ:*

*Տնտեսության կոնկրետ պայմաններից ելնելով, կազմակերպված են վեց
արտադրական բրիգադներ, որոնք մշակում են ինչպես դաշտավարական
կուլտուրաները, այնպես և այգիները:*

*Բրիգադների և անասնապահական ֆերմաների ղեկավարությանը հանձ-
նարարված է այնպիսի գործիմաց կոլտնտեսականների, ինչպիսիք են Գևորգ
Ստեփանյանը, Վարդան Հովհաննիսյանը, Կարապետ Համբարձումյանը, Գրի-
գոր Պետրոսյանը և մյուսները, որոնք ընդունակ են ինքնուրույն և ճիշտ լու-
ծելու արտադրության կազմակերպման հիմնական հարցերը:*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի փետրվարյան պլենումի ընդունած՝ «Կոլ-
տնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայան-
ները վերակազմելու մասին» որոշումից հետո կոլտնտեսությունը գնեց տար-
բեր մարկաների չորս տրակտոր, կալսիչ, բանջարեղեն կուլտուրաների և խա-
ղողի այգիների միջշարային տարածությունների մշակության զգալի քանա-
կությամբ գյուղատնտեսական գործիքներ՝ 100 հազար ռուբլու արժողությամբ:
Այս ամբողջ տեխնիկան կենտրոնացված է կոլտնտեսության տրակտորային
բրիգադայում, որը ղեկավարում է փորձված մեխանիզատոր Սերգո Ասատր-
յանը:*

*Կոլտնտեսության վարչությունը և նրա նախագահ Սուրեն Մովսիսյանը,
պարտիական կազմակերպությունը և նրա քարտուղար Գրիգոր Պետրոսյանը,
ամեն կերպ աջակցում են բրիգադավարների նախաձեռնությանը, նրանց
ինքնուրույնությանը: Բրիգադավարներն աշխատում են ինքնուրույն կերպով,
առանց խնամակալության, ելնելով բրիգադայի պլանից և արտադրական
խորհրդակցություններում մշակված կոնկրետ առաջադրանքներից:*

*Լենինի անվան կոլտնտեսության և նրա ղեկավարների աշխատանքում
բնորոշն այն է, որ այստեղ կարողանում են ժամանակին առաջ քաշել տնտե-
սական և արտադրական այն հիմնական հարցերը, որոնց կատարումից կախ-
ված են ամբողջ տնտեսության արտադրական գործունեության բոլոր հա-
ջողությունները: Բերենք մեկ օրինակ: Պարտիական ժողովում, որտեղ քըն-
նարկվում էր սահմանված պարտավորությունների կատարումը, առաջարկու-
թյուն մտցվեց սածիլները համատարած կերպով աճեցնել տորֆա-հումուսա-
յին թաղարներում, քանի որ այդ միջոցառումը բանջարեղեն կուլտուրաների
բերքատվության բարձրացման կարևոր նախապայմաններից մեկն է: Կոլտըն-
տեսության ղեկավարությունը, առանց թուլացնելու ագրոտեխնիկայի այլ մի-
ջոցառումների կիրառման համար մղվող պայքարը, հատուկ հսկողության
տակ վերցրեց տորֆա-հումուսային թաղարների պատրաստման գործը: Այդ
գործի կազմակերպումը հանձնարարվեց կոլտնտեսության նախագահ ընկ.
Ս. Մովսիսյանին և գյուղատնտես ընկ. Ի. Կոթողյանին:*

*Վաղ գարնանը կոլտնտեսությունը Բասարգեչարի շրջանից փոխադրեց
800 տոննա տորֆ և 120 հազար հատ տորֆա-հումուսային թաղար պատրաս-
տեց բանջարային կուլտուրաների սածիլներ աճեցնելու համար: Դա կոլտնտե-
սությանը հնարավորություն տվեց սածիլներ դնելիս ժամանակ շահել, ապա-
հովել նրանց լավ կպչողականությունը, կրճատել ծախսերը: Պոմիդորի, բադ-
րիջանի, պղպեղի ցանքերը բարձր բերք են տալիս:*

*Ջարբախցիները պարտավորվել են այս տարի խաղողի այգիների յուրա-*

քանչյուր հեկտարից ստանալ 120 ցենտներ բերք: Ապահովելով այնպիսի աշխատանքների բարձրորակ կատարումը, ինչպիսիք են փորը, էտը, միջշարային մշակությունը, այստեղ օգտագործեցին բերքատվությունը բարձրացնող նոր միջոցներ: Կոլտնտեսության գյուղատնտես Ի. Կոթողյանի անմիջական ղեկավարությամբ և լավագույն այգեգործներ Արամ Գրիգորյանի, Գրիշա Մարգարյանի, Օնիկ Մելոյանի, Հակոբ Ղամբարյանի, Օֆիկ Մաթևոսյանի, Սիրուշ Ավետիսյանի մասնակցությամբ, վաղ գարնանը, այգեփորի հետ միաժամանակ, բոլոր վազերի մոտ փորվեցին 50 սմ խորություն և նույնքան էլ լայնություն ունեցող փոսեր, որոնց մեջ լցվեց օրգանական-հանքային պարարտանյութի խառնուրդ՝ յուրաքանչյուր հեկտարին 25—30 տոննա լավ փտած գոմաղբի, 600 կգ սուպերֆոսֆատի, 150 կգ կալիական աղի և 300 կգ սելիտրայի հաշվով:

Յուրաքանչյուր վազի առանձին պարարտացման այդ եղանակը զգալի արդյունքներն է տալիս: Խաղողի այգիներն աչքի են զարնում վազերի փարթամությամբ և ողկույզների մեծ քանակությամբ: Անցյալ տարի պարարտացման այս եղանակը կիրառվեց ոչ մեծ տարածության վրա, որտեղ հեկտարի բերքատվությունը 170 ցենտներից ավելի եղավ («Մսխալի» այգուց): Այս տարի այդպիսի պարարտացում տրվեց 85 հեկտար այգու: Ժամանակին պրոֆիլակտիկ սրսկում և փոշոտում կատարելու շնորհիվ բոլոր վազերը առողջ են և հարուստ բերք են խոստանում: Ագրոտեխնիկական կոմպլեքս միջոցառումների կիրառման, այգիները լիարժեք դարձնելու շնորհիվ այգիների բերքատվությունը տարեցտարի ավելանում է: Եթե 1953 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացվել էր 48 ցենտներ խաղող, ապա 1958 թվականին հեկտարի բերքատվությունը կազմեց 115 ցենտներ: Այստեղ խաղողագործությունը դարձել է տնտեսության բարձր եկամտաբեր ճյուղը: Անցյալ տարի խաղողագործությունից ստացված եկամուտը կազմեց 2 միլիոն 872 հազար ռուբլի, կամ կոլտնտեսության ընդհանուր եկամտի 50 տոկոսից ավելին:

Վստահ կերպով կարելի է ասել, որ յուրաքանչյուր հեկտարից 120 ցենտներ խաղող ստանալու վերաբերյալ ջարբախցիների ստանձնած սոցիալիստական պարտավորությունը ոչ միայն կկատարվի, այլև կգերակատարվի: Դրա նրաշխիքն է կոլտնտեսականների անձնվեր աշխատանքը, դեպի նորը ունեցած նրանց ձգտումը:

Կոլտնտեսությունը մեծ ուշադրություն է նվիրում նաև տնտեսության գլխավոր ճյուղերից մեկի՝ անասնաբուծության զարգացման հարցերին: 1958 թվականին ստացված 5 միլիոն 12 հազար ռուբլի ընդհանուր դրամական եկամտի մեջ հանրային անասնաբուծության բերած եկամտի բաժինը կազմեց մեկ միլիոն 49 հազար ռուբլի:

Պատասխանելով բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի, յուղի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու վերաբերյալ պարտիայի կոչին, կոլտնտեսականները, սոցիալիստական ակտիվ մրցություն ծավալելով, ինչպես 1957, այնպես և 1958 թվականին հիանալի արդյունքների հասան: Անցյալ տարի կոլտնտեսությունը հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց արտադրեց 81,5 ցենտներ միս, 658 ցենտներ կաթ, 630 կգ բուրդ, իսկ կովերի թիվը կազմեց 21,5 գլուխ: Մեկ կովի միջին կաթնատվությունը հասավ մինչև 3.500 կգ-ի, յուրաքանչյուր մերունից ստացվեց 21 խոճկոր, իսկ յուրաքանչյուր ոչխարից խուզվեց 4,2 կգ բուրդ:



Իսկ ո՞րն էր այս հաջողությունների հիմքը: Առաջին և հիմնականն այն է, որ ֆերմաներում աշխատում են իրենց գործն իմացող և աշխատասեր կոլտնտեսականներ: Ֆերմաներում բոլոր անասուններն ակտով ամրացված են անասնապահներին, մտցված է աշխատակարգ, որը մշակել են կոլտնտեսության զոոտեխնիկ Կ. Պողոսյանը և անասնաբույժ Մ. Ղուկասյանը:

Ֆերմաների համար աշխատակարգ հաստատելիս և կերաբաժինները կազմելիս կոլտնտեսությունը ելել է ֆերմայի կոնկրետ պայմաններից՝ դրանք կազմելով զոոտեխնիկայի պահանջներին համապատասխան: Սեփական փորձով համոզվելով անասուններին ամբողջ տարվա ընթացքում հյութալի կերով կերակրելու կարևորության մեջ, կոլտնտեսականներն անցյալ տարի յուրաքանչյուր կովի համար պատրաստեցին 6 տոննա եգիպտացորենի սիլոս: Այս տարի այն կհասնի 8 տոննայի: Սիլոսը պատրաստվում է բացառապես եգիպտացորենի կանաչ մասսայից: Հաշվի առնելով վարելահողերի տարածության սահմանափակ լինելը, կատարում են նաև եգիպտացորենի խոզանացան (հացահատիկի բերքահավաքից հետո): Այսպիսով, հողն օգտագործվում է ինտենսիվ կերպով, նրանից տարեկան ստանում են երկու բերք: Այս տարի եգիպտացորենի ցանքատարածությունը կազմեց 18 հեկտար: Ջարբախցիները պայքարում են հեկտարից ոչ պակաս 500 ցենտներ կանաչ մասսա ստանալու համար: Սրանից բացի, այս տարի կոլտնտեսությունն առաջին անգամ ցանեց երկու հեկտար կերի ճակնդեղ, որը լրացուցիչ կտա մոտ 80 տոննա հյութալի կեր: Բնական խոտհարքներ չունենալով, կոլտնտեսությունը խոտը հիմնականում կուտակում է առվույտի ցանքերից, որոնց տարածությունը կազմում է 40 հեկտար: Խոտաբույսերի մշակության ճիշտ ագրոտեխնիկայի կիրառումը, մակերեսային բարելավումը, այն է՝ փոցխումը, գոմաղբաջրով սնուցում կատարելը, ջրելը և փչացումներից լավ պահպանումը հնարավորություն է տալիս կատարել չորս հար և յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստանալ 140 ցենտներ բարձրորակ խոտ:

Կովերն ամբողջ տարի պահվում են մսուրային պայմաններում: Մսուրային շրջանում միջին հաշվով յուրաքանչյուր կովին տալիս են 1,6 կգ կոշտ, 6 կգ հյութալի կեր և 1,1 կգ խտացրած կեր: Ամառային շրջանում անասուններն ամեն օր ստանում են հնձված կանաչ:

Բայց անասունների մթերատվության բարձրացումը ապահովում են ոչ միայն խնամքն ու ճիշտ կերակրումը: Բացառիկ նշանակություն ունի նաև հոտի ցեղական հատկությունները բարձրացնելու ուղղությամբ այստեղ սկսված պլանային աշխատանքը: Ընտրության, ճիշտ տրամախաչման և լավ կերակրման շնորհիվ կովերի հոտը լրացվում է լավագույն երինջներով: Այս տարի կովերի նախիրը լրացվելու է շվից ցեղի 14 երինջներով՝ բարձրակիթ կովերից ստացված հորթերի հաշվին:

Կոլտնտեսության պլանի համաձայն, երեք տարուց հետո ֆերմայի կովերի նախիրը կլինի միատարր, մթերատվության բարձր ցուցանիշներով:

Կոլտնտեսությունը մեծ ուշադրություն է դարձնում մսի արտադրությանը: Եթե առաջ պետությանը որպես մսացու հանձնվում էին միայն խոտանված հասակավոր անասունները, առանց գիրացման, ապա այժմ գիրացման նախիրները կազմվում են ինչպես խոտանված հասակավոր անասուններից, այնպես և արու ամորձատված մատղաշներից: Գիրացման դնելուց առաջ բոլոր անասուններին անպայման կշռում են, ակտավորում՝ նշելով անասունի

տնտեսական համարը, սեռը, գույնը, ցեղը և կենդանի քաշը: Դրանից հետո միայն կոլտնտեսության վարչության կողմից անասունները հանձնում են հովիվներին:

Քաջ գիտենալով, որ նախրի գիրացման գործում մեծ դեր ունեն կադրերը, քանի որ արոտավայրերը ճիշտ օգտագործելու, արածեցումը կազմակերպելու նրանց կարողությունից էլ կախված է գիրացման արդյունքը, կոլտնտեսության ղեկավարությունը և մասնագետները մեծ ուշադրություն են նվիրում անասնապահների որակավորման բարձրացմանը: Զոոտեխնիկական դասընթացներից բացի, որոնք կոլտնտեսությունում գործում են ձմռանը, հոտի գիրացումն սկսելուց առաջ, հովիվների հետ հատուկ պարապմունքներ են անցկացվում արածեցումը լավ կազմակերպելու և անասունների քաշն ավելացնելու հարցերի շուրջը:

Ընթացիկ տարվա վեց ամսում արտադրվել է 120 ցենտներ միս, որից 56-ը՝ խոզի: Պետությանը վաճառվել է 79 ցենտներ բարձրորակ միս:

Մսի արտադրության ավելացման գործում իրենց լուման են մտցնում նաև կոլտնտեսության մասնագետները: Այսպես, անասնաբույժ Մ. Ղուկասյանն այս տարի կիրառում է անասունների օրգանիզմի մեջ հյուսվածքային էմուլսիայի ներարկման նոր եղանակ: Խոճկորներին, սկսած երկու ամսական հասակից, երկու ամիս շարունակ, վեց օրը մեկ անգամ ներարկվում է հյուսվածքային էմուլսիա: Այնուհետև մեկամսյա ընդմիջումից հետո այդ ներարկումը կրկնվում է: Այս փորձը կատարվում է արտադրական պայմաններում, 20 գլուխ անասունի վրա: Եղած տվյալների համաձայն, այն կենդանիները, որոնց հյուսվածքային էմուլսիա է ներարկվում, մսի քաշի 15 տոկոս աճ են տալիս:

Նույն անասնաբույժի նախաձեռնությամբ կովերի կերաբաժնի մեջ մտցըվում է նաև ալյուրի փոշի՝ շատ էժան, բայց կաթնատվությունը բարձրացնող կեր է: Այսպես, կոլտնտեսության մասնագետների դիտումների համաձայն, կովերին, ալյուրի փոշի տալու շնորհիվ, ֆերմայում օրական 80—100 լիտր ավելի կաթ է ստացվում:

Այս օրինակները խոսում են այն մասին, որ Ներքին Ջրաբաշ գյուղի կոլտնտեսության մարդիկ աշխատում են նորի զգացումով, հանձնարարված գործի նկատմամբ ունեցած բարձր պատասխանատվությամբ: Ամեն մեկն աշխատում է ներդնել ինչ որ նոր բան և օժանդակել յոթնամյակի առաջին տարվա պլանի հաջող կատարմանը:

Ֆերմայում աշխատում են 12 կթվորուհի և չորս անասնապահ: Կթվորուհիներից իրենց աշխատանքի ցուցանիշներով առանձնապես աչքի են ընկնում գյուղսովետի դեպուտատ Վիկտորիա Խաչատրյանը և Հրանուշ Հակոբյանը: Այս տարվա հենց առաջին օրերից նրանք գերակատարում են կովերի կաթնատվության սահմանված պլանները. հունիս ամսվա ընթացքում նրանցից յուրաքանչյուրն ունենալով 130 կգ կաթի հանձնման օրական պլան, սիստեմատիկորեն հանձնում էր 152—155 կգ, իսկ վեց ամսվա ընթացքում նրանք յուրաքանչյուր կովից ստացել են 1805—1885 կգ կաթ:

Կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը մեծ հոգատարությամբ են շրջապատել անասնապահներին: Ֆերմաներում մեքենայացված են մի շարք աշխատատար պրոցեսներ, այն է՝ կովերի ջրումը, գոմաղբի դուրս տանումը, կերի պատրաստումն ու մատուցումը: Այս պրոցեսների մեքենայացումը հեշտացրել է և բարձրացրել աշխատանքի արտադրողականությունը և, միաժամանակ, նպաստել անասնաբուծական մթերքների մեկ միավորի ինքնարժեքի իջեցմանը: Գոմերին կից պատրաստված է հատուկ սենյակ՝ կթվորուհիների հանգստի համար: Կարմիր անկյունում անասնապահներն աշխատանքից ազատ ժամերին կարող են կարդալ թերթեր, ամսագրեր, լսել մասնագետների զրույցները:



1953 թվականի համեմատությամբ կոլտնտեսության եկամուտներն ավելացել են ավելի քան երկու անգամ և 1958 թվականին հասել 5 միլիոն 12 հազար ռուբլու, իսկ 1965 թվականի վերջին կկազմեն 7 միլիոն 362 հազար ռուբլի. կոլտնտեսության անբաժանելի ֆոնդը կհասնի մեկ միլիոն 272 հազար ռուբլու:

Կոլտնտեսության եկամուտների աճին, նրա էկոնոմիկայի ամրապնդմանը զուգընթաց աճում են նաև կոլտնտեսականների եկամուտները, բարձրանում է նրանց նյութական բարեկեցության մակարդակը: Կոլտնտեսությունից մեծ եկամուտ ստանալով (անցյալ տարի աշխօրի արժեքը կազմեց 48 ռուբլի, 65 կոպ, որից 36 ռուբլին տրվեց դրամով) և այն համարելով հիմնականը, կոլտնտեսականները այս տարվանից սկսել են իրենց կովերը վաճառել կոլտնտեսությանը: Արդեն 25 տնտեսություն, վաճառելով իրենց անձնական կովերը, կաթը գնում են կոլտնտեսության կրպակում՝ իրենց իսկ կոլտնտեսականների սահմանած գնով: Կոլտնտեսականների որոշմամբ այս տարի կոլտնտեսության կից կազմակերպված է մանկական կաթնախոհանոց, որտեղ պատրաստվում է կեֆիր, կաշա մածուն և անհրաժեշտ ուրիշ շատ կաթնամթերքներ: Մինչև մեկ տարեկան հասակի 90 երեխաների կաթնամթերքներ են տրվում այդ խոհանոցից անվճար, կոլտնտեսության հաշվին:

Կոլտնտեսության էկոնոմիկայի զարգացման ընդհանուր վերելքին մեծ չափով նպաստում է ագիտացիոն-մասսայական աշխատանքը, արտադրության մեջ կոմունիստների ցույց տրված անձնական օրինակը:

Աչքի ընկնող տեղերում ցուցադրվում են սոցիալիստական պարտավորությունները, պլակատներ, որոնք կոչ են անում այսօր աշխատել ավելի լավ, քան երեկ, իսկ վաղը ավելի լավ, քան այսօր, սիստեմատիկ կերպով լույս է տեսնում պատի թերթը: Կոլտնտեսության ակումբում (որի շենքն իր ճարտարապետությամբ չի զիջում քաղաքի լավագույն ակումբներին) աչքի ընկնող տեղում դրված է պատվո տախտակը, որին փակցվում են կոլտնտեսային արտադրության առաջավորների լուսանկարները: Ագիտատորներ Կ. Հովակիմյանը, Ս. Ալոյանը, Օ. Մելոյանը, Կ. Պողոսյանը մշտապես գտնվում են բրիգադաներում, ֆերմաներում, ազատ ժամերին կոլտնտեսականներին ծանոթացնում են օրվա նորություններին, նրանց համար թերթեր կարդում: Մեծ աշխատանք են կատարում ակումբը (վարիչ Խ. Խաչատրյան), կոմերիտական կազմակերպությունը (քարտուղար Կ. Հովակիմյան): Կոմերիտականները մրցության առաջին նախաձեռնողներից են: Կոլտնտեսության դաշտերում երիտասարդությունն աշխատում է առանց ուժերը խնայելու: Միջնակարգ դպրոցն ավարտած 20 պատանիներ ու աղջիկներ աշխատում են հարազատ կոլտնտեսությունում:

Հարկ է նշել նաև կոլտնտեսականների և գիտնականների համագործակցության այն լավ տրադիցիան, որ ստեղծվել է կոլտնտեսությունում: Ամեն տարի փետրվար ամսին Գյուղատնտեսական ինստիտուտին կից կազմակերպ-

*վում են կոլտնտեսականների որակավորման բարձրացման դասընթացներ: Ամեն օր 40 մարդ՝ բրիգադավարներ, օղակավարներ, բանջարաբույծներ և այգեգործներ, կոլտնտեսության ավտոմեքենաներով գալիս են ինստիտուտ, որտեղ լսում են դասախոսություններ: Ուսուցման այսպիսի կազմակերպումը և այն, որ կոլտնտեսությունում կան Գյուղատնտեսական ինստիտուտի երեք հեռակա ուսանողներ (կոլտնտեսության նախագահ Ս. Մովսիսյանը, կոլտնտեսականներ Մ. Հովսեփյանը և Կ. Հովակիմյանը), խոսում է գործիմաց կերպով աշխատելու մեծ ձգտման մասին, այն մասին, որ մարդիկ այստեղ լի են իրենց տնտեսության զարգացման պլանը հաջողությամբ կատարելու բուռն ցանկությամբ:*

*Իսկ կոլտնտեսության պլաններն իրոք որ խոշոր են: Մեծ Լենինի անունը կրող կոլտնտեսության անդամները պայքարում են այն բանի համար, որպեսզի հաջողությամբ կատարեն Կոմունիստական պարտիայի XXI համագումարի որոշումները, ապահովեն կոլտնտեսության զարգացման յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարումը:*

*Կոլտնտեսության պլանում գրված է. յոթնամյակի վերջում յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության դիմաց արտադրել 104 ցենտներ միս, 891 ցենտներ կաթ, յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը հասցնել 4.000 կիլոգրամի: Խաղողագործությունից և դաշտավարությունից ստացվող եկամուտները կանցնեն 4 միլիոն 605 հազար ռուբլուց, իսկ ընդհանուր եկամուտը կկազմի 7 միլիոն 362 հազար ռուբլի՝ այսինքն մոտ 50 տոկոսով ավելի, քան ստացվել է 1958 թվականին:*

*Յոթնամյակի վերջին, 1965 թվականին Ներքին Ջարբախ գյուղն իր շինարարությամբ և կուլտուրայի օջախներով քաղաքից չի տարբերվի: Այս գյուղը, որի վաղվա ուրվագծերն արդեն այժմ տեսանելի են, կունենա էլեկտրական լույսերով ողողված, ասֆալտապատ լայն փողոցներ, որոնց երկու կողմերում կձգվեն կանաչի մեջ թաղված մի հարկանի և երկհարկանի տներ, կունենա իր կուլտուրայի և հանգստի պարկը, կուլտուրայի հիանալի տունը: Կոլտնտեսության կառուցած դպրոցի, մանկապարտեզի, մանկամսուրի, բաղնիքի, կոոպերատիվ խանութի շենքերին կավելանա 26 մահճակալ ունեցող հիվանդանոցը, որի շինարարությունը կոլտնտեսությունն սկսում է այս տարի: Յոթ տարվա ընթացքում կոլտնտեսությունը հասարակական ու արտադրական օբյեկտների շինարարությանը հատկացնում է երեք միլիոն 157 հազար ռուբլի և կուլտուր-կենցաղային սպասարկման ձեռնարկությունների շինարարությանը՝ 540 հազար ռուբլի, մեքենաների և գյուղատնտեսական այլ տեխնիկայի ձեռք բերմանը՝ 790 հազար ռուբլի:*

*Այս ոգևորիչ պլանները կազմված են ճշգրիտ հաշվումների հիման վրա և ամրապնդված են կոլտնտեսականների ամուր հավատքով, որ դրանք կկատարվեն: Եվ տարակույս չկա, որ Լենինի անվան կոլտնտեսությունը, նրա հիանալի աշխատավորները , ոգեշնչված գյուղատնտեսության հետագա վերելքի նկատմամբ պարտիայի և կառավարության ցուցաբերած հոգատարությամբ, իրենց բոլոր ուժերը կգործադրեն ապահովելու կոլտնտեսության յոթնամյա պլանի ժամկետից շուտ և հաջող կատարումը:*

**Մ. ՔՈՉԱՐՅԱՆ**

---

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

### ՓԱՅԼՈՒՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Օգոստոսի 23-ին ռումին ժողովուրդը, ինչպես նաև ամբողջ սոցիալիստական լագերի աշխատավորները հանդիսավորությամբ նշեցին ֆաշիստական լծից Ռումինիայի ազատագրման 15-ամյակը:

Հիտլերյան զավթիչների դեմ Սովետական Բանակի տարած վճռական հաղթանակի պայմաններում, 1944 թվականի օգոստոսի 23-ին ռումինական բանվոր դասակարգը՝ աշխատավոր գյուղացիների ու հայրենասիրական բոլոր ուժերի հետ դաշնակցած տապալեց Անտոնեսկուի ռազմա-ֆաշիստական դիկտատուրան և վեհորեն պարզեց ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիայի դրոշը: Գոռ մարտերում կոփված բանվորական պարտիայի գլխավորությամբ ռումին ժողովուրդը ձեռնամուխ եղավ նոր, սոցիալիստական կյանքի կառուցմանը:

Հոյակապ են Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայի հաջողությունները սոցիալիստական տնտեսության ու կուլտուրայի զարգացման բնագավառներում: Արդյունաբերական արտադրանքի 1938 թվականի մակարդակը գերազանցվել է ավելի քան չորս անգամ: Անցած տասնհինգ տարիների ընթացքում երկրում կառուցվել և շահագործման են հանձնվել ժամանակակից տեխնիկայով հագեցած հարյուրավոր նոր գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, հանքահորեր: Միայն վերջին չորս տարվա (1956—1959 թթ.) ընթացքում շահագործման են հանձնվել 38 արդյունաբերական ձեռնարկություն, 40 ցեխ և ընդլայնվել ու մոդեռնացվել են 125 այլ ձեռնարկությունների արտադրական կարողությունները:

Ռումինիայի էկոնոմիկայի արագաթափ վերելքը տեղի է ունենում արտադրության միջոցների արտադրության գերակշիռ զարգացման պայմաններում: Այսպես, եթե 1938 թվականին արդյունաբերական արտադրության համախառն արտադրանքի մեջ արտադրության միջոցների արտադրության տեսակարար կշիռը կազմել է 45,5 տոկոս, իսկ սպառման առարկաներինը՝ 54,5, ապա ներկայումս համապատասխանաբար այն կազմում է 58,3 և 41,7 տոկոս: 1948 թվականի համեմատությամբ, ծանր արդյունաբերության արտադրանքն աճել է 5,5 անգամ:

Ծանր արդյունաբերության արագ զարգացման հետ մեկտեղ մեծ ուշադրություն է դարձվել նաև սննդի և թեթև արդյունաբերության զարգացմանը: Այսպես, 1938 թվականի համեմատությամբ, 1958 թվականին արտադրվել է՝ 2 անգամ ավելի շատ բամբակյա, բրդյա և մետաքսյա գործվածքներ, ավելի քան 2 անգամ շատ կոշկեղեն, 2,5 անգամ շատ բուսական յուղ, 2,1 անգամ շատ շաքար, ավելի քան 5 անգամ շատ մսամթերքներ ու մսի պահածոներ և այլն:

Արդյունաբերության նման զարգացումը՝ թե՛ կառուցվող ձեռնարկությունների քանակի, թե՛ թողարկված արտադրանքի չափի և թե՛ ընդհանրապես արտադրության աճման տեմպերի տեսակետից, անկրկնելի է Ռումինիայի ամբողջ պատմության մեջ: Բավական է ասել, որ 1959 թվականի միայն մեկ եռամսյակում թողարկվել է զգալիորեն ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան արտադրվել է ամբողջ 1938 թվականին:

Երկրի ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջներն ապահովելու համար ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ներկայումս արտադրում է ամենաբազմազան արտադրանք՝ մետաղ, քարածուխ, նավթ, էլեկտրաէներգիա, առաջնակարգ մեքենաներ ու սարքավորումներ՝ նավթի, լեռնահանքային, թեթև ու սննդի, քիմիական և շինանյութերի արդյունաբերության համար, հաստոցներ, ջերմանավեր, ապրանքատար վագոններ, ավտոմոբիլներ, տրակտորներ, կենտրոնախույս պոմպեր, առանցքակալներ և այլն: Արդյունաբերության զարգացման ու նրա տեխնիկական բարձր մակարդակի մասին է վկայում էլեկտրաէներգիայի սպառումը. եթե 1938 թվականին Ռումինիայում բնակչության մեկ շնչին ընկնում էր ընդամենը 72,4 կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, ապա 1958 թվականին՝ 332 կիլովատ ժամ: 1959 թվականին երկրում արտադրվելու է մոտ 7 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա. դա նշանակում է, որ արդյունաբերական յուրաքանչյուր բանվորին այս տարի ընկնելու է 4500 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 1950 թվականի 2148 կիլովատ-ժամի փոխարեն:

իր առջև նպատակ է դրել՝ պատմել Երևանի «Էլեկտրատոչպրիբոր» գործարանի մեխանիկական ցեխի կոմունիստական աշխատանքի բրիգադի առօրյայի մասին։ Ահա թե զրույցի ընթացքում ինչ է պատմում ընթերցողներին այդ բրիգադի բրիգադիր Միշա Մխիթարյանը.

— Չնայած մեր բրիգադան արժանացել է կոմունիստական աշխատանքի բրիգադի կոչման, բայց մենք առաջիկայում դեռ շատ ու շատ անելիքներ ունենք։ Այն մրցությունը, որ մենք սկսեցինք մի քանի ամիս առաջ, բավականին դժվարին գործ է։ Հիմա միայն պլանի կատարման տոկոսներով չի կարելի բավարարվել։ Այժմ դրա հետ մեկտեղ, կարևորը՝ մարդու դաստիարակության, նրա մեջ կյանքի, աշխատանքի և մարդկանց նկատմամբ կոմունիստական վերաբերմունք մշակելու համար մղվող պայքարն է։

Մ. Մխիթարյանի ղեկավարած բրիգադի անդամները, հաղորդում է թերթը, հատուկ կանոններ է մշակել, որով ղեկավարվում են աշխատանքում ու կյանքում։ Այդ կանոնները նրանք փակցրել են իրենց ցեխի պատերին. «Բոլորը՝ մեկի, մեկը՝ բոլորի համար», «Կոմունիստական աշխատանքի բրիգադի հիմնական սկզբունքն է՝ ոչ միայն աշխատել կոմունիստաբար, այլև սովորել ու ապրել կոմունիստաբար»։ Ամեն օր բրիգադում նոր բան է երևան գալիս, կյանքն իր ուղղումներն է մտցնում։ Վերջերս առաջարկություն եղավ՝ խոսել միայն գրական լեզվով, խոսակցական լեզուն մաքրել բարբառներից...

Բրիգադի անդամներն աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել են 10—12 տոկոսով։ Բայց դրանով նրանք չեն սահմանափակվում։ Արտադրական հաջողություններն իրենց հերթին, բայց հարկավոր է նաև իսկական կոմունիստական վերաբերմունք հանդես բերել հանրային սեփականության նկատմամբ։ Եվ ահա սկիզբ է առնում նոր նախաձեռնություն՝ «Սեփական ուժերով կմաքրենք ու կարգի կբերենք մեր ցեխը»։ Օրն-օրին ավելի ու ավելի է ամրապնդվում բրիգադի անդամների բարեկամությունը. բոլորը միասին էքսկուրսիա են մեկնում, դիտում են նոր կինոնկարներ, ներկայացումներ, միասին նշում են ծննդյան տոները։ Բրիգադում գործում է մի հիանալի սկզբունք. «այսօր ընկերոջ նկատմամբ եղիր ավելի ուշադիր, քան՝ երեկ, իսկ վաղը՝ ավելի հոգատար, քան՝ այսօր»։

Բովանդակալից, իրոք հրապուրիչ կյանքով են ապրում կոմունիստական աշխատանքի բրիգադի կոչման համար պայքարող կոլեկտիվները։ Պատմելով այդ առաջավոր կոլեկտիվների առօրյայի մասին, կոմերիտական թերթերը երիտասարդությանը ցույց են տալիս այն օրինակը, ինչին նրանք պետք է հետևեն։

Երևան են եկել նոր ձևեր նաև հասարակական կյանքում։ Որպես օրինակ հիշատակենք այն շարժումը, որ սկսված է կուլտուր-լուսավորական հիմնարկները կոմերիտական կազմակերպությունների ղեկավարությանը հանձնելու համար։ Մենք նկատի ունենք ռեսպուբլիկայի մի շարք քաղաքների, շրջանային կենտրոնների և գյուղերի կոմերիտականների նախաձեռնությունը, որոնք ակումբներին կից ստեղծել են ակումբային խորհուրդներ, որոնց իրավասությանն է հանձնվել կուլտուր-լուսավորական աշխատանքների կազմակերպումը։ Կոմերիտականների այս նոր նախաձեռնությանն են նվիրված «Ավանգարդ» և «Կոմսոմոլեց» թերթերում զետեղված մի շարք հոդվածներ, ակնարկներ, ուր լայնորեն քննարկվում են ակումբային աշխատանքների վերակառուցման հարցերը։

«Հարկավո՞ր են արդյոք հաստիքներ» վերնագիրը կրող հոդվածում «Ավանգարդ» թերթն առաջ է քաշում կուլտուր-լուսավորական աշխատանքի կազմակերպման սիստեմը վերանայելու հարցը։ Հոդվածում իրավացիորեն նշվում է, որ բանվորական ու կոլտնտեսային շատ ակումբներում վարիչների պարտականությունները հանգում են միայն տնտեսական ֆունկցիաների կատարմանը։ Հաճախ ակումբների վարիչները խափանում են կոմերիտականների նախաձեռնությունները, խանգարում են ակումբը դարձնելու երիտասարդության շրջանում տարվող մասսայական աշխատանքների կենտրոն։ Հոդվածում խնդիր է դրվում կուլտուր-լուսավորական աշխատանքների ղեկավարությունը հանձնել կոմերիտական ակումբային խորհուրդներին։ Հոդվածը մեծ հետաքրքրություն առաջ բերեց ու արձագանք գտավ երիտասարդության շրջանում։

«Կոմսոմոլեց» թերթն ընթերցողներին հանգամանորեն ծանոթացրեց Էջմիածնի շրջանի № 9 սովխոզի ակումբի ու նրա խորհրդի առօրյային։ Երկար ժամանակ ակումբն անգործունեության էր մատնված, այնտեղ ոչ մի խմբակ չկար, գրադարանը հաճախ փակ էր լինում։ Ծանոթանալով ՍՄԿԿ XXI համագումարի որոշումներին, սովխոզի կոմերիտականները որոշեցին վերանայել ակումբի աշխատանքների կազմակերպման գոյություն ունեցող կարգը։ Կոմերիտական ժողովում, որտեղ այդ հարցը լայն քննարկման դրվեց, միահամուռ կերպով որոշվեց՝ հրաժարվել ակումբի վարիչի հաստիքից և ակումբի ղեկավարությունը հանձնարարել կոմերիտական ակտիվիստներին՝ հասարակական կարգով։ Կոմերիտականներն ընտրեցին հինգ հոգուց բաղ-



կացած ակումբային խորհուրդ։ Խորհրդի գործունեության դրական արդյունքները շատ շուտ երևան եկան։ Կոմերիտական շաբաթօրյակի կարգով սովխոզի երիտասարդ բանվորները վերանորոգեցին ակումբի շենքը, կազմակերպեցին յոթնամյակին նվիրված ցուցահանդես, հանգստի հիանալի պայմաններ ստեղծեցին։ Կազմակերպեցին վոլեյբոլի և բասկետբոլի խմբակներ, որոնց անդամները բարեկարգեցին սպորտային հրապարակները, ձեռք բերեցին անհրաժեշտ գործիքներ։ Գործի դրվեցին գեղարվեստական ինքնագործունեության՝ թատերական խմբակը, երգի ու պարի անսամբլը և այլն։

Թերթն ընթերցողներին ծանոթացրել է նաև ՀԼԿԵՄ Հոկտեմբերյանի շրջկոմին կից գործող գյուղական երիտասարդության ակումբի ուսանելի աշխատանքին։

Հասարակական կյանքին երիտասարդության ակտիվ մասնակցության մյուս ձևը՝ ժողովրդական դրուժինաների կազմակերպումն է։ Նոր, բազմակողմանիորեն զարգացած, կուլտուրական մարդու ձևավորման համար մղվող պայքարում յուրաքանչյուր կոմերիտական պետք է հանդես բերի անձնական օրինակ, օրինակելի վարք, ակտիվորեն պայքարի խուլիգանության, հարբեցողության, վատ արարքների դեմ։ Ժողովրդական դրուժինաներին նվիրված հոդվածներից մեկում «Ավանգարդ» թերթը գրել է.

«...Երևանյան երեկո է, և դու, երիտասարդ, քո սիրած աղջկա հետ, ուրախ տրամադրությամբ անցնում ես մարդաշատ փողոցով։ Բայց հանկարծ քո դեմքը մռայլվում է։ Այդ ի՞նչ պատահեց. քեզանից միայն մի քանի քայլ առջևից գնացող երկու «օրորվող» երիտասարդներ փակեցին դիմացից եկող սիրունատես աղջկա ճանապարհը, հրեցին նրան ու... լսվեց հայհոյանքը։

Իսկ ինչ եղավ հետո... Միթե ամեն ի՞նչ այդպես էլ վերջացավ։ Օ՛, ոչ։ Խուլիգանները դեռ չէին հեռացել, երբ հաստատ քայլերով նրանց մոտեցան մի խումբ մարդիկ՝ երկու երիտասարդ բանվոր, մի տարեց ծառայող և մի հեզանազ ուսանողուհի։ Նրանց ցասկոտ հայացքների տակ հոխորտացող խուլիգանները սկլվեցին, «պոչերը քաշեցին»։ Մի փոքր անց, միլիցիայի բաժանմունքում նրանք արդեն «մեղա» էին գալիս, խնդրում ներել իրենց...»։

Նկարագրելով այս փաստը, որը գունեղ կերպով բնութագրում է մեր լավագույն կոմերիտականներին՝ դրուժիննիկներին, թերթը երիտասարդությանը կոչ է անում ակտիվորեն մասնակցել հասարակական կարգի պահպանմանը, դա համարելով կոմերիտական կարևոր հանձնարարություն։

Սակայն ցավալի է, որ կոմերիտական թերթերն այդ մասին քիչ են գրում։ Եթե մենք ցանկանանք կոմերիտական դրուժիննիկների մասին այլ նյութեր կարդալ «Ավանգարդ», ինչպես նաև «Կոմսոմոլեց» թերթերում, ապա դըժվար թե կարելի լինի գտնել այդ թեմային նվիրված մեկ ուրիշ լավ հոդված։ Բայց չէ՞ որ ժողովրդական դրուժինաները ժամանակավոր երևույթ չեն, այլ երիտասարդության դաստիարակության գործոն միջոց։ Հատկանշական է, որ այդ գործը կատարվում է հասարակության ուժերի միջոցով։ Հասարակական կարգի պահպանման համար մղվող պայքարի այս ձևը լայն տարածում է գտնում, և կոմերիտական թերթերի խնդիրն է՝ պաշտպանել այդ նորը, նրան «կյանքի ուղեգիր» տալ։

Վերջերս անասնապահական ֆերմաների կարմիր անկյունների համար գրադարաններ կազմակերպելու հիանալի նախաձեռնությամբ հանդես եկան ռեսպուբլիկայի Կալինինոյի շրջանի կոմերիտականներն ու երիտասարդությունը։ Այդ նախաձեռնությունն սկիզբ առավ Կալինինոյի շրջանի Շահնազար գյուղի միջնակարգ դպրոցի կոմերիտականների մոտ։ Կոմերիտական ժողովում քննարկելով այն հարցը, թե ինչպե՞ս ավելի լավ օգնել կոլտնտեսային արտադրությանը, ամրապնդել դպրոցի կապը կոլտնտեսության հետ, Շահնազարի դպրոցականները ստանձնեցին մատղաշների խնամքը, կազմակերպեցին դպրոցական-արտադրական բրիգադա՝ դպրոցական արձակուրդների ժամանակ կոլտնտեսությանն օգնելու համար։ Ժողովի մասնակիցները միաժամանակ որոշեցին վերցնել կաթնա-ապրանքային ֆերմայի կարմիր անկյան շեֆությունը։ Շահնազար գյուղի կոմերիտականները դիմում ուղղեցին ռեսպուբլիկայի բոլոր գյուղական դպրոցների կոմերիտական կազմակերպություններին, նրանց կոչ անելով պաշտպանել իրենց նախաձեռնությունը։ «Ավանգարդ» թերթում հրապարակված դիմումի մեջ նրանք գրում են.

«...Մենք կոմերիտական ժողովում որոշեցինք վերցնել մեր՝ Շահնազարի Հոկտեմբերի 40-ամյակի անվան կոլտնտեսության կաթնաապրանքային ֆերմայի կարմիր անկյան կահավորման և անասնապահների կուլտուրական սպասարկման շեֆությունը։ Արդեն կարմիր անկյունում փակցված են մեր ձեռքով գրված լոզունգներ, դիագրամաներ ու պատի թերթեր։ Անասնապահներին է հանձնված մեր կողմից ստեղծված գրադարանը։

...Կոչ ենք անում, որ ամեն մի դպրոցական անասնապահական ֆերմայում ստեղծվող գրադարանին նվիրի մի գիրք. չէ՞ որ դրանով մենք

գյուղատնտեսության արտադրության առաջավորների փորձի վերաբերյալ զեկուցումներ։

Սեկցիոն պարապմունքներում անցկացվող յուրաքանչյուր զեկուցում և փորձի փոխանակում կապվում է տվյալ սեզոնում գյուղատնտեսական կուլտուրաների մշակության աշխատանքների հետ։ Այսպես, օրինակ, այգեգործության սեկցիայի անդամները ապրիլ ամսին լսել են գյուղատնտես՝ Վ. Գաբրիելյանի զեկուցումը՝ «Խաղողի այգիների ծագման և նրա մորֆոլոգիական ու բիոլոգիական առանձնահատկությունների մասին» զեկուցումը, մայիս ամսին՝ Մրգաշատի կոլտնտեսության ագրոնոմ Ի. Առաքելյանի զեկուցումը՝ «Խաղողի այգիների բուժման և մշակության աշխատանքների մասին», Ստ. Շահումյանի անվան սովխոզի այգեգործների հաջողությունների մասին զեկուցումներով հանդես է եկել Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Օ. Գորկալովան, իսկ հունիս ամսին լսել են «Խաղողի վազի վնասատուները ու պայքար նրանց դեմ» զեկուցումը և այլն։ Հետաքրքիր զեկուցումներ են լսվել նաև մյուս սեկցիաներում։

Ակումբի պարապմունքների առաջին մասի ավարտից հետո ունկնդիրների համար ակումբի խորհուրդը կազմակերպում է կինոնկարների ցուցադրում, գեղարվեստական ինքնագործունեության համերգներ, հանդիպումներ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների, ուսանողների, գրողների, զորամասի մարտիկների հետ և այլն։

ԼԿԵՄ շրջկոմի ուշադրության կենտրոնում է կոմերիտական ակտիվին գյուղատնտեսական գիտելիքներով զինելու հարցը։ Կոմերիտական կազմակերպության քարտուղարները մասնակցում են սեկցիաների պարապմունքներին։ Նրանց համար ամիսը մեկ անգամ կազմակերպվում է զրույցներ, փորձի փոխանակում՝ երիտասարդության շրջանում տարվելիք աշխատանքների շուրջ։

Ակումբի խորհուրդը ամիսը մեկ անգամ լույս է ընծայում իր օրգան՝ «Ակումբային բյուլետեն»-ը, որտեղ լուսաբանվում են ակումբի առաջ կանգնած խնդիրները, աշխատանքի առաջավոր փորձը, կոլտնտեսային երիտասարդության լավագույն նախաձեռնությունները, զետեղվում են ակումբի առաջին անդամների, կոլտնտեսային և սովխոզային արտադրության անվանի կոմերիտականների ու երիտասարդների լուսանկարները։

Հոկտեմբերյանի գյուղական երիտասարդության ակումբը մեծ դեր է խաղում երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում։ Ապրել և աշխատել կոմունիստաբար — այս է Հոկտեմբերյանի գյուղական երիտասարդության նշանաբանը։

Վերջերս ՀԿՊ Կենտկոմը քննարկեց և հավանություն տվեց Հոկտեմբերյանի շրջանային կոմերիտական կազմակերպության արժեքավոր նախաձեռնությանը և նշեց, որ այն արժանի է լայն տարածման։ Այդ լուրը էլ ավելի է աշխուժացրել ակումբի աշխատանքները։

Ա. ԳՈՒՐՈՒՆՅԱՆ



## ՕՐԵՆԱԿԵԼԻՈՐԵՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՍՊԱՍԱՐԿՈՒՄԸ

Չնայած նրան, որ Թալինի շրջանի Ն. Բազմաբերդի և Ագարակի կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունները բերքահավաքի ընթացքում որոշ չափով աշխուժացրել են ակումբա-գրադարանային աշխատանքները, բայց այդ գործում դեռևս կան լուրջ թերություններ։ Ագարակի ակումբն իր աշխատանքի ընթացքում անբավարար է պրոպագանդում ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումները, բերքահավաքին մասնակցող կոլտնտեսականներին հուզող հարցերի շուրջ քիչ զեկուցումներ ու զրույցներ է կազմակերպում։ Երկու ակումբների ինքնագործ գեղարվեստական խմբակներն էլ վերջին շրջանում թուլացրել են իրենց աշխատանքը։

Բերքահավաքի, սոցիալիստական պարտավորությունների կատարման և առաջավոր փորձի տարածման ուղղությամբ ակումբներում անբավարար է կազմակերպված ցուցադրական ագիտացիան։ Թերություններ կան նաև գրադարանների աշխատանքում։

Քննարկելով այդ հարցը, ՀԿՊ Թալինի շրջկոմի բյուրոն Ն. Բազմաբերդի և Ագարակի կոլտնտեսությունների պարտիական կազմակերպություններին պարտավորեցրեց՝ ուժեղացնել օգնությունն ու ղեկավարությունը ակումբներին ու գրադարաններին, վճռապես բարելավել կոլտնտեսականների շրջանում տարվող կուլտուր-մասսայական աշխատանքը, սիստեմատիկաբար զրույցներ և զեկուցումներ կազմակերպել ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումների մասին՝ բոլոր կոլտնտեսականներին մոբիլիզացնելով յոթնամյակի առաջին տարվա բերքահավաքը սեղմ ժամկետում և անկորուստ ավարտելու համար։

Շրջկոմի բյուրոն պարտկազմակերպություններին հանձնարարեց բերքահավաքի ընթացքում ինքնագործ գեղարվեստական խմբակների միջոցով կազմակերպել ցերեկույթներ, երեկույթներ, ներկայացումներ, ինչպես նաև կինո ցուցադրումներ, դրա հետ միասին լայնորեն պրոպագանդել առաջավորների փորձը, գործի դնել պատվո տախտակը, պատի թերթերը, մարտական թերթիկները, ակումբներում, կալերում, չորանոցներում և աշխատամասերում փակցնել աշխատավորներին մոբիլիզացնող կոչեր, լոզունգներ, պլակատներ, բոլորին ոտքի հանելով ստանձնած սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու համար։

Շրջկոմի պրոպագանդայի ու ագիտացիայի և շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժիններին հանձնարարվեց կոնկրետ օգնություն ցույց տալ վերոհիշյալ գյուղերի կոլտնտեսությունների պարտկազմակերպություններին, ակումբներին ու գրադարաններին՝ բերքահավաքի ընթացքում աշխատավորների կուլտուրական սպասարկումը ուժեղացնելու համար։

## ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՀԵՏ ՏԱՐՎՈՂ ԱՇԽԱՏԱՆՔԸ

ՀԿՊ Վեդու շրջկոմի բյուրոն քննարկելով երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքը Խալիսայի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունում, նշեց, որ պարտկազմակերպությունը երիտասարդ կոմունիստներին ընդգրկել է պարտուսցանցում և հետևել, որ նրանք ակտիվորեն մասնակցեն արտադրական աշխատանքներին ու ապահովեն իրենց ավանգարդային դերը։ Դրա հետ միասին բյուրոն նշեց, որ երիտասարդ կոմունիստների հետ դեռևս անբավարար աշխատանք է տարվում, ոչ բոլոր երիտասարդ կոմունիստներն են, որ հետևողականորեն զբաղվում են իրենց գաղափարական մակարդակի բարձրացման հարցով։



*ՍՄԿԿ անդամության թեկնածուներ Կ. Մեհթիևը, Հ. Հեյդարովը, Ս. Նովրուզովը սերտորեն կապված չեն թերթերի հետ։ Թեկնածուներին սիստեմատիկ հանձնարարություններ չտալու, նրանց համար պարտիայի ծրագրի, Կանոնադրության և այլ թեմաների շուրջ զրույցներ չկազմակերպելու հետևանքով անհրաժեշտ պայմաններ չի ստեղծվել թեկնածուական ժամանակաշրջանը արդյունավետ անցկացնելու համար։*

*Շրջկոմի բյուրոն խալխայի կոլտնտեսային պարտիական կազմակերպության բյուրոյին հանձնարարեց ուժեղացնել երիտասարդ կոմունիստների և մասնավորապես պարտիայի անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքը, նրանց կոնկրետ օգնություն ցույց տալ քաղաքականապես ու գաղափարապես աճելու, արտադրության մեջ իրենց ավանգարդային դերը բարձրացնելու և պարտիական աշխատանքին ակտիվորեն մասնակցելու համար։*

## ՓՈԽԱՆՑԻԿ ԴՐՈՇԸ ԽՆՁՈՐՈՒՏԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

*Ամփոփելով անասնաբուծական մթերքների արտադրության 1959 թվականի հուլիս ամսվա արդյունքները, ՀԿՊ Ազիզբեկովի շրջկոմի բյուրոն և շրջսովետի գործկոմը իրենց միացյալ նիստով որոշեցին շրջկոմի և շրջսովետի փոխանցիկ կարմիր դրոշը հանձնել Խնձորուտի Շահումյանի անվան կոլտնտեսությանը, որը սոցիալիստական մրցության մեջ առաջնություն է շահել կաթի արտադրության ամսեկան, ինչպես նաև պետությանը անասնաբուծական մթերքների վաճառքի տարեկան պլանները կատարելու և գերակատարելու գործում։ Նշվեց նաև Արտավանի, Գորադիսի, Գնդեվազի կոլտնտեսությունների լավ աշխատանքը, որով ապահովվել է կաթի, մսի և ձվի արտադրության ու վաճառքի սահմանված պլանների կատարումը։*

*Նույն այդ որոշմամբ արձանագրվեց Մարտիրոսի, Ազատեկի, Դայլախլուի, Կեչուտի և Կարմրաշենի կոլտնտեսությունների վարչությունների, գյուղական Սովետների, պարտիական կազմակերպությունների ու ֆերմաների վարիչների վատ աշխատանքը. նույնիսկ, անցյալ տարվա հուլիս ամսի համեմատությամբ պակասել է կաթի արտադրությունը։*

*Շրջկոմի բյուրոն և շրջսովետի գործկոմը գյուղական պարտիական ու սովետական կազմակերպություններին հանձնարարեցին յայլաներում անասունների արածեցումը, խնամքը լավ կազմակերպելու և նկատվող շռայլումների դեմ պայքարելու միջոցով ապահովել անասնաբուծական մթերքների արտադրության պլանների կատարումն ու գերակատարումը։*

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес Редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



*ՎՖ 06008* *Պատվեր 1648* *Տիրաժ 8600*
Տպ. 7 մամուլ, մամուլում 68, 840 նիշ։ *Ստորագրված է տպագրության 20/VIII 1959 թ.։*
Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։
*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։*

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ

## „ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ“

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

1959 ԹՎԱԿԱՆԻ

ՍԵՊՏԵՄԲԵՐ-ԴԵԿՏԵՄԲԵՐ ԱՄԻՍՆԵՐԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՆ ԵՆ՝

Չորս ամիսը—10 ռուբլի։

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

ԿԱՊԻ ԳՐԱՍԵՆՅԱԿՆԵՐՈՒՄ, ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, «ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»-Ի ՔԱՂԱՔԱՅԻՆ ԲԱԺԻՆՆԵՐՈՒՄ, ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐՈՒՄ, ՖԱԲՐԻԿԱՆԵՐՈՒՄ, ՀԻՄՆԱՐԿ-ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ, ՆՏ ԿԱՅԱՆՆԵՐՈՒՄ՝ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԼԻԱԶՈՐՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ։

Հայկական ՍՍՌ Կապի մամուլի տարածման բաժին.

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»